## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենա ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4 ԱՊՐԻԼ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Лениниян угнов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ








# ԱՊՐԵՆՔ ԵՎ ԱՇԽԱՏԵՆՔ ԼԵՆԻՆԱԲԱՐ

Ամեն տարի գարնանը՝ ապրիլի 22-ին, սովետական ժողովուրդը և աշխարհի ողջ առաջադեմ մարդկությունը տոնում են կոմունիստական կուսակցության ու սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան տարելիցը: Աշխատավորներին անսահմանորեն հարազատ այդ Մարդը օժտված էր հզոր բանականությամբ, ապագան գիտականորեն կանխատեսելու փայլուն ունակությամբ: Հին աշխարհը վերափոխող մեծ մտածողի ու հեղափոխականի խառնվածքին բնորոշ էին վճռականությունն ու ջերմ հավատը ժողովրդական մասսաների ստեղծագործական ունակությունների նկատմամբ, հեղափոխական լավատեսությունն ու սկզբունքայնությունը, բանվորների ու գյուղացիների երջանկության համար կյանքը զոհաբերելու պատրաստակամությունը:

Արդեն կես դարից ավելի է, ինչ Իլյիչը ֆիզիկապես մեզ հետ չէ, բայց նա, ինչպես միշտ, ընթանում է նոր հասարակարգ կերտողների ավանգարդում, իր կենսահաստատ գաղափարներով լուսավորում մարդկության պայծառ գալիքի ուղին: Իլյիչն ապրում է իր իսկ ստեղծած կոմունիստական կուսակցության ու սովետական պետության աշխարհաշեն գործերում, սոցիալիստական երկրների աշխատավորների ամենօրյա սխրանքներում, սոցիալիզմի, դեմոկրատիայի ու ազգային անկախության համար մարտնչողների հերոսական պայքարում:

Վ. Ի. Լենինը նոր, ավելի բարձր աստիճանի հասցրեց Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի ուսմունքը, կտակելով մեզ գաղափարա-տեսական հարուստ ժառանգություն, իր մտավոր ու հեղափոխական վիթխարի գործունեության արգասիքը՝ լենինիզմը: Բացահայտելով իմպերիալիզմի դարաշրջանում հասարակական զարգացման առանձնահատկություններն ու օրինաչափությունները, նա համակողմանիորեն մշակեց սոցիալիստական հեղափոխության և կոմունիզմի կառուցման տեսությունը, միջազգային հեղափոխական շարժումը զինեց գիտականորեն հիմնավորված ստրատեգիայով ու տակտիկայով: Հիրավի, լենինիզմն իմպերիալիզմի ու պրոլետարական հեղափոխությունների, գաղութակալության կործանման և ազգային-ազատագրական շարժումների հաղթանակի, կապիտալիզմից սոցիալիզմին անցման և կոմունիստական հասարակարգի կառուցման դարաշրջանի մարքսիզմն է:

Համաշխարհային պատմության մեջ չի եղել մի այլ ուսմունք, որը սոցիալ-քաղաքական այնպիսի վիթխարի ներգործություն ունենա մարդկանց ճակատագրի ու հասարակական զարգացման վրա, ինչպես լենինիզմը: Իլյիչի մահից հետո աշխարհում կատարվել են հսկայական փոփոխություններ, առաջացել սոցիալ-քաղաքական նոր պրոբլեմներ, սակայն հանճարեղ առաջնորդի բացահայտած հասարակական զարգացման օրինաչափություններն այսօր նույնպես ճշգրիտ ուղեցույց են մեր առաջընթացի համար: Ահա թե ինչու մեծ առաջնորդը մեր ամենօրյա գործերի ու սխրանքների ոգեշնչողն ու կենդանի մասնակիցն է:

ՍՄԿԿ-ն վեհորեն ծածանում է լենինիզմի դրոշը. նրա ղեկավարությամբ սովետական ժողովուրդը կառուցել է զարգացած սոցիալիստական հասարակարգ և այժմ հաջողությամբ իրականացնում է կոմունիստական շինարարության մեծ ծրագիրը: ՍՄԿԿ XXIV համագումարը, ամփոփելով անցած ժամանակաշրջանի արդյունքները և սահմանելով առաջիկա անելիքները, գոհունակությամբ նշեց, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ կուսակ-

ցությունը հաստատակամորեն վարում է լենինյան կուրս, պատվով կատարում բանվոր դասակարգի, սովետական ողջ ժողովրդի քաղաքական ղեկավարի դերը։ ՍՄԿԿ-ն ստեղծագործական մարքսիզմի կուսակցություն է. հավատարիմ նրա ոգուն ու սկզբունքներին, լենինյան կուսակցությունն արդի պայմանների համեմատ շարունակ այն հարստացնում է գիտության ու պրակտիկայի նորագույն նվաճումների ընդհանրացումներով։ Ելնելով լենինյան տեսական-գաղափարական դրույթներից, ՍՄԿԿ-ն հաջողությամբ է լուծում կոմունիստական շինարարության հրատապ պրոբլեմները։ Եվ որքան բարդ են դրանք, այնքան ավելի պատասխանատու և ծավալուն է դառնում կուսակցության գործունեությունը, այնքան ավելի է պահանջ զգացվում՝ օգտվելու մեծ ուսուցչի տեսական հարուստ գանձարանից, խորապես ուսումնասիրելու և տիրապետելու մարքսիզմ-լենինիզմը։

Ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմ-լենինիզմը, մեր կուսակցությունն առաջադրել և գործնականում լուծում է չափազանց բարդ պրոբլեմներ՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, ժողովրդի բարեկեցության բարձրացումը, սովետական պետության, նրա հզորության ու պաշտպանունակության ամրապնդումը, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը, աշխատավորական լայն զանգվածների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը և այլն։ ՍՄԿԿ-ն պատշաճ ուշադրություն է նվիրում լենինյան ազգային քաղաքականության, սոցիալիստական բոլոր ազգերի ու ազգությունների հետագա ծաղկման ու մերձեցման խնդիրներին, մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությանը, բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի առավել մերձեցմանը։

Ելնելով հասարակական առաջընթացի օբյեկտիվ օրինաչափություններից, Վ. Ի. Լենինի հիմնարար այն ցուցումից, որ «Կոմունիզմը մենք գնահատում ենք միայն այն ժամանակ, երբ այն հիմնավորված է տնտեսապես» (Երկեր, հ. 29, էջ 224), կուսակցությունը վճռական նշանակություն է տալիս երկրի տնտեսական զարգացմանը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։ Միայն զարգացած տնտեսական հիմքի վրա կարելի է հաջողությամբ իրականացնել կոմունիստական հասարակարգի կառուցումը, բարձրացնել սովետական ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակը, ամրապնդել Սովետական Միության միջազգային դիրքերը, համաշխարհային երկու սիստեմների մրցության մեջ ապահովել սոցիալիզմի հաղթանակը։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած չորս տարիների ընթացքում սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, նոր հաջողությունների հասավ էկոնոմիկայի, մեր հասարակության սոցիալ-քաղաքական ու հոգևոր զարգացման, երկրի պաշտպանական հզորության առավել ամրապնդման բնագավառներում։ Հետևողականորեն իրականացնելով XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագիրը, Սովետական Միությունը ծանրակշիռ ավանդ մուծեց միջազգային լարվածության թուլացման, խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության ու սոցիալիզմի համար պայքարող ուժերի համախմբման ու ակտիվացման գործում։

Անցած քառամյակի գլխավոր քաղաքական արդյունքն այն է, ասված է կուսակցությանը, սովետական ժողովրդին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ուղղած դիմումի մեջ, որ ապահովվեց ողջ ժողովրդական տնտեսության դինամիկ զարգացումը, առաջընթաց մեծ քայլ կատարվեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։

Հավատարիմ Լենինի ստեղծարար պատգամներին, կուսակցությունը հետևողականորեն իրականացնում է «Ամեն ինչ մարդու, նրա բարօրության համար» սկզբունքը։ Այժմ ՍՍՀՄ ազգային եկամտի երեք քառորդը հատկացվում է սպառմանը և ապահովում 250 միլիոնանոց սովետական ժողովրդի բարեկեցության հետագա աճը։ Հնգամյակի ընթացքում բարձրացել են բանվորների ու ծառայողների աշխատավարձը, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը, ավելացել են կենսաթոշակներն ու նպաստները, կրթաթոշակները, բարելավվել են 45 մլն մարդու բնակարանային պայմանները։

Ընթացիկ հնգամյակի տարիներին որոշակի հաջողություններ ունեն նաև մեր



հանրապետության աշխատավորները. չորս տարում արտադրվել է 13 մլրդ 645 մլն ռուբլու արտադրանք, 31 մլրդ 165 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա։ Այդ տարիներին գործարկվել են 40 խոշոր ձեռնարկություն, ջրովի հողատարածություններն ավելացել են 40,7 հազար, ջրարբիացված արոտավայրերը՝ 100 հազար հեկտարով և այլն։

Այժմ մեր երկիրը թևակոխել է հնգամյակի ամենավճռական ժամանակաշրջանը, երբ պետք է ավարտվի ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած առաջադրանքների կատարումը, որով ամուր հիմք կստեղծվի հաջորդ՝ տասներորդ հնգամյակում հաջող աշխատանքի, կուսակցության երկարաժամկետ սոցիալ-տնտեսական քաղաքականության իրականացման համար։

Հնգամյա պլանի կատարման, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների իրականացման ասպարեզում մեծ ու դժվարին անելիքներ ունեն մեր հանրապետության էկոնոմիկայի բոլոր բնագավառների աշխատողները։ Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում, հնգամյա պլանի առաջադրանքների մակարդակից ետ են արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ էներգետիկան, գունավոր մետալուրգիան, քիմիական, շինանյութերի, փայտամշակման, թեթև, սննդի արդյունաբերությունը։ Չեն կատարվում գյուղատնտեսական արտադրանքի նախատեսված առաջադրանքները։ Աշխատանքի արտադրողականության աճը արդյունաբերության մեջ թերակատարվում է 12,3, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 11 տոկոսով։ Ինչպես տեսնում ենք, թերությունները էական են, հնգամյա պլանի ճեղքվածքը՝ մեծ, ուրեմն և՝ անելիքները շատ։ Ուստի, հնգամյակը հաջողությամբ ավարտելու համար հարկավոր է բազմապատկել արդյունաբերության ու գյուղատնտեսության բոլոր աշխատողների ջանքերը, ստեղծագործական առողջ ու գործարար մթնոլորտում լուծել հանրապետության առջև ծառացած խնդիրները։

Էկոնոմիկայի զարգացման բարդ պրոբլեմները պահանջում են ամենուրեք արմատավորել ու հմտորեն կիրառել աշխատանքի լենինյան, կուսակցական ոճը։ Այս հարցը կրկին առաջ քաշվեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) և ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումներում։

Կուսակցությունն այսօր պահանջում է ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում, մեր գործունեության բոլոր տեղամասերում բարձրացնել պատասխանատվություննստանձնած գործի նկատմամբ, ցուցաբերել նախաձեռնություն, սոցիալիստական ձեռներեցություն, գործարարություն, հաստատել գիտակցական կարգապահություն, անհաշտ լինել թերությունների, սոցիալիստական հասարակարգին անհարիր երևույթների նկատմամբ։ Կոմունիստական բնավորության դաստիարակման ու գիտակցականության հետագա բարձրացման համար սովորելու և ընդօրինակելու անսպառ աղբյուր են լենինյան տեսական ժառանգությունը, մեծ ուսուցչի աշխատանքի ոճն ու մեթոդները։

ԱՊՐԵԼ ԵՎ ԱՇԽԱՏԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ—նշանակում է տոգորված լինել կուսակցական սկզբունքայնությամբ, հասարակական պարտքի բարձր գիտակցությամբ և անմնացորդ նվիրումով, ունակությունների ու ուժերի գերագույն լարումով պայքարել մեր մեծ հայրենիքի հետագա հզորացման ու բարգավաճման համար։

Սովետական միլիոնավոր մարդիկ ճիշտ են ըմբռնում մեր հերոսական ժամանակաշրջանի լենինյան այդ պահանջը և այդպես էլ ապրում ու աշխատում են։ Սովետների երկրի աշխատավորների ստեղծագործական խոյանքների արժանի գնահատականն է այն, որ ամեն տարի բազմահազար բանվորներ, կոլտնտեսականներ, մտավորականներ պարգևատրվում են ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով, արժանանում սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։ Մեր հայրենիքի բազմազգ աշխատավորների շարքում իրենց հայրենանվեր գործերով աչքի են ընկնում նաև մեր հանրապետության էկոնոմիկայի ու կուլտուրայի բնագավառների բազմաթիվ առաջավորներ, աշխատանքի խիզախ հերոսներ։ 1974 թ. համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած հաջողությունների, ժողովրդական տնտեսության պլանների և ստանձնած պարտավորությունների կատարման ասպարեզում ցուցա-

բերած արխության համար, վերջերս ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրվեցին Հայաստանի գյուղատնտեսության բնագավառի հարյուրավոր աշխատողներ։

ԱՇԽԱՏԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ—նշանակում է հասարակական, պետական, կոլեկտիվի շահերը վեր դասել սեփական շահերից ու պահանջներից։ Ահա թե ինչու կուսակցությունը բոլորից՝ թե՛ ղեկավարներից, թե՛ շարքային աշխատողներից, պահանջում է անզիջում պայքարել համապետական, համաժողովրդական շահերը ոտնահարողների դեմ, վճռականորեն հաղթահարել նեղգերատեսչական, տեղայնության երևույթները, արմատախիլ անել պորտաբուծության արատավոր հակումները։

Միաժամանակ անհրաժեշտ է ստեղծել այնպիսի իրավիճակ, որն ապահովի անհատի, կոլեկտիվի և հասարակության շահերի զուգակցումը։ Սոցիալիստական հասարակարգը դրա համար ընձեռում է ամենայայն հնարավորությունները։ Պետք է միայն, որ յուրաքանչյուր անհատ, կոլեկտիվ, ձեռնարկություն շահագրգռված լինի գիտության նորագույն նվաճումների արմատավորմամբ, նոր և որակյալ արտադրանքի թողարկմամբ, սպառողների պահանջների ու ճաշակների բավարարմամբ։ Այս ասպարեզում հաջողության հասնելու կարևոր գրավականներից մեկը կուսակցությունը համարում է տնտեսական խթանման մեթոդների կատարելագործումը։ Տնտեսական խթանները պետք է լինեն ճկուն և կատարյալ, որպեսզի առավել արագորեն արմատավորվեն նորագույն տեխնիկան ու տեխնոլոգիան, բավարարվեն սպառողների աճող պահանջմունքները։ Միայն այդ պայմանով լիովին կիրականացվի լենինյան սկզբունքը՝ յուրաքանչյուր աշխատողի և կոլեկտիվի համար շահավետ դարձնել այն, ինչ շահավետ է պետությանը, հասարակությանը, այսինքն՝ ստանձնել լարված պլաններ, օգտագործել բոլոր ռեզերվները, թողարկել որակյալ արտադրանք, տնտեսել հումքը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Սովետական հասարակության զարգացման արդի փուլում, երբ անչափ աճել է սոցիալիստական արտադրությունը, բարդացել են ժողովրդատնտեսական կապերը, մեր կուսակցությունը պահանջում է շեշտակիորեն բարձրացնել արտադրության արդյունավետությունը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումներն օրգանապես միացնել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ, էկոնոմիկայի կառավարումը կատարելագործել գիտական հիմքի վրա։ Հիշենք, թե մեծ առաջնորդն ինչպիսի կարևոր նշանակություն էր տալիս գիտատեխնիկական առաջընթացին. նա հոգ էր տանում, որ «...մեզանում գիտությունը մեռած տառ կամ մոդայական ֆրազ չմնա..., որ գիտությունը, իրոք, միս ու արյուն դառնա, լիովին ու իսկապես վերածվի կենցաղի բաղկացուցիչ տարրի» (Երկեր, հ. 33, էջ 581)։

Անվիճելի իրողություն է, որ սովետական իշխանության ավելի քան կեսդարյա պատմության ընթացքում Հայաստանը, հիրավի, վիթխարի թռիչք է գործել էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Մեր հանրապետության աշխատավոր զանգվածներն օրինական հպարտությամբ են նշում, որ իրենք, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, պատվով են կատարել ու այսօր էլ հերոսական ջանքերով իրականացնում են մեծ Լենինի պատգամները։ Սակայն այդ լուրջ նվաճումների կողքին կան դեռևս շատ թերություններ ու վրիպումներ, որոնց հանգամանորեն անդրադարձավ ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը։

ԱՇԽԱՏԱՆՔԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՃԻ ԿԱՐԵՎՈՐ առանձնահատկություններից են կազմակերպվածությունը, գործարարությունը։

Աշխատանքի կազմակերպվածությունն սկսվում է պլանային առաջադրանքների կատարմամբ, կուսակցական ու պետական կարգապահության խստիվ պահպանմամբ։ Հաջող պլանավորումը և դրա կատարումը սոցիալիստական տնտեսավարման հիմքն է, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման կարևոր նախապայմանը։ Ուստի, ինչպես իրավացիորեն նշվեց նաև ՀԿԿ



Կենտկոմի հունվարյան պլենումում, պետք է վերջ տալ այն արատավոր պրակտիկային, երբ պլանային առաջադրանքները նվազեցվում են, ենթարկվում հետագա զգալի և անհիմն փոփոխությունների, որոնց պատճառով հաճախ մեծ վնասներ է կրում ժողովրդական տնտեսությունը։

Աշխատանքի կազմակերպվածության կարևոր նախադրյալներից մեկը արտադրության համաչափությունն է, որը դարձել է սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման պարտադիր պայմանը։ Եվ դա հասկանալի է. ժամանակակից զարգացած արտադրությունը փոխկապակցված արտադրաճյուղերի մի ամբողջական համալիր է, որը խարսխվում է օրավուր ծավալվող մասնագիտացման և լայն կոոպերացման վրա։ Ուստի, սոցիալիստական արտադրության բոլոր տեղամասերում պետք է առավելագույն չափով ապահովել նորմալ, ռիթմիկ աշխատանքը, լիովին բացառել գրոհայնությունը, թափթփվածությունը, օրական և շաբաթական առաջադրանքների ձախողումը։

Մեր հանրապետության առաջավոր ձեռնարկությունների օրինակը վկայում է, որ աշխատանքի լավ կազմակերպման, նյութական և բարոյական ազդակների ճիշտ օգտագործման դեպքում կարելի է լիովին ապահովել արտադրության ռիթմիկությունը։

Աշխատանքի կազմակերպվածությունն անխզելիորեն կապված է նաև մարդկանց գործունեության բոլոր ոլորտներում ժամանակի խնայողության հետ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման այս կարևոր գործոնին մեծ ուշադրություն էր նվիրում Վ. Ի. Լենինը։ «Ժամանակը ոսկի է» ասացվածքն այսօր ավելի լայն ու խորիմաստ նշանակություն է ստացել, ժամանակի միավորն այսօր ավելի է «թանկացել»։ Ժամանակի կորուստ, պարապուրդ, անբարեխղճության և սխալների գինը, ասում է Լ. Ի. Բրեժնևը, հիմա բոլորովին այլ է։ Բահով աշխատող մարդու կեսժամյա պարապուրդը չի կարելի համեմատել հզոր էքսկավատորով, կոմբայնով, աշտարակային ամբարձիչով բանող մարդու կեսժամյա պարապուրդի հետ։

Ժամանակի խնայողության հնարավորություններ կան ամենուրեք։ Միայն ներհերթափոխային պարապուրդներն զգալի տոկոս են կազմում։ Հաճախ աշխատանքային ժամերն օգտագործվում են անհարկի խորհրդակցություններ ու նիստեր գումարելու համար։ Երբեմն դրանց վրա ծախսվում է ինժեներա-տեխնիկական անձնակազմի աշխատաժամանակի զգալի մասը։ Գիտենք, թե ինչպիսի խստությամբ էր Լենինը պահանջում վերջ տալ նիստարարական իրարանցմանը։ Անհրաժեշտ է խիստ բարձրացնել ամեն տեսակի ժողովների ու նիստերի արդյունավետությունը, քննարկել այն հարցերը, որոնք համակողմանի նախապատրաստվել են։

Մեծ առաջնորդը սովորեցնում էր, որ հերթական բազմաթիվ հարցերից պետք է առանձնացնել հիմնականը, գլխավորը, որի լուծումը բարենպաստ նախադրյալներ կստեղծի մեր առաջընթացի համար։ «Մենք կարողանում էինք հաղթել,— ասել է Վ. Ի. Լենինը,— որովհետև ճշտորեն սահմանում էինք ամենաանհետաձգելի, ամենակենսական, ամենահրատապ խնդիրը և իսկապես դրա վրա կենտրոնացնում բոլոր աշխատավորների, ողջ ժողովրդի բոլոր ուժերը» (Երկեր, հ. 30, էջ 517)։

Մեր կուսակցությունը, ելնելով լենինյան ցուցումներից, իր համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումներում շարունակ մատնանշում և առանձնացնում է անհետաձգելի այն պրոբլեմները, որոնք պահանջում են առաջնահերթ լուծում։

ՍՍՀՄ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՔԱՂԱՔԱՑԻ ՊԵՏՔ Է հաստատակամորեն իրականացնի լենինյան հայտնի պատգամը՝ սովորել. սովորել և կրկին սովորել։ Մեծ ուսուցչի՝ երիտասարդությանն ուղղված այս խոսքերը պետք է դառնան կոմունիզմ կառուցող սովետական մարդու կյանքի գլխավոր օրենքը։ Եթե ժամանակին Վ. Ի. Լենինը համառորեն պահանջում էր պայքարել գլխավոր թշնամիներից մեկի՝ անգրագիտության դեմ, ապա այդ թշնամին մեր երկրում վաղուց արդեն ոչնչացված է։ Կոմունիստական կուսակցությունը պատվով է կատարել այդ պատգամը։ ՍՍՀՄ-ն այժմ բարձր զարգացած կուլտուրայի երկիր է։

Սակայն կյանքն առաջ է ընթանում, հարուցելով նորանոր բարդ խնդիրներ։ Գիտնականներն ապացուցում են, որ ներկայումս, գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում, մարդու գիտելիքների պաշարը մի քանի տարվա ընթացքում կորցնում է իր այժմեականությունը, չի համապատասխանում օրվա խնդիրներին։ Ուստի, այն պետք է շարունակ նորացնել ու լրացնել գիտության և տեխնիկայի արդի նվաճումների իմացությամբ։ Ահա թե ինչու մեր կուսակցությունը շարունակ հոգ է տանում, որպեսզի յուրաքանչյուր բանվոր, գյուղատնտեսության բնագավառի աշխատող, մասնագետ ու ղեկավար հարստացնի իր գիտելիքները, բարձրացնի որակավորումն ու կրթական մակարդակը։

ԱՊՐԵԼ ԵՎ ԱՇԽԱՏԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ—նշանակում է ըստ ամենայնի զարգացնել աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական նախաձեռնությունն ու ակտիվությունը, գործնական հարցերը լուծելիս հենվել նրանց կուտակած փորձի վրա։ Այս բնագավառներում մեր կուսակցության գործունեությունը բխում է մարքս-լենինյան այն կարևոր դրույթից, որ պատմությունը կերտում են ժողովրդական զանգվածները, նրանք են նյութական ու հոգևոր արժեքների իսկական ստեղծողները, սոցիալական առաջընթացի շարժիչ ուժը։ Իսկ սոցիալիզմն այն միակ հասարակարգն է, որը լայն հնարավորություններ է ընձեռում այդ ուժի անկաշկանդ զարգացման համար։ Սոցիալիզմի մեծագույն առավելությունն այն է, ասում էր Լենինը, որ աշխատավորների հոծ զանգվածները մասնակցում են պետության, հասարակության կառավարմանը։

Լենինյան կուսակցության հետևողական գործունեության շնորհիվ մեր երկրում ավելի է զարգացել սոցիալիստական դեմոկրատիան, միլիոնավոր նոր աշխատավորներ ներգրավվել են պետական ու հասարակական գործերի կառավարման ոլորտը։ Բարձրացել է սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և մասսայական այլ կազմակերպությունների դերը։ Կուսակցությունը ջանում է, որ սովետական յուրաքանչյուր քաղաքացի աշխատանքային ու հասարակական գործունեության մեջ համակողմանիորեն դրսևորի իր ունակությունները, լայնորեն ու արդյունավետ օգտագործի սոցիալիստական հասարակարգի ընձեռած իրավունքները։ Միաժամանակ, կուսակցությունը միշտ հիշեցնում է, որ քաղաքացիական իրավունքներն ու պարտականություններն անբաժանելի են։ Ուստի, սոցիալիստական հասարակության անդամը պետք է բարձր պահի ՍՍՀՄ քաղաքացու վեհ կոչումը և կյանքի բոլոր բնագավառներում իր իրավունքներն օգտագործելուն զուգընթաց, ազնվորեն կատարի իր բոլոր պարտականությունները։

Այսօր սովետական մարդիկ, կատարելով իրենց քաղաքացիական առաջնահերթ պարտականությունը, հերոսական ջանքերով իրականացնում են հնգամյա պլանի ավարտական տարվա վիթխարի ծրագրերը և ստանձնած սոցիալիստական բարձր պարտավորությունները։

Մտնելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, մեր երկրի, այդ թվում և Սովետական Հայաստանի աշխատավորները կենսագործում են լենինյան պատգամները սոցմրցության վերաբերյալ։ Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս սոցիալիստական մրցությանը, նրա էությունը համարելով գիտակից ու անձնազոհ պայքարը հանուն հասարակության վերակառուցման և առավել բարձր կենսապայմանների ստեղծման, հանուն նոր հասարակարգի կառուցման։ Շեշտելով, որ սոցմրցությունն աչքի ընկնող տեղ պետք է գրավի սովետական իշխանության տնտեսական բնագավառի խնդիրների լուծման գործում, Լենինն ասում էր. «...մեզ մոտ մրցության կազմակերպումը սոցիալիստական սկզբունքներով պետք է լինի հասարակության վերակազմության առավել կարևոր և առավել շնորհակալ խնդիրներից մեկը» (Երկեր, հ. 27, էջ 243)։

Հիրավի, սովետական իշխանության տարիներին, կուսակցության կազմակերպական գործունեության շնորհիվ, սոցիալիստական մրցությունը համաժողովրդական լայն ծավալ է ընդունել, դարձել է տնտեսական, սոցիալ-քաղաքական և դաստիարակչական խնդիրների լուծման կարևորագույն ուժը։



ԱՇԽԱՏԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ—նշանակում է կառավարման բոլոր օղակներում հմտորեն զուգակցել կոլեկտիվությունն ու անձնական պատասխանատվությունը։

Իլյիչը կուսակցական ու պետական այն գործիչներից էր, որոնք վարպետորեն կարողանում են աշխատանքում ստեղծել կոլեկտիվության անկաշկանդ մթնոլորտ։ Նա օժտված էր համոզելու, մասսաներին առաջնորդելու հազվագյուտ ունակությամբ։ Կյանքից վերցրած օրինակների, պատմական անցքերի գիտականորեն հիմնավորված փաստարկումներով, երկաթյա տրամաբանությամբ, հեղափոխական կրքոտությամբ ու համոզվածությամբ նա կարողանում էր ապացուցել ու հիմնավորել իր տեսակետները։ Միաժամանակ, հանճարեղ առաջնորդն ամենայն ուշադրությամբ ունկնդրում էր ու գնահատում ընկերների կարծիքը, հաշվի առնում այն, հարցերը լուծելիս ստեղծագործաբար օգտագործում պատմության դասերը, աշխատավորների կուտակած փորձը։ Միայն կոլեկտիվ փորձը, միայն միլիոնների փորձը, ասում էր Վ. Ի. Լենինը, կարող է վճռականորեն նպաստել մեր ընդհանուր գործին, սոցիալիզմի գործին, ահա թե ինչու մենք «...հույսը դրել ենք համատեղ փորձի, միլիոնավոր աշխատավորների փորձի վրա» (Երկեր, հ. 27, էջ 510)։

Ղեկավարման դեմոկրատական, լենինյան սկզբունքները, միաժամանակ, պետք է զուգակցվեն հանձնարարված գործի նկատմամբ անձնական պատասխանատվության հետ։ «Կառավարման բոլոր հարցերի կոլեգիալ քննությանն ու վճռմանը սովետական հիմնարկություններում պետք է հարակցի սովետական ամեն մի պաշտոնի մեջ գտնվող անձերից յ ու ր ա ք ա ն չ յ ու ր ի ամենաճշգրիտ պատասխանատվության սահմանումը, պատասխանատվություն պարզ ու աներկմտելի գծված որոշ առաջարկությունների և պրակտիկ աշխատանքների կատարման համար» (Երկեր, հ. 28, էջ 448)։

Իսկ որպեսզի անձնական պատասխանատվության բարձրացման խնդիրը չմնա դատարկ կոչ, մեր կուսակցությունը բոլոր աշխատողներից պահանջում է հետևողականորեն իրականացնել լենինյան պատգամը՝ «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը—ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միայն ա՛յս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը» (Երկեր, հ. 33, էջ 265)։

Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների ղեկավարները պետք է անշեղորեն կատարեն լենինյան ցուցումը՝ աշխատանքային կոլեկտիվներում ստեղծել հոգեբանական բարենպաստ, առողջ և գործարար մթնոլորտ։ Կուսակցության այս պահանջը բխում է սոցիալիզմի բուն էությունից։ Սոցիալիզմը մեր երկրում, մարդկանց փոխհարաբերություններում ստեղծել է բարոյական բարձրր նորմեր։ Սովետական մարդու հոգեբանությունը փոխվում, հարստանում է մեր ընդհանուր վերելքին համընթաց։ «Մենք,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մեր խոշորագույն նվաճումն ենք համարում հասարակական նոր բարոյականության գոյավորումը։ Մարդկանց հավասարություն, կոլեկտիվիզմ և ընկերական փոխօգնություն՝ ինչպիսի սոցիալական խմբի, ինչ ազգի ու ազգության էլ որ նրանք պատկանելիս լինեն, աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունք, իսկական դեմոկրատիզմ, վերջապես, խոր հումանիզմ և յուրաքանչյուր մարդու իրավունքների ու անձնավորության հարգում՝ այսպիսիք են այդ բարոյականության բնորոշ հատկանիշները» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 485)։

Սոցիալիստական հասարակարգի պատմական աննախադեպ հասումները պետք է ավելի խորացնել ու բազմապատկել։ Ուստի, բոլոր աշխատավորները, արտադրության ղեկավարները, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններն իրենց գործելակերպով պետք է ջանան, որպեսզի կոլեկտիվի անդամների փոխհարաբերությունները լիովին հիմնվեն սկզբունքային հողի վրա, բոլոր կոլեկտիվներում ստեղծվի ընկերական աջակցության և բարեկամական առավել առողջ ու գործարար մթնոլորտ։

Անժխտելի իրողություն է, որ աշխատանքային կոլեկտիվում է հիմնականում թրծվում ու ձևավորվում նոր հասարակարգ կառուցող սովետական մարդը։ Այդ պատճառով, կոմունիստական շինարարության արդի ժամանակաշրջանում, ավելի պատասխանատու և վճռական է դառնում կոլեկտիվի դաստիա-

բակիչ դերը։ Եթե այս չափանիշով մոտենանք գործերի վիճակին, ապա հարկ է ասել, որ մեր հանրապետությունում դեռևս կան ձեռնարկություններ, հիմնարկություններ, կոլտնտեսություններ ու սովխոզներ, որտեղ թույլ է պայքարը հակահասարակական երևույթների դեմ, կաղում է աշխատանքային կարգապահությունը, կոլեկտիվի անդամների միջև չի ստեղծված սկզբունքային, ընկերական առողջ մթնոլորտ։ Պատահական չէ, որ այն կոլեկտիվներում, որտեղ թույլ են գործում կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները, երբեմն դրսևորվում են մեր հասարակարգի էությանը խորթ այնպիսի արատավոր բարքեր, ինչպիսիք են պաշտոնական դիրքի չարաշահումները, կաշառակերությունն ու բյուրոկրատիզմը։ Այսպիսի կոլեկտիվներում է, որ ձախողվում են պետական պլանները, մարդկանց կոմունիստական դաստիարակության գործը, ոտնահարվում սովետական օրենքները։

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում բացահայտվեցին ու խստորեն դատապարտվեցին մեր հանրապետության որոշ ձեռնարկություններում ու հիմնարկություններում եղած նման երևույթներն ու բարքերը, և կոնկրետ, գործնական ուղիներ նշվեցին դրանք արմատախիլ անելու համար։

Նոր հասարակարգի կառուցումը Վ. Ի. Լենինը անխզելիորեն կապում էր կոմունիստական գաղափարախոսության ու բարոյականության հաստատման, բազմակողմանի զարգացած ու պատրաստված մարդկանց դաստիարակման հետ։ Գործնականում իրականացնելով լենինյան ցուցումները, կոմունիստական կուսակցությունը հասարակության բոլոր անդամներին համակում է քաղաքական բարձր գիտակցականությամբ, նրանց դաստիարակում մարքս-լենինյան գաղափարախոսության ու կոմունիստական բարոյականության ոգով, ամեն ինչ անում, որպեսզի յուրաքանչյուր աշխատող խորապես ըմբռնի հասարակական զարգացման օրինաչափություններն ու բարդ պրոցեսները։ Սովետական իշխանության տարիներին ձևավորվեց նոր մարդը, որն անսահմանորեն նվիրված է լենինյան գաղափարներին, որին խորթ է հին աշխարհի բարոյականությունը։ Սովետական մարդը դրան հակադրում է կոմունիստական մորալը, սոցիալիստական իր նոր ապրելակերպը։

ԱՊՐԵԼ ՈՒ ԱՇԽԱՏԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ—նշանակում է անհաշտ լինել թերությունների նկատմամբ, ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Վ. Ի. Լենինն ուղղամտության ու ճշմարտության ջատագովն ու կրողն էր։ Նրան զզվանք էին պատճառում շաղակրատանքը, կոմնապարծությունը, ճամարտակությունը, իրական փաստերն աղավաղելու, թերությունները սքողելու փորձերը։ «Մինչև այժմ կործանված հեղափոխական բոլոր կուսակցությունները,— ասում էր Վ. Ի. Լենինը,— կործանվել են այն բանից, որ մեծամտել են և չեն կարողացել տեսնել, թե ինչումն է իրենց ուժը, և վախեցել են խոսել իրենց թուլությունների մասին։ Իսկ մենք չենք կործանվի, որովհետև չենք վախենում խոսել մեր թուլությունների մասին, և կսովորենք հաղթահարել այդ թուլությունները» (Երկեր, հ. 33, էջ 367)։

ՍՄԿԿ-ն բոլոր կոմունիստներին, սովետական մարդկանց դաստիարակում է թերությունների նկատմամբ անհաշտության, սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության համակողմանի ծավալման ոգով։ Լենինյան ուղղամտության, սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության ոգով են տոգորված ՍՄԿԿ XXIV համագումարի և Կենտրոնական կոմիտեի հետագա պլենումների որոշումները, որոնցում արձանագրված են ինչպես մեր հոյակապ նվաճումները, այնպես էլ ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում եղած սխալներն ու թերացումները, ցույց են տրված դրանց վերացման կոնկրետ ուղիները։

Լենինյան սկզբունքների անշեղ կիրառման կոնկրետ օրինակ է ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշումը՝ «Տամբովի մարզային կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին»։ ՍՄԿԿ Կենտկոմը պահանջում է խիստ վերահսկողություն սահմանել թերություններ և բացասական երևույթներ ծնող պատճառները ժամանակին վերացնելու նկատմամբ։ Վճռականորեն կասեցնել քննադատությունը ճնշելու դեպքերը, ուղղել, իսկ եթե պահանջվում է՝ պաշտոնից վտարել, պատժել նրանց, ովքեր սխալ են ըմբռնում քննադատությունը, իրենց հասցեին արված արդարացի դիտողությունները համարում են անձնական հեղինակության խախտում, ինքնասիրության ոտնահարում և վրեժ են լուծում քննադատողներից։ Սակայն չի կարելի թույլ տալ նաև, որ քննադատությունը փոխարինվի դեմագոգիայով և զրպարտությամբ։ Քննադատությունը, ասում էր Վ. Ի. Լենինը, պետք է լինի ընկերական, ուղղամիտ, դիվանագիտությունից և մանր հաշիվներից զերծ։



Ներկայումս, երբ մեր երկրում լուծվում են սոցիալ-տնտեսական վիթխարի խնդիրներ, առավել մեծ նշանակություն են ստանում քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Ինչպես մեր նվաճումների, այնպես էլ եղած պրոբլեմների, թերությունների հանգամանալի և ինքնաքննադատական վերլուծությունը, շեշտում է Լ. Ի. Բրեժնևը, հետագա առաջընթացի անհրաժեշտ նախադրյալն է։ Սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության լայն զարգացումը կուսակցական կազմակերպության քաղաքական առողջության, կուսակցության ու ժողովրդի հանդեպ պարտքի ճիշտ ըմբռնման վկայությունն է։

Կուսակցությունը ժողովրդին ասում է ճշմարտությունը՝ որքան էլ այն դաժան լինի։ «...նայեք ուղիղ ճշմարտության աչքերին։ Քաղաքականության մեջ դա միշտ ամենալավ և միակ ճիշտ սիստեմն է» (Վ. Ի. ԼԵՆԻՆ, Երկեր, հ. 20, էջ 338)։

Լենինյան այս խորիմաստ պատգամը կենսագործելու, կուսակցական սկզբունքային քննադատությունն ու ինքնաքննադատությունը հաստատակամորեն ծավալելու նշանաբանով անցավ ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը։ Գործարար մթնոլորտում պլենումում բացահայտվեցին մեր հանրապետության տնտեսական ու հասարակական կյանքում տեղ գտած թերություններն ու սխալները, մերկացվեցին սոցիալիստական հասարակարգին խորթ այն երևույթներն ու փաստերը, որոնք վնասում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործին, արգելակում մեր առաջընթացը։ Պլենումի որոշումները, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումը համակված էին լենինյան կուսակցականության ոգով, ճշմարտությունն ասելու, թերությունները բացահայտելու և դրանք վճռականապես արմատախիլ անելու հաստատակամությամբ։

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը հանրապետության կուսակցական կազմակերպությունների, բոլոր աշխատավորների գլխավոր խնդիրը համարեց՝ գործնական եռանդուն աշխատանքով կատարել եզրափակիչ տարվա դժվարին առաջադրանքները, պատվով ավարտել հնգամյակը։ Այս տարվա առաջին ամիսների աշխատանքային վերելքն ու խանդավառությունը, սոցիալիստական մրցության լայն թափը հուսալի երաշխիք են, որ Հայաստանի բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը, մտավորականությունը ամեն ինչ կանեն, որպեսզի արժանի ավանդ մուծեն մեր կուսակցության վիթխարի կանխագծումների իրականացման գործում։

Սովետական ժողովուրդը մեծ առաջնորդի ծննդյան 105-րդ տարեդարձը դիմավորում է ստեղծագործ աշխատանքի բազում սխրանքներով, նրա անմահ գաղափարների կենսագործման կոնկրետ իրողություններով։ Սովետների բազմազգ երկրի բոլոր աշխատավորները, համախմբված հարազատ կուսակցության շուրջը, հերոսական ջանքերով իրականացնում են մեծ Լենինի ամենավեհ, ազնիվ ու հումանիստական նպատակը՝ կոմունիզմի կառուցումը։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ՊԱՏՄԱԿԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՏԱՍՆԱՄՅԱԿԸ

**Ֆ. Դ. ԿՈՒԼԱԿՈՎ**
**ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար**

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արդի փուլը բնութագրվում է զարգացած սոցիալիզմի վիթխարի հնարավորությունների ու առավելությունների է՛լ ավելի լրիվ ծավալմամբ, երկրի արտադրողական ուժերի հզոր վերելքով։*

*ՍՍՀՄ տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում կատարվում է ստեղծագործական վիթխարի աշխատանք, լայն ճակատով շարունակվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը։ Պատմական այդ պրոցեսի ընթացքում իրականացվում է հասարակական հարաբերությունների պլանաչափ կատարելագործում, լուծվում է նյութական և հոգևոր բարիքների արտադրության անհրաժեշտ մակարդակի հասնելու խնդիրը՝ հանուն անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացման։*

*Դեպի կոմունիզմ մեր հասարակության առաջընթաց շարժման ճանապարհին վերջին տարիներն առանձնապես բնորոշվում են ժողովրդի սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնության հետագա ամրապնդմամբ, էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի զարգացման խոշոր հաջողություններով, սովետական պետության արտաքին քաղաքական դիրքերի նշանակալի ամրապնդմամբ և նրա միջազգային հեղինակության բարձրացմամբ։*

*Այդ ժամանակաշրջանում կուսակցության և ժողովրդի բեղմնավոր գործունեության համար առաջնակարգ նշանակություն ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թ. հոկտեմբերյան և նոյեմբերյան պլենումները։ Ղեկավարվելով լենինյան ուսմունքով, կուսակցությունն այդ պլենումներում դատապարտեց սուբյեկտիվիզմի և վոլյունտարիզմի տարրերը տնտեսական, քաղաքական և կազմակերպական բնույթի հարցերի լուծման գործում և մշակեց քաղաքական նոր կուրս պետական, տնտեսական և կուսակցական շինարարության բնագավառում։*

*Երկրի տնտեսական և հասարակական զարգացման ղեկավարման լենինյան սկզբունքների խստիվ պահպանումը բարենպաստ պայմաններ ստեղծեց գյուղատնտեսության հասունացած պրոբլեմների արմատական լուծման համար։ Ինչպես հայտնի է, մինչ այդ գյուղատնտեսական արտադրության մեջ երևան էին եկել շատ թերություններ և դժվարություններ։ Այն սկսել էր լրջորեն ետ մնալ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերից, անհամապատասխանություն էր առաջացել սոցիալիստական արդյունաբերության աճի և գյուղատնտեսության ետ մնալու միջև։*

*60-ական թվականների սկզբին այդ ճյուղի զարգացման տեմպերի դանդաղման վրա ազդել էին ղեկավարման թերությունները, սոցիալիզմի տնտեսական օրենքների, գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության, հասարակական և անձնական շահերի ճիշտ զուգորդման սկզբունքների անտեսումը։ Ստեղծվել էր այնպիսի դրություն, որը պահանջում էր վճռականորեն փոխել գործերի վիճակը գյուղատնտեսության մեջ և ճիշտ լուծել ծառացած հարցերը։*

*Այդ խնդիրը, համապետական կարևորություն ունեցող խնդիրը, կատարեց Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումը, որտեղ «ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման անհետաձգելի միջոցառումների մասին» զեկուցումով հանդես եկավ Լ. Ի. Բրեժնևը։*

*Կենտրոնական կոմիտեն այդ պլենումում, հավանություն տալով զեկուցման մեջ շարադրված միջոցառումներին, կուսակցության և երկրի ուշադրությունը շեշտակիորեն ուղղեց դեպի գյուղատնտեսության զարգացումը, դեպի այդ կարևորագույն ճյուղի ետ մնալը հաղթահարելը, կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի անշեղ բարձրացումը։ Մարտյան պլենումը գյուղատնտեսության ղեկավարման նոր մոտեցում սահմանեց, վճռական ներգործություն ունեցավ գյուղի սոցիալ-տնտեսական ամբողջ հետագա առաջընթացի վրա, նպաստեց ամբողջ սոցիալիստական էկոնոմիկայի հետագա զարգացմանը։ Կենտկոմի մարտյան պլենումի հետ անմիջականորեն կապված են կոլտնտեսային դեմոկրատիայի հետագա զարգացումը, կոլտնտեսականների երրորդ համամիութենական համագումարի անցկացումը և կոլտնտեսության նոր օրինակելի կանոնադրության ընդունումը։*

*Անցած ժամանակաշրջանն ամբողջ համոզչությամբ հաստատեց այդ պատմական պլենումի որոշումների կենսական մեծ ուժը։ Գյուղատնտեսությունը դուրս եկավ արագընթաց վերելքի ուղին, ձեռք բերվեց հողագործության և անասնապահության արտադրանքի արտադրության նշանակալի աճ, կատարվեց քաղաքի և գյուղի հետագա մերձեցում աշխատանքի ու կենցաղի պայմաններով։*

*Գյուղատնտեսության մեջ կատարված դրական տեղաշարժերն այն կարևոր պայմաններից մեկն էին, որոնք կուսակցությանը հնարավորություն ընձեռեցին ՍՄԿԿ XXIV համագումարում, որպես իններորդ հնգամյակի գլխավոր խնդիր և երկրի տնտեսական զարգացման ընդհանուր ուղղություն, առաջ քաշել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի էական բարձրացումը։*

## I

*ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ծավալուն կառուցման ժամանակաշրջանում գյուղատնտեսության առջև ծառացան նոր, ավելի մեծ խնդիրներ։ Դա կուսակցությունից պահանջեց ամենից առաջ մշակել այնպիսի քաղաքականություն, որն ընդունակ է արմատական բեկում առաջացնել գյուղատնտեսության զարգացման մեջ և գործողության մեջ դնելու նրա անշեղ առաջընթացը հուսալիորեն ապահովող լծակները։ Մարքսիզմ-լենինիզմի տեսակետից, գիտականորեն հիմնավորված քաղաքականությունը, արտահայտելով տնտեսական զարգացման հասունացած պահանջները, հսկայական դեր է խաղում սոցիալիստական հասարակության կյանքում, հանդես է գալիս որպես ստեղծագործական հզոր ուժ, որպես արտադրության վերելքի, սոցիալ-տնտեսական ամբողջ առաջընթաց շարժման հզոր գործոն։*

*Հաշվի առնելով սովետական հասարակության զարգացման օբյեկտիվ պահանջները, կոմունիստական կուսակցությունը համակողմանիորեն մշակեց և տեսականորեն հիմնավորեց արդի էտապում ագրարային քաղաքականության կարևորագույն դրույթները։ Կուսակցությունը ելնում է այն բանից, որ ագրա-*

բային քաղաքականությունը ՍՄԿԿ քաղաքական ընդհանուր կուրսի անբաժանելի բաղկացուցիչ մասն է։ Այդ քաղաքականությունն ուղղված է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի հետագա ամրապնդմանը, իր մեջ մարմնավորում է ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների, մեր հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի ընդհանուր, արմատական շահերը։ Գյուղատնտեսության զարգացումը դիտվում է ամբողջ սոցիալիստական էկոնոմիկայի հետ օրգանական կապի մեջ, մի բան, որ պայմանավորվում է հասարակական արտադրության բոլոր ոլորտների միասնությամբ։

Կուսակցության արդի քաղաքականությունը գյուղում լենինյան ագրարային տեսության ստեղծագործական զարգացումն է պատմական նոր պայմաններում։ Այդ քաղաքականության մեջ լայն արտացոլում է գտել արտադրողական ուժերի և սոցիալ-տնտեսական հարաբերությունների զարգացման միասնության լենինյան գաղափարը։ Կուսակցությունը վերցրել է արտադրա-տեխնիկական, տնտեսական և սոցիալ-քաղաքական խնդիրների փոխկապակցված լուծման հաստատուն կուրս։ Այդպիսի մոտեցումն է միայն համապատասխանում կոմունիստական շինարարության շահերին։

ՍՄԿԿ ագրարային քաղաքականության կարևոր առանձնահատկությունը նրա խիստ գիտական բնույթն է։ Այդ քաղաքականությունը խորը ռեալիստական է, խարսխվում է օբյեկտիվ գնահատականների ամուր հիմքի վրա։ «Կառավարման և քաղաքականության ամբողջ վարպետությունն այն է,— նշում էր Վ. Ի. Լենինը,— որ ժամանակին հաշվի առնենք ու իմանանք, թե որտեղ է հարկավոր կենտրոնացնել մեր գլխավոր ուժերը և ուշադրությունը» (Երկեր, հ. 42, էջ 116)։ Կուսակցության ներկայիս քաղաքականությունը գյուղում համապատասխանում է լենինյան այդ պահանջին։ Այդ քաղաքականությունը համակողմանիորեն հաշվի է առնում իրականության ռեալ փաստերը, գյուղատնտեսական արտադրության առանձնահատկությունը մեր երկրի պայմաններում, որոշում է ճյուղի զարգացման հանգուցային պրոբլեմները, աչքի ընկնում նպատակների ու դրանց հասնելու ուղիների միասնությամբ։

ՍՄԿԿ ժամանակակից ագրարային քաղաքականության սկզբունքային հիմքերը մշակեց Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումը։ Սա է նրա պատմական վիթխարի նշանակությունը։ Պլենումի նշած քաղաքական գիծը հետագա զարգացում և ամրապնդում ստացավ ՍՄԿԿ Կենտկոմի 1966 թ. մայիսյան, 1968 թ. հոկտեմբերյան, 1970 թ. հուլիսյան պլենումներում, կուսակցության XXIII և XXIV համագումարներում։ Քայլ առ քայլ լուծելով ագրարային քաղաքականության արմատական հարցերը, Կենտրոնական կոմիտեն մշակեց մի կուռ սիստեմ տնտեսական ու կազմակերպական այնպիսի միջոցառումների, որոնք իրենց կոնկրետ արտահայտությունը գտան գյուղատնտեսության վերելքի կոմպլեքսային լայն ծրագրի մեջ, որն իր նշանակությունը պահպանելու է երկար ժամանակ։ Գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ պլենումների և կուսակցական համագումարների որոշումները կուսակցության կոլեկտիվ մեծ աշխատանքի, մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացման ու դրա կենսագործման արդյունք են։

Կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի մեջ վիթխարի անձնական ավանդ է ներդնում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը։ Նրա զեկուցումներում, ճառերում և աշխատություններում տրված է ՍՄԿԿ ժամանակակից ագրարային քաղաքականության հիմնական գծերի ու գլխավոր ուղղությունների խոր վերլուծությունը, ընդհանրացված է կուսակցության բազմակողմանի գործունեության փորձը, ցույց են տրված գյուղատնտեսության զարգացման ուղիներն ու հեռանկարները։ Դա մեր կադրերին զինում է գործողությունների հստակ ծրագրով, հնարավորություն է ընձեռում նրանց՝ պարզորոշ տեսնելու կուսակցության մշակած քաղաքականության լայն, կոմպլեքսային բնույթը, տեսության ու պրակտիկայի օրգանական զուգակցումը, գիտական մոտեցումը հասունացած խնդիրների լուծմանը։

Կենտկոմի մարտյան պլենումում խորապես հիմնավորվեց և լայնորեն բացահայտվեց գյուղատնտեսության դերը կոմունիստական շինարարության մեջ։



«...Գյուղատնտեսության վերելքը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը պլենումում,— այն է, ինչ կենսականորեն անհրաժեշտ է կոմունիզմի հաջող կառուցման համար» (Լ. Ի. Բրեժնև։ Լենինյան կուրսով։ *Ճառեր և հոդվածներ*, հ. 1, «Հայաստան» հրատ., 1970, էջ 93)։ Սոցիալիստական էկոնոմիկայի պլանաչափ, համամասնական զարգացումը, պարենային և հումքային հզոր բազայի ստեղծումը երկրում, աշխատավորների բարեկեցության անշեղ բարձրացումը, աշխատանքի բնույթի որակական վերափոխումը կոլտնտեսություններում և սովխոզներում, գյուղի հենց դեմքի փոփոխումը՝ այս բոլորը խոշոր պրոբլեմներ են, որոնց լուծումն անհնար է առանց բարձր զարգացած գյուղատնտեսական արտադրության։ Ահա թե ինչու մեր կուսակցությունը գյուղատնտեսության զարգացումը համարում է համաժողովրդական գործ։

ՍՄԿԿ ժամանակակից ագրարային քաղաքականության գլխավոր նպատակն է գյուղատնտեսությունը բարձրացնել այնպիսի մակարդակի, որը հնարավորություն ընձեռի լիովին բավարարելու բնակչության հարաճուն պահանջմունքները սննդամթերքների, արդյունաբերության պահանջմունքները՝ հումքի նկատմամբ։ Ելնելով դրանից, մարտյան պլենումը վերցրեց գյուղատնտեսության կայուն և արագ զարգացման կուրս, որպես առաջնահերթ խնդիր առաջ քաշելով տնտեսական ամուր հիմքի ստեղծումն այդ ճյուղի համար և կոլտնտեսությունների ու սովխոզների նյութատեխնիկական բազայի վճռական ամրապնդումը։ Հենց այդ էր դեպի գյուղի կարիքները այն կտրուկ շրջադարձի էությունը, որ կատարվեց Կենտկոմի մարտյան պլենումում։ Կուսակցությունը սահմանեց, որ գյուղատնտեսության արագացրած վերելքի հարցը տնտեսական հասարակ հարց չէ, այլ քաղաքական, համակուսակցական, համապետական մեծ խնդիր։

Քաղաքականության մեջ այդ շրջադարձը համապատասխանում էր երկրի կենսական պահանջմունքներին։ Պահանջվում էր ոչ միայն վերացնել տնտեսական օրենքների անցյալում եղած խախտումները, այլև ապահովել ընդլայնված վերարտադրության նորմալ ընթացքը գյուղատնտեսության մեջ։ Դա թելադրվում էր հասարակության շահերը գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության հետ ճիշտ զուգորդելու և կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան շահութաբերությամբ վարելու անհրաժեշտությամբ։

Գյուղատնտեսության զարգացման այդ կենտրոնական պրոբլեմի լուծումը կուսակցությունն իրականացնում էր ամենից առաջ տնտեսական այնպիսի նախադրյալներ ստեղծելով, որոնք շարունակաբար խթանեին գյուղատնտեսական արտադրության պլանաչափ վերելքը և կոլտնտեսականների ու սովխոզների աշխատողների նյութական շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքների համար։ Խնդիրն այն էր, որպեսզի ստեղծվի աշխատանքի միանգամայն նոր դրվածք գյուղում, բացահայտվեն նախկինում չօգտագործված ռեզերվներն ու դրանք ուղղվեն գյուղատնտեսության արագացրած զարգացմանը։ Եվ դա արվեց։

Մարտյան պլենումի գծին համապատասխան մշակվեցին և իրականացվեցին տնտեսական խոշոր միջոցառումներ։ Դրանց մեջ կարևորագույն նշանակություն ունեին պլանավորման բարելավումը գյուղատնտեսության մեջ, կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական ինքնուրույնության ընդլայնումը, գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր սիստեմը, երբ տնտեսություններին են իջեցվում մի շարք տարիների գնումների կայուն պլաններ։ Սահմանվեցին տնտեսապես հիմնավորված գնման գներ, մտցվեց կոլտնտեսությունների ու սովխոզների խրախուսման կարգ պետությանը պլանից դուրս արտադրանք վաճառելու համար, բարձրացվեց մարդկանց նյութական ու բարոյական հատուցումը գյուղատնտեսական արտադրության մեջ նրանց աշխատանքի համար։

Գյուղատնտեսության էկոնոմիկայի և նյութատեխնիկական բազայի ամրապնդումը պետությունից և կոլտնտեսություններից խոշոր ներդրումներ էր պահանջում։ Այդ նպատակով կուսակցությունը և կառավարությունը նպատակահարմար գտան ավելի լայնորեն օգտագործել երկրի ընդհանուր տնտեսական պոտենցիալը և ազգային եկամտի բաշխման համամասնությունները փոխել

հօգուտ գյուղատնտեսության։ Ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ այդ ճյուղի կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը յոթերորդ հնգամյակում դրանց ծավալի 20 տոկոսից ութերորդ հնգամյակում հասավ մինչև 23, իններորդ հնգամյակում՝ մինչև 26 տոկոսի։ ՍՄԿԿ քաղաքականության այս ուղղությունը համապատասխանում է ժողովրդական տնտեսության պլանաչափ, համամասնական զարգացման պահանջներին և ամբողջ հասարակության շահերին։

Գյուղատնտեսության մեջ տնտեսական կայուն պայմանների ստեղծումն ունեցել է և ունի հսկայական նշանակություն։ Այն արմատապես փոխեց ամբողջ իրադրությունը գյուղում, հավատ ներշնչեց աշխատանքում, ապառություն տվեց տնտեսությունների նախաձեռնությանը, կոլտնտեսությունների ու սովխոզների մասնագետներին ու ղեկավար կադրերին, բոլոր աշխատողներին հնարավորություն ընձեռեց աշխատելու ստեղծագործաբար, ավելի արտադրողաբար, դարձավ արտադրության զարգացման և գյուղական էկոնոմիկայի ամրապնդման հզոր գործոն։ Կոլտնտեսությունների և սովխոզների համախառն եկամուտն անցած տասնամյակում կրկնապատկվեց։ Զգալիորեն աճեցին տրնտեսությունների կուտակումները, մեծացավ կոլտնտեսությունների մաքուր եկամուտը, սովխոզներն սկսեցին ստանալ շահույթ, այն ժամանակ, երբ մինչև 1965 թվականը նրանց մեծ մասն աշխատում էր վնասով։

Գյուղում տնտեսական հարաբերությունների հետագա կատարելագործումը կուսակցությունը դիտում է որպես գյուղատնտեսական արտադրության հաջող աճի պարտադիր պայման։ Կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական բազայի ամրապնդման, աշխատանքի նյութական և բարոյական խթանների հմուտ օգտագործման հարցերն այսուհետ ևս պետք է շարունակ գտնվեն հանրապետությունների, երկրամասերի և մարզերի կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ուշադրության կենտրոնում։ Կարևոր է այսուհետև նույնպես ավելի լրիվ օգտագործել տնտեսական լծակները, արտադրության մեջ ավելի լայնորեն ներդնել տնտհաշվարկը, ապահովել ավելի ճիշտ հարաբերակցություն վարձատրության աճի և աշխատանքի արտադրողականության բարձրացման միջև։

II

ՍՄԿԿ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱԳՐԱՐԱՅԻՆ ԿՈՒՐՍԻՆ, ինչպես և կուսակցության ամբողջ տնտեսական քաղաքականությանը բնորոշ է սիստեմային, կոմպլեքսային մոտեցումը կյանքի առաջադրած խնդիրների լուծմանը։ Իրականացնելով գյուղատնտեսական արտադրությունը բարձրացնելու միջոցառումները, կուսակցությունը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, հաշվի է առնում նրա զարգացումը որոշող գործոնների ամբողջությունը։ Կոմպլեքսայնությունը ՍՄԿԿ ժամանակակից ագրարային քաղաքականության բնորոշ առանձնահատկությունն է։ Դրանով են ներթափանցված այժմ գյուղատնտեսության և նրա հետ կապված հասարակական արտադրության մյուս ճյուղերի բոլոր կարևորագույն պլանները։

Գյուղատնտեսական արտադրության արագացված աճին ուղղված միջոցառումների համակարգում, տնտեսական լծակներից բացի, առաջնահերթ նշանակություն ունի նյութատեխնիկական բազայի ամրապնդումը։ Հայտնի է, որ գյուղատնտեսության մեջ արտադրանքի արտադրության աճն ապահովվում է հողատարածության ամեն մի հեկտարից հնարավորին չափ ավելի շատ արդյունք ստանալու միջոցով՝ այդ հողատարածության ավելի արդյունավետ օգտագործմամբ և անասունների մթերատվության բարձրացմամբ, ինչպես նաև նորանոր հողեր տնտեսական շրջանառության մեջ ներգրավելու և հանրային հոտի գլխաքանակն ավելացնելու հաշվին։

Այժմ, գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, գյուղատնտեսական արտադրության ցարգացման ինտենսիվ գործոններր մղվել են առաջին պլան։ Ներկայումս արդեն չի կարելի արտադրության նշանակալի աճ հուսալ՝ առանց գիտության ու տեխնիկայի նվաճումների, տնտեսությունը վարելու ժամանակակից մեթոդների լայն օգտագործման, առանց առաջադիմական տեխնոլոգիաների արմատավորման։ Հողագործության և անասնապահության ինտենսիվացումն ուժեղացնելու անհրաժեշտությունը թելադրվում է նաև այն բանով, որ բնակչության թվաքանակի ավելացմանը զուգրնթաց կրճատվում է մեկ շնչին ընկնող վարելահողի տարածությունը, իսկ գյուղատնտեսական արտադրանքի նկատմամբ պահանջմունքներն անշեղորեն աճում են։

Հաշվի առնելով այս բոլոր օբյեկտիվ պայմաններն ու երկրի աճած տրնտեսական հնարավորությունները, Կենտկոմի մարտյան պլենումը մշակեց գյուղատնտեսության հետևողական ինտենսիվացումն իրականացնելու կուրս։ Այս պրոբլեմի կարևոր շատ հարցեր մշակվում և կոնկրետացվում էին Կենտկոմի հետագա պլենումներում, ՍՄԿԿ համագումարներում, գյուղատնտեսության վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումներում։ Բացահայտելով ինտենսիվացման նշանակությունը, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1970 թ. հուլիսյան պլենումում ասում էր, թե «գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը, նրա տեխնիկական վերազինումն արդի պայմաններում այն վճռական գործոնն է, որը որոշում է նրա հետագա զարգացման տեմպերը» (Լ. Ի. Բրեժնև։ Լենինյան կուրսով։ Ճառեր և հոդվածներ, հ. 3, «Հայաստան» հրատ., 1974, էջ 86)։

Անցած ժամանակամիջոցում կուսակցությունն այդ ասպարեզում կատարեց վիթխարի աշխատանք։ 1965—1974 թթ. կոմպլեքսային ամբողջ աշխատանքի համար պետական ու կոլտնտեսային միջոցների հաշվին գյուղատնտեսության զարգացման նպատակով հատկացվել են 195 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ, կամ 2,8 անգամ ավելի շատ, քան նախորդ տասնամյակում։ Դրա շնորհիվ պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների և կոլտնտեսությունների հիմնական արտադրական ֆոնդերը նշված ժամանակամիջոցում ավելացան 2,4 անգամ, իսկ աշխատանքի ֆոնդազինվածությունը՝ 2,5 անգամ։ Աշխատանքի ֆոնդազինվածությամբ գյուղատնտեսությունը գնալով ավելի է մոտենում արդյունաբերությանը։

Գյուղատնտեսության ինտենսիվացման և նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդման գործում վճռական ավանդ են ներդնում մեր հերոսական բանվոր դասակարգը, գիտատեխնիկական ինտելիգենցիան, քաղաքների և արդյունաբերական կենտրոնների աշխատավորները։ Այստեղ, ինչպես և կոմունիստական շինարարության մյուս բնագավառներում, վառ կերպով դրսևորվում է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության անխախտ դաշինքի հզոր ուժը, քաղաքի և գյուղի շահերի անքակտելիությունը։

Անցած տասնամյակում մեծ քայլ է կատարվել կոլտնտեսությունների և սովխոզների տեխնիկական հագեցման ասպարեզում։ Սոցիալիստական ինդուստրիան գյուղին տվել է 3 միլիոն տրակտոր, 1,6 միլիոն բեռնատար ու մասնագիտացված ավտոմոբիլ, 906 հազար հացահատիկահավաք կոմբայն, 23 միլիարդ ռուբլու գյուղատնտեսական այլ մեքենաներ։ Շեշտակիորեն աճել է էլեկտրաէներգիայի սպառումը գյուղում։ Մեծապես աճել են գյուղատնտեսության էներգետիկ կարողությունները, բարձրացել է աշխատանքի էներգազինվածությունը։ Ներկայումս մեր արդյունաբերությունը գյուղատնտեսության համար արտադրում է ավելի քան 1.400 անուն տարբեր տեսակի մեքենաներ ու սարքավորումներ, կամ 3 անգամ ավելի շատ, քան 1965 թվականին։ Դրա շնորհիվ աճել է արտադրական պրոցեսների մեքենայացման ու էլեկտրիֆիկացման մակարդակը դաշտավարության և անասնապահության մեջ։ Հետևողականորեն իրականացվում է անցումը արտադրության մասնակի մեքենայացումից կոմպլեքսային մեքենայացման։

Գյուղը վերազինվում է ավելի ու ավելի կատարյալ տեխնիկայով։ Վերջին տարիներին երկրի դաշտերն են դուրս եկել բարձր արտադրողական Կ—700 տրակտորը ու դրա ձևափոխված տեսակները, հացահատիկահավաք «Կոլոս», «Նիվա», «Սիբիրյակ» կոմբայնները, շաքարի ճակնդեղ հավաքող ինքնագնաց վեցշարքանի մեքենան և այլն։

Գյուղատնտեսության տեխնիկական վերազինման բնագավառում քիչ բան







չի արված, բայց հետագա անելիքներն է՛լ ավելի շատ են։ Հարկավոր է, ինչպես ընդգծվում է կուսակցության փաստաթղթերում, նախ, ավելացնել մեքենաների թողարկումն արտադրական այն պրոցեսների համար, որոնց մեքենայացման մակարդակը դեռ բավարար չէ, և, երկրորդ, հաջորդաբար նորացնել տեխնիկան, ստեղծել և յուրացնել նոր տեսակի մեքենաներ։ Այժմ գյուղատնտեսությանը հարկավոր է այնպիսի տեխնիկա, որը գնալով ավելի մեծ չափով համապատասխանի մասնագիտացված արտադրության ժամանակակից պահանջներին։ Այդ կապակցությամբ մեծ խնդիրներ են ծառացած մեր արդյունաբերության առջև, որը կոչված է ավելացնելու նոր տեխնիկայի արտադրությունը գյուղի համար և ապահովելու դրա որակական կատարելագործումը։

Իհարկե, գյուղատնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացը չի կարելի հանգեցնել լոկ մեքենայական պարկի և նյութատեխնիկական այլ միջոցների աճին։ Շատ կարևոր է կոլտնտեսություններում և սովխոզներում եղած ամբողջ տեխնիկան օգտագործել առավելագույն փոխհատուցմամբ։ Դա աշխատանքի արտադրողականության աճի, գյուղատնտեսական աշխատանքների ժամկետների ու արտադրանքի կորուստների կրճատման կարևորագույն պայման է։ Ներկայումս կոլտնտեսություններում և սովխոզներում տեխնիկան բարձր արդյունավետությամբ օգտագործելու համար ծավալված շարժումն ակներևորեն ցույց է տալիս, թե մեքենան ինչ կարող է տալ խելացի շահագործելու դեպքում։ Տեխնիկայի աշխատանքի բարելավմանը պետք է նպաստեն մեխանիզատորական կադրերի պատրաստումն ու որակավորման բարձրացումը, ինժեներական ծառայության կատարելագործումը գյուղում, մեքենատրակտորային պարկի տեխնիկական սպասարկման առաջադիմական ձևերի լայն արմատավորումը, հոգատար վերաբերմունքը մեքենաների նկատմամբ։

Գյուղատնտեսության ինտենսիվացման ուժեղացման հզոր միջոց է դարձել հողագործության քիմիացումը։ Այդ նպատակով կուսակցությունն ամենից առաջ արմատական միջոցներ է ձեռնարկել հանքային պարարտանյութերի արտադրությունը զարգացնելու համար։ Միայն ընթացիկ հնգամյակի չորս տարում գործարկվել են տարեկան գրեթե 30 միլիոն տոննա կարողությամբ նոր ձեռնարկություններ։ Այժմ հանքային պարարտանյութերի արտադրության ընդհանուր հզորությունն ավելի քան երկու անգամ գերազանցում է ութերորդ հնգամյակի սկզբին եղած մակարդակը։ Այդ ժամանակամիջոցում գործարկվել են հանքային պարարտանյութերի արտադրության այնպիսի խոշորագույն ձեռնարկություններ, ինչպիսիք են Նովգորոդի, Չերկասկի, Ռովնոյի քիմկոմբինատները և Չերեպովեցի, Ալմալիկի քիմիական գործարանները, ստեղծվել են պարարտանյութեր արտադրող նոր, հզոր կոմպլեքսներ Նովոմոսկովսկի, Նևինոմիսկի, Վոսկրեսենսկի, Սևերոդոնեցկի քիմկոմբինատներում, «Բելոռուսկալի» կոմբինատում և այլն։ Բարելավվում է խտացրած և կոմպլեքսային պարարտանյութերի որակը, աճում դրանց տեսակարար կշիռը։

Քիմիական արդյունաբերության զարգացումն ապահովեց գյուղատնտեսությանն առաքվող հանքային պարարտանյութերի, կրանյութերի և քիմիական այլ միջոցների արագ ավելացումը։ 1965 թվականին գյուղատնտեսությունն ստացել է 26,9 միլիոն տոննա տուկ, իսկ արդեն 1970 թվականին՝ 45,4 միլիոն տոննա, 1975 թվականին նախատեսված է մատակարարել 72,4 միլիոն տոննա։ Դա թույլ է տալիս տեխնիկական ու բանջարանոցային կուլտուրաները, կարտոֆիլն ավելի լավ ապահովել պարարտանյութերով, ավելացնել հացահատիկային կուլտուրաների պարարտացումը։ Արտադրության աճը, կոլտնտեսություններին և սովխոզներին առաքվող հանքային պարարտանյութերի ավելացումը հողագործության արդյունավետության բարձրացման գլխավոր պայմաններից են։ Այժմ խնդիր է դրված՝ վճռականորեն բարձրացնել քիմիայի միջոցների կիրառման արդյունավետությունը յուրաքանչյուր տնտեսությունում և դրանցից ստանալ բերքի առավելագույն հավելում, կանխել հանքային պարարտանյութերի կորուստները փոխադրման, պահպանման և օգտագործման ժամանակ։



Գյուղատնտեսության զարգացման երկարատև կոմպլեքսային ծրագրի իրականացման գործում կարևորագույն տեղ է հատկացվում հողերի մելիորացմանը։ Կուսակցությունը ելնում է այն բանից, որ հողերի լայն մելիորացումը մեր երկրում կայուն գյուղատնտեսական արտադրություն ստեղծելու պարտադիր պայմանն է։ Հողերի մելիորացման ծրագրի մշակմանն էր նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի 1966 թվականի մայիսյան պլենումը։ Վերջին տասը տարում, գյուղատնտեսական կուլտուրաների բարձր ու երաշխավորված բերք ստանալու նպատակով, իրականացվել են մելիորատիվ շինարարության և հողերի պտղաբերության բարձրացման խոշոր միջոցառումներ։

Մելիորացման ծրագրի համար բնորոշ են հողերի ոռոգման, չորացման և մելիորատիվ բարելավման միջոցառումների խոշոր մասշտաբայնությունն ու կոմպլեքսայնությունը։ Այդ ծրագիրը նախատեսված է երկար ժամանակաշրջանի համար և ընդգրկում է երկրի բոլոր շրջանները, ըստ էության, յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ։ Դրա առանձնահատկությունն անցումն է մելիորացման նեղ, տեղական խնդիրներից՝ ինժեներական բարձր կարգի ինրիգացիոն և չորացման ժամանակակից մեծ սիստեմների կառուցմանը։ Այդ ծրագիրը մեր պետության պատմության մեջ առաջին անգամ նախատեսում է ոռոգիչ սիստեմների կառուցման միջոցով ջրովի հողերում ստեղծել հացահատիկի արտադրության խոշոր շրջաններ՝ Ուկրաինայի հարավում, Կրասնոդարի և Ստավրոպոլի երկրամասերում, Ռոստովի մարզում, Միջին և Ստորին Պովոլժիեի շրջաններում, Վոլգայի և Ուրալի գետամիջյան տարածությունում։ Իռիգացիոն շինարարության առաջնահերթ խնդիրը մնում է ոռոգելի հողագործության հետագա զարգացումը Ուզբեկստանում և բամբակագործության մյուս շրջաններում։

Մեր գյուղատնտեսության մեծ ապագան մելիորացիայի լայն զարգացման մեջ է։ Այժմ երկրում կատարվում են հողերի մելիորացման այնպիսի ծավալի աշխատանքներ, որոնք հավասարը չունեն աշխարհում։ Վերջին տասը տարում իռիգացիոն-մելիորատիվ միջոցառումների և մելիորացված հողերի յուրացման համար հատկացված են ավելի քան 33 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ, օգտագործելի են դարձել ավելի քան 13 միլիոն հեկտար նոր ոռոգվող ու չորացրած հողեր, որոնց շնորհիվ դրանց ընդհանուր տարածությունն ավելացել է մինչև 26 միլիոն հեկտարով, որի կեսը ոռոգելի է։

Մելիորացված հողերում զգալիորեն ավելացել է հացահատիկի, բամբակի, բանջարեղենի և այլ կուլտուրաների արտադրությունը։ Շեշտակիորեն աճում է մելիորացման նշանակությունը խոշոր քաղաքների շուրջը ջրովի բանջարաբուծություն կազմակերպելու, ինչպես նաև կերի արտադրության, առանձնապես կուլտուրական ոռոգելի արոտավայրեր ստեղծելու գործում։ 1971—1974 թթ. այդպիսի արոտավայրեր են ստեղծվել ավելի քան 1,2 միլիոն հեկտար տարածության վրա, իսկ ամբողջ հնգամյակում դրանց տարածությունը կընդլայնվի 2 միլիոն հեկտարով։

Քաղաքական ու սոցիալ-տնտեսական վիթխարի նշանակություն ունի հողերի մելիորացման աշխատանքների լայն ծավալումը ՌՍՖՍՀ ոչ-սևահողային գոտում։ 1974 թ. մարտին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների սովետը ընդունեցին որոշում Ռուսաստանյան Ֆեդերացիայի ոչ-սևահողային գոտու գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին։ «Մենք,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— բացառիկ մեծ նշանակություն ենք տալիս այդ միջոցառումներին և դրանք դիտում ենք որպես գյուղատնտեսության զարգացման երկարատև կոմպլեքսային ծրագրի օղակներից մեկը, մի ծրագիր, որ մշակել են Կենտկոմի 1965 թվականի մարտյան և հետագա պլենումները, կուսակցության XXIII և XXIV համագումարները» (Լ. Ի. Բրեժնև։ ՍՄԿԿ ագրարային քաղաքականության հարցերը և Ղազախստանի խոպան հողերի յուրացումը։ Ճառեր և զեկուցումներ։ 2-րդ հրատ., լրացվ.։ Մ., քաղհրատ, 1974, էջ 379)։ Ոչ-սևահողային գոտում աշխատանքների ծրագրի կատարումը համա-

պետական գործ է։ Դա, ըստ էության, մեր երկրորդ խոպանն է, ինչպես արդարացիորեն այն անվանեց սովետական ժողովուրդը։

Մենք ունենք մելիորացված հողերում հմուտ տնտեսավարության ոչ քիչ օրինակներ։ Սակայն ոռոգվող և չորացրած հողերի եղած հնարավորությունները մի շարք տեղերում դեռևս օգտագործվում են ոչ լրիվ չափով։ Ներկա պայմաններում, երբ հսկայական միջոցներ են ներդրվում մելիորացիայի մեջ, յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ պետք է ունենա մելիորացված հողերի ռացիոնալ օգտագործման կոմպլեքսային պլան այն հաշվով, որպեսզի առավելագույն չափով նպաստեն բերքի բարձրացմանը։

Իր ագրարային քաղաքականության մեջ և գյուղատնտեսության զարգացման միջոցառումների սիստեմում կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս արտադրության կազմակերպման ձևերի կատարելագործմանը, էկոնոմիկայի այդ ճյուղի կառավարման բարելավմանը։ Խոսքը նախ և առաջ միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և հետագա համակենտրոնացման գնալով աճող դերի մասին է։ Այդ պրոցեսը, նշում էր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թ. դեկտեմբերյան պլենումում, այժմ հանդես է գալիս որպես գյուղատնտեսության զարգացման մայրուղի։ Դրա մեջ է գյուղի մեծ հեռանկարը, ըստ էության, նոր էտապը կոոպերացիայի լենինյան գաղափարների իրականացման գործում։

Գյուղում հանրային տնտեսության կազմավորման ու զարգացման ընթացքում կուսակցությունն առաջներում ևս ուշադրություն էր դարձնում արտադրության մասնագիտացմանն ու համակենտրոնացմանը։ Այդ բանն իր արտահայտությունն էր գտնում մասնագիտացված սովխոզների կազմակերպման, արտադրանքի առանձին տեսակների ապրանքային արտադրության գոտիների ստեղծման մեջ։

Սակայն միջտնտեսային կոոպերացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը կասեցվում էր մի ամբողջ շարք օբյեկտիվ հանգամանքներով, մասնավորապես՝ նյութատեխնիկական ապահովման թերություններով։ Մեր կոլտնտեսություններն ու սովխոզները խոշոր տնտեսություններ են, բայց դրա հետ մեկտեղ նրանց մեծ մասը շարունակում է մնալ բազմաճյուղ, որը ներկա պայմաններում արդեն արգելակում է նրանց զարգացումը, հնարավորություն չի տալիս լրիվ չափով իրականացնել հողագործության ու անասնապահության ինդուստրացումը, օգտագործել գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները։ Առանձին կոլտնտեսության կամ սովխոզի համար, չնայած վերջին տարիներին նրանց էկոնոմիկայի ձեռք բերած աճին և սեփական ոչ քիչ կուտակումներին, դժվար է և երբեմն տնտեսապես նպատակահարմար չէ կառուցել ժամանակակից արտադրական շենքեր ու օբյեկտներ՝ արտադրանքի արդյունաբերական արտադրության համար։ Հրամայական անհրաժեշտություն է ծագում՝ միավորել կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս ձեռնարկությունների ջանքերը։

Միջտնտեսային կոոպերացումը հնարավորություն է տալիս ավելի արդյունավետ օգտագործել մեքենայացված խոշոր արտադրության տնտեսական և սոցիալական առավելությունները, կապիտալ ներդրումներն ու աշխատանքային ռեսուրսները։ Կոոպերացման և մասնագիտացման պրոցեսում կարելի է ապահովել համակենտրոնացման ամենալավագույն մակարդակը, ժամանակակից մեքենայական տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիաների ավելի լայն կիրառումը, որոնք նպաստում են հասարակական աշխատանքի բաժանման խորացմանը և դրա արտադրողականության հետագա բարձրացմանը։ Այդ բանը լրիվ հաստատվում է անասնապահական խոշոր ֆերմաներում և կոմպլեքսներում, կերի արտադրության, բանջարաբուծության մեջ և մյուս ճյուղերում մասնագիտացված արտադրություն կազմակերպելու փորձով։

Ահա մի քանի օրինակ։ Մոլդավական ՍՍՀ-ում այժմ գործում են ավելի քան 300 մասնագիտացված միջտնտեսային կոմպլեքսներ ու միավորումներ, որոնք արտադրում են կոլտնտեսությունների համախառն արտադրանքի զգալի մասը։ Աշխատանքի արտադրողականությունն այստեղ անհամեմատ ավելի



բարձր է, քան չմասնագիտացված տնտեսություններում։ Պենզայի մարզում այժմ միջտնտեսային միավորումներին բաժին է ընկնում կոլտնտեսությունների և սովխոզների կողմից իրացվող տավարի ու խոզի մսի կեսից ավելին, որն արտադրվում է աշխատանքի ու կերի զգալիորեն ավելի պակաս ծախսումներով, քան մյուս տնտեսություններում։ Կարելի է այդպիսի օրինակներ բերել նաև Կրասնոդարի երկրամասից, Խարկովի, Վորոնեժի և մի շարք այլ մարզերից ու հանրապետություններից։

Ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թ. դեկտեմբերյան պլենումի ցուցումներով, տեղական կուսակցական, սովետական և տնտեսական օրգաններն ամենուրեք ուժեղացրել են միջտնտեսային մասնագիտացումն ընդլայնելու հետ կապված աշխատանքը։ Նրանք որոնում են կոոպերացման լավագույն տարբերակներ, որպեսզի, ամեն բան ուսումնասիրելով ու կշռադատելով, ռացիոնալ օգտագործեն հողն ու կոոպերացվող տնտեսությունների միջոցները, չկատարեն վրիպումներ, մասնավորապես, սեփական կերային բազա ստեղծելու, ֆերմաներն ու կոմպլեքսները բարձր մթերատու անասուններով ապահովելու գործում և այլն։ Արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման զարգացումը պետք է դառնա գյուղատնտեսության պլանների կարևոր բաղկացուցիչ մասը։

Կոմունիստական շինարարության ընթացքում անշեղորեն աճելու է միջտնտեսային մասնագիտացված և ագրոարդյունաբերական ձեռնարկությունների ու միավորումների դերը։ Հանդիսանալով արտադրության արդյունավետության բարձրացման գլխավոր ուղիներից մեկը, միջտնտեսային համակենտրոնացումն ու ագրոարդյունաբերական ինտեգրացումը միևնույն ժամանակ կարևոր գործոններ են նաև սոցիալական հարցերի լուծման, կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակի բարձրացման ու կատարելագործման, քաղաքի և գյուղի միջև էական տարբերությունների աստիճանական վերացման համար։

Գյուղատնտեսության հետագա ինտենսիվացումն ու նրա արդյունավետության բարձրացումը կուսակցությունը սերտորեն կապում է գիտության զարգացման, գիտատեխնիկական նվաճումների պրակտիկ իրագործման հետ։ Վերջին տասնամյակը բնութագրվում է գիտության և արտադրության ավելի սերտ ու ակտիվ կապով, գյուղատնտեսության հրատապ պրոբլեմների գիտական հետազոտությունների հետագա ընդլայնմամբ։

Երկրում նշանակալի աշխատանք է կատարվել գիտահետազոտական հիմնարկների ցանցը կատարելագործելու և դրանք մասնագիտացնելու ասպարեզում։ Որոշված են տեսական և հետախուզական բնույթի ինստիտուտները, տեխնոլոգիական և նախագծային-տեխնոլոգիական գիտահետազոտական հիմնարկությունները։ Գիտահետազոտական հիմնարկությունների պլանավորումը, կոորդինացումն ու գիտամեթոդական ղեկավարումը բարելավելու նպատակով երկրի գյուղատնտեսական խոշոր գոտիներում կազմակերպվել են Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական գիտությունների համամիութենական ակադեմիայի տեղական 7 բաժանմունքներ, 28 սելեկցիոն կենտրոններ՝ հացահատիկային, լոբահատիկավոր, ձավարատու և կերային կուլտուրաների սելեկցիայի համար։ Ամրապնդվում է գիտական հիմնարկությունների նյութատեխնիկական բազան։

Այս և ուրիշ միջոցառումների իրականացումն ապահովեց հետազոտական աշխատանքների արդյունավետության նշանակալի բարձրացումը։ Ստացվել և լայն տարածում են գտել գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերքատու նոր սորտեր ու հիբրիդներ։ Մշակվում և արտադրության մեջ արմատավորվում են ժամանակակից առաջադիմական տեխնոլոգիաներ։

Մեր ակադեմիկոս սելեկցիոներներ Պ. Պ. Լուկյանենկոն, Վ. Ն. Ռեմեսլոն և ուրիշներ ստեղծել են աշնանացան ցորենի բարձր բերքատու սորտեր, որոնք ընդունակ են սնման լավագույն ռեժիմի պայմաններում հեկտարից տալ 90—100-ական ցենտներ հացահատիկի բերք։ Նոր սորտերի լայն տարածումը դրանց մշակման շրջաններում, հնարավորություն ընձեռեց, ըստ էության, կրկնապատկելու աշնանացան ցորենի բերքատվությունը։ Ակադեմիկոս Վ. Ս. Պուստովոյ-

տի սելեկցիայի սորտերը հնարավորություն տվեցին արևածաղկի սերմերի բերքատվությունը հեկտարի հաշվով բարձրացնել ավելի քան երկու, իսկ արևածաղկի ձեթի ստացումը՝ գրեթե երեք անգամ: Արտադրության մեջ արմատավորված խոշոր մշակումների թվում մեծ նշանակություն ունի երկրագործության հողապաշտպան սիստեմը, որ ստեղծել է սովետական գիտությունն ու պրակտիկան:

Արտադրության պահանջները շարունակ նոր խոշոր պրոբլեմներ են դնում գիտության առջև: Առավել հրատապ պրոբլեմների թվին են պատկանում գյուղատնտեսական բույսերի բարձր բերքատու և կայուն սորտերի ստեղծումը, անասունների ավելի բարձր մթերատու ցեղերի բուծումը, արտադրության կազմակերպման ու տեխնոլոգիայի առաջադիմական ձևերի վերաբերյալ գիտական առաջարկությունների մշակումը: Կուսակցությունը գիտնականներին ու գիտական կոլեկտիվներին նպատակամղում է ֆունդամենտալ ու կիրառական հետազոտությունների հետագա ծավալմանը, նրանց ուժերը և ուշադրությունը կենտրոնացնում գիտատեխնիկական առաջընթացի ամենակարևոր ու հեռանկարային ուղղությունների վրա:

Գյուղատնտեսական արտադրության համակողմանի ինտենսիվացումը գնալով ավելի մեծ դեր է կատարում սովետական հասարակության տնտեսական ու սոցիալական առաջընթացի գործում: Սոցիալիստական գյուղատնտեսությունը որքան ավելի առաջ ընթանա տեխնիկական հագեցվածությամբ, էներգազինվածությամբ, գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործման աստիճանով, այնքան ավելի է մոտենալու սոցիալիստական արդյունաբերությանը, իսկ գյուղատնտեսական աշխատանքն իր բնույթով կդառնա ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը:

Լուծելով գյուղատնտեսության ինտենսիվացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրները, կուսակցությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում կադրերի հետ տարվող աշխատանքին: Կոլտնտեսային և սովխոզային արտադրության բոլոր օղակների ամրապնդումը բարձրորակ, քաղաքականապես հասուն աշխատողներով, որոնք լավ գիտեն արտադրության էկոնոմիկան և կազմակերպումը, տիրապետում են բարդ տեխնիկային ու տեխնոլոգիային, դառնում է այն պարտադիր պայմանը, առանց որի հնարավոր չէ հաջողությամբ իրագործել նշված պլանները: Այս տեսակետից մեծ աշխատանք են կատարել կուսակցական կազմակերպությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումից անմիջապես հետո երկրում ստեղծվեց արտադրության մասնագետների և կազմակերպիչների, ինչպես նաև մասսայական պրոֆեսիաների կադրերի պատրաստման ու վերապատրաստման կուռ սիստեմ: Անցած տասնամյակում գրեթե երկու անգամ աճել է բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ շրջանավարտների թիվը, բարելավվել է նրանց պատրաստման որակը: Այդ ժամանակամիջոցում վերապատրաստվել և իրենց գիտելիքները բարձրացրել են տնտեսությունների մոտ մեկ միլիոն ղեկավարներ ու մասնագետներ:

Դեռ մինչև վերջերս ոչ բոլոր կոլտնտեսություններն ունեին իրենց գյուղատնտեսը, առավել ևս ինժեները կամ տնտեսագետը, իսկ այժմ միջին հաշվով յուրաքանչյուր կոլտնտեսությանն ընկնում է մինչև 16, իսկ սովխոզին՝ մինչև 30 դիպլոմավոր մասնագետ: Յուրաքանչյուր տնտեսություն, որպես կանոն, այժմ ղեկավարում է մասնագիտական կրթություն ունեցող փորձված կազմակերպիչ: Մասնագետների հաշվին հաջորդաբար ամրապնդվում է միջին օղակի ղեկավարների՝ բաժանմունքների կառավարիչների, ֆերմաների վարիչների և բրիգադավարների կազմը:

Կադրերի նկատմամբ կուսակցության հոգատարության նոր արտահայտություն է ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած որոշումը «Կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավար կադրերի և մասնագետների վերապատրաստման ու որակավորման բարձրացման ասպարեզում գյուղատնտեսական օրգանների աշխատանքի մասին»: Այս փաստաթղթում տրված է գյուղատնտեսությունը բարձրորակ կադրերով ապահովելու հեռանկարային ծրագիրը, կայքեր, որոնք ունակ են ավելի հմտորեն ու հետևողականորեն արմատավորել արտադրության մեջ գիտատեխնիկական առաջընթացի և առաջավոր փորձի նվաճումները:



Մեծ աշխատանք է կատարվում մասսայական պրոֆեսիաների կադրեր պատրաստելու ասպարեզում: Միայն պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմում կոլտնտեսությունների և սովխոզների համար պատրաստվում են մոտ հարյուր պրոֆեսիայի աշխատողներ: Այժմ գյուղատնտեսության մեջ աշխատում են 3,8 միլիոն տրակտորիստ-մեքենավարներ, կոմբայնավարներ ու վարորդներ, այսինքն՝ 800 հազարով ավելի, քան կային մինչև Կենտկոմի մարտյան պլենումը: Գյուղատնտեսական արտադրության ինդուստրացմանը զուգընթաց այսուհետ ևս աճելու է մեխանիզատորների ջոկատը:

Կենտկոմի մարտյան պլենումի հետ են կապված գյուղատնտեսության կուսակցական ղեկավարության ոճի ու մեթոդների, կուսակցական կադրերի որակական կազմի մեջ տեղի ունեցած արմատական փոփոխությունները: Այժմ կուսակցության գյուղական շրջկոմների քարտուղարների ճնշող մեծամասնությունն ունի բարձրագույն կրթություն, ընդ որում, յուրաքանչյուր շրջկոմում քարտուղարներից մեկը գյուղատնտեսության մասնագետ է: Կոլտնտեսային սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներից յուրաքանչյուր երրորդը և սովխոզային կազմակերպությունների քարտուղարներից յուրաքանչյուր երկրորդը նույնպես ունեն բարձրագույն կամ թերի բարձրագույն կրթություն: Դրանք մասսաների փորձված, քաղաքականապես հասուն, եռանդուն և հմուտ կազմակերպիչներ են: Կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կուսկազմակերպությունները գյուղում այժմ ցուցաբերում են ավելի շատ նախաձեռնություն ու գործիմացություն, ինքնուրույնություն և պատասխանատվություն՝ գյուղատնտեսության առջև կուսակցության դրած խնդիրները կատարելու համար: Մեր կադրերն այսուհետ ևս պետք է հետևողականորեն պայքարեն տնտեսական ու պետական գործունեության բոլոր օղակներում աշխատանքի իսկական կուսակցական ոճ և գործի նկատմամբ կուսակցական մոտեցում հաստատելու համար:

## III

ՔԱՋ ՀԱՅՏՆԻ Է ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ դրույթն այն մասին, որ պրակտիկան ճշմարտության չափանիշն է: Դա նշանակում է, որ կուսակցության պլաններն ու լոզունգները ստուգվում են կոնկրետ գործերով և ձեռք բերված արդյունքներով: Այս տեսակետից Կենտկոմի մարտյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում գյուղատնտեսական արտադրության զարգացման արդյունքները համոզիչ կերպով վկայում են ՍՄԿԿ ագրարային քաղաքականության ճշմարտության և կենսական վիթխարի ուժի մասին:

Մշակված քաղաքական, տնտեսական և կազմակերպական միջոցառումների կենսագործման համար կուսակցության ծավալած արդյունավետ գործունեության, բանվոր դասակարգի ջանքերի, կոլտնտեսականների, սովխոզների աշխատողների և մասնագետների անձնուրաց աշխատանքի շնորհիվ գյուղատնտեսության մեջ տեղի ունեցան քանակական ու որակական կարևոր տեղաշարժեր, այն հասավ ավելի բարձր աստիճանի, նրա զարգացման մեջ սկսվեց արմատական բեկում: Դա, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թ. դեկտեմբերյան պլենումում, կուսակցության ու նրա Կենտրոնական կոմիտեի վերջին տարիների գործունեության ամենախոշոր, ամենանշանակալի տնտեսական ու քաղաքական արդյունքներից մեկն է:

Այդ բեկման էությունն ամենից առաջ այն է, որ արագացել են գյուղատնտեսության համախառն արտադրանքի արտադրության աճման տեմպերը, հաղթահարվել է նրա ետ մնալը: Եթե 1961—1965 թթ. արտադրանքի աճը տարեկան միջին հաշվով կազմում էր 2,3 տոկոս, ապա ութերորդ հնգամյակում կազմեց 3,9 տոկոս: 1974 թ. բնակչության մեկ շնչի հաշվով արտադրվել է 23 տոկոսով ավելի շատ գյուղատնտեսական արտադրանք, քան 1964 թվականին:

Անհրաժեշտ է հատկապես շեշտել, որ գյուղատնտեսության արտադրանքի արտադրության ավելացումն այժմ ձեռք է բերվում գլխավորապես ինտենսի-

վացման գործոնների, դաշտերի բերքատվության և անասունների մթերատվության անշեղ աճի հաշվին։

Իններորդ հնգամյակի չորս տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին արտադրությունը Կենտկոմի մարտյան պլենումին նախորդած հնգամյակի համեմատությամբ աճել է 37 տոկոսով, թեև ցանքատարածությունները գործնականորեն չեն փոխվել։ Այժմ մեր երկիրը յուրաքանչյուր հեկտարից համապատասխանաբար շատ է ստանում — հացահատիկ՝ 5,4 ցենտներով, բամբակի հումք՝ 6,9, շաքարի ճակնդեղ՝ 60, կարտոֆիլ՝ 19 ցենտներով։ Կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում և սովխոզներում 1974 թ., 1964 թվականի համեմատությամբ, ավելացել է 704 կիլոգրամով, պետությանը վաճառվող խոշոր եղջերավոր անասունների մեկ գլխի միջին կենդանի քաշը՝ 107 կիլոգրամով, հավերի ձվատվությունը՝ 76 հատով։ Այդ ցուցանիշները վկայում են, որ գյուղատնտեսությունը վստահորեն շարժվում է առաջ, և սովետական մարդիկ սկսում են ավելի ու ավելի շատ քաղել կուսակցության մշակած և հետևողականորեն կենսագործվող կուրսի պտուղները։

Ինտենսիվացումն ուժեղացնելու հիման վրա գյուղատնտեսությունը ձեռք է բերում ավելի ու ավելի կայուն և դինամիկ բնույթ, աստիճանաբար նվազում է նրա կախումը բնության անբարենպաստ գործոնների ազդեցությունից։ Նույնիսկ 1972 թ., երբ սաստիկ երաշտն ընդգրկել էր բոլոր ցանքսերի գրեթե կեսը, երկիրն ստացավ ութերորդ հնգամյակի տարեկան միջին մակարդակից ավելի շատ հացահատիկի բերք և համախառն արտադրանք։ Հողագործի աշխատանքի տեխնիկական զինվածության աճին և արտադրության կուլտուրայի բարձրացմանը զուգընթաց գնալով ավելի շատ հնարավորություններ են ստեղծվում ազդելու գյուղատնտեսության պրոցեսների կայունության վրա, հասնելու նշված նպատակներին։

Անշեղորեն բարձրանում է գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը։ Աշխատանքի արտադրողականությունը հանրային գյուղատնտեսության մեջ 1974 թ. 1964 թվականի համեմատությամբ, բարձրացել է 55 տոկոսով։ Կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի արտադրողականության աճի տարեկան միջին տեմպերը վերջին հինգ տարիներին մեկ և կես անգամ ավելի բարձր են, քան յոթերորդ հնգամյակում։ Գյուղատնտեսության արտադրանքի ամբողջ աճը ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Անցած տասը տարում Սովետական Միությունն ունեցել է աշխարհում առավել բարձր տարեկան բացարձակ աճ։ Դա վկայում է, որ սոցիալիզմի առավելությունների հետ գիտատեխնիկական առաջընթացի օրգանական միացումը հսկայական հնարավորություն է ստեղծում գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման համար։

Մեր կուսակցության ագրարային քաղաքականության հեռատեսությունը, նրա ստրատեգիական գծի արդյունավետությունը գյուղատնտեսության մեջ վառ կերպով դրսևորվեցին հացահատիկի արտադրության զարգացման գործում։ Այդ քաղաքականության հիանալի պտուղները երկիրն սկսեց զգալ արդեն ութերորդ հնգամյակում, բայց դրանք առանձնապես ծանրակշիռ դարձան վերջին ժամանակներս։ 1971—1974 թվականներին հացահատիկի տարեկան միջին արտադրությունը երկրում կազմեց 192 միլիոն տոննա։ Դա 62 միլիոն տոննայով ավելի է, քան տարեկան միջին հաշվով արտադրվում էր յոթերորդ հնգամյակում, և 24 միլիոն տոննայով ավելի շատ՝ ութերորդ հնգամյակի համեմատությամբ։ Հացահատիկային տնտեսության զարգացման միջոցառումների արդյունավետությունն է՛լ ավելի լրիվ բացահայտվեց 1973 և 1974 թվականներին, երբ երկիրն ստացավ ամենաբարձր բերքը։ Եվ դա միանգամայն օրինաչափ է։ Հացահատիկի արտադրության աճը վերջին տասնամյակում գյուղատնտեսության մեջ ձեռք բերված առավել խոշոր նվաճումներից է։ Որակական տեղաշարժ է կատարվել հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում։ Դրանց միջին բերքատվությունը մեկ հեկտարից 1961—1965 թվականների 10,2 ցենտներից ընթացիկ հնգամյակի տարիներին բարձրացավ մինչև 15,6 ցենտների։



Անցած ժամանակաշրջանում խոշոր միջոցառումներ են իրականացվել երկրը հայրենական արտադրության բրնձով ապահովելու պրոբլեմի լուծման համար։ Այդ կուլտուրայի ցանքատարածությունները 1964 թ. համեմատությամբ ընդարձակվել են ավելի քան 300 հազար հեկտարով կամ 2,6 անգամ, իսկ բրնձի արտադրությունն ավելացել է 4 անգամ և 1974 թվականին հասել 1,9 միլիոն տոննայի։ Սա Կուբանի, Ստորին Պովոլժիեի, ինչպես նաև Ուկրաինայի, Ղազախստանի և Ուզբեկստանի բրնձագործների ու մելիորատորների մեծ հաջողությունն է։

Կուսակցությունն ու պետությունը գտնում են, որ հացահատիկի արտադրությունը, որպես ամբողջ գյուղատնտեսության առաջատար, վճռական ճյուղ, պետք է այսուհետ ևս զարգանա առաջանցող տեմպերով։ Այդ արմատական պրոբլեմի լուծումն անհրաժեշտ է մշտապես պահել կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների, գյուղի բոլոր աշխատավորների ուշադրության կենտրոնում։

Մեծ վերելք է ապրում մեր բամբակագործությունը։ 1974 թվականին երկիրը գերազանցեց հնգամյա պլանի առաջադրանքը և հավաքեց 8,4 միլիոն տոննա բամբակի հումք, որը 1,6 անգամ գերազանցում է 1964 թվականի մակարդակը։ Բամբակենու բերքատվությունը մեկ հեկտարից այդ ժամանակամիջոցում 21,5 ցենտներից բարձրացել է մինչև 29,2 ցենտների։ Սովետական ժողովուրդը բարձր է գնահատում Ուզբեկստանի, Թուրքմենիայի, Տաջիկստանի, Ադրբեջանի, Ղազախստանի, Կիրգիզիայի բամբակագործների աշխատանքը։ Այժմ բոլոր անհրաժեշտ պայմաններն ստեղծվել են բամբակագործության կուլտուրան տարեցտարի բարձրացնելու և հումքի այդ կարևորագույն տեսակի արտադրությունն ավելացնելու համար։

Անցած ժամանակաշրջանում դրական արդյունքներ են ձեռք բերվել նաև արևածաղկի, շաքարի ճակնդեղի և տեխնիկական այլ կուլտուրաների, ինչպես նաև կարտոֆիլի ու բանջարեղենի, մրգերի, խաղողի ու թեյի արտադրության ասպարեզում։

Մեր կուսակցությունը բոլոր այդ տարիներին չթուլացող ուշադրություն էր նվիրում անասնապահության զարգացմանը, անասունների և թռչունների մթերատվության ու գլխաքանակի ավելացմանը, առավել թանկարժեք սննդամթերքների արտադրության աճին։ Գյուղատնտեսության այս ճյուղը, ինչպես նշվեց Կենտկոմի մարտյան պլենումում, ամենից ավելի շատ էր ետ մնում, և դա բացատրվում էր գլխավորապես այն բանով, որ անասնապահությունը շատ կոլտնտեսություններում և սովխոզներում եղել է վնասաբեր։ Նկատի ունենալով ստեղծված դրությունը, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ կառավարությունը ձեռնարկեցին մի շարք ներգործուն միջոցներ, որպեսզի անասնաբուծական մթերքների արտադրությունը դարձնեն շահութաբեր, հասնեն դրա զգալի ավելացման։

Անասնապահության նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, հացահատիկի և կերային կուլտուրաների արտադրության աճը երկրում, ֆերմաների աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումն անհրաժեշտ պայմաններ ստեղծեցին այդ ճյուղի ավելի արագ զարգացման համար։ Տասը տարում զգալիորեն աճել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Մսի արտադրությունը երկրում ավելացել է 1,7 անգամ, կաթինը՝ 1,5 և ձվինը՝ 2 անգամ։ Աճել են նաև անասնաբուծական մթերքների պետական գնումները։

Այդ բանը հնարավորություն տվեց բարելավելու բնակչության սննդի ստրուկտուրան, ավելի լրիվ ապահովել մեր երկրի աշխատավորների պահանջմունքները։ Բնակչության մեկ շնչի հաշվով կաթի և կաթնամթերքների սպառումը 1964 թ. 238 կիլոգրամից 1974 թ. հասավ մինչև 312 կիլոգրամի, մսինը՝ 38-ից մինչև 55 կիլոգրամի, ձվինը՝ 113-ից մինչև 205 հատի։ Նշելով անասնապահության մեջ ձեռք բերված արդյունքները, հարկավոր է, սակայն, ասել, որ այդ ճյուղի զարգացման արդի մակարդակը դեռ անբավարար է։ Որոշ մթերքների նկատմամբ պահանջմունքները դեռևս լրիվ չեն բավարարվում։

Ներկայումս անասնապահության մեջ ստեղծվել են անհրաժեշտ պայմաններ, որպեսզի այդ ճյուղը հետագայում զարգանա ավելի արագացած տեմպերով։ Այստեղ գնալով ավելի լայնորեն են կիրառվում արտադրության արդյու-

նաբերական մեթոդները, արագանում են մասնագիտացման ու համակենտրոնացման պրոցեսները։ Միջտնտեսային կոոպերացման հիման վրա ստեղծվում են անասնապահական խոշոր ձեռնարկություններ և միավորումներ։ Անասնապահությունը թևակոխում է իր զարգացման նոր, ինդուստրիալ հիմքին անցնելու փուլը։

Անասնապահական արտադրանքի արտադրության աճը ապահովելու և նրա ինքնարժեքն իջեցնելու նպատակով միջոցառումներ են իրականացվում մսատու տավարաբուծության, կաթնատու ինտենսիվ անասնապահության, խոզաբուծության և թռչնաբուծության ավելի արագ զարգացման համար։ Մեծ աշխատանք է տարվում ոչխարների ու այծերի գլխաքանակն ավելացնելու և մթերատվությունը բարձրացնելու համար հատկապես Ղազախստանում, Միջին Ասիայի հանրապետություններում, Հյուսիսային Կովկասում և Պովոլժիեում։

Անասնապահության զարգացման միջոցառումների համակարգում առաջին պլան են մղվում կերի բազայի ամրապնդումը, ժամանակակից տեխնոլոգիայով կերի արտադրությունը, կերի սպիտակուցի պրոբլեմի լուծումը։ Վերջին տարիներին երկրում որոշ չափով բարելավվել է կերի արտադրության գործը։ Կերի կառուցվածքում բարձրացել է նոր, ավելի արդյունավետ տեսակների՝ սենաժի, խոտալյուրի, հատիկի, բրիկետների և այլ լիարժեք կերերի տեսակարար կշիռը։ Ստեղծվում է կերի հզոր ինդուստրիա, որը համապատասխանում է անասնապահության ինտենսիվ վարման պահանջներին։ Դրա հետ մեկտեղ դեռևս անելիքներ շատ կան կերի բազայի հետագա ամրապնդման ասպարեզում։ Անհրաժեշտ է բարձրացնել բոլոր կերային կուլտուրաների բերքատվությունը, բարելավել մարգագետինների ու արոտավայրերի օգտագործումը, ավելացնել ֆուրաժային հացահատիկի արտադրությունը։

Ըստ արժանվույն գնահատելով գյուղատնտեսական արտադրության զարգացման հաջողությունները, ՍՄԿԿ Կենտկոմը միաժամանակ մեր կադրերին նախազգուշացնում է ինքնահանգստացումից։ Կուսակցությունը պարզորոշ տեսնում է թերությունները ու չլուծված պրոբլեմները, անհրաժեշտ միջոցներ է ձեռնարկում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, դրանց նկատմամբ երկրի պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու համար։ Ներկայումս, ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը Մոլդավական ՍՍՀ կազմավորման և Մոլդավիայի կոմկուսակցության ստեղծման 50-ամյակին նվիրված ճառում, կուսակցության քաղաքականության ընդհանուր ուղղություններում մեր երկրի տնտեսական աճի քանակական գործոնների հետ միասին գնալով ավելի շատ են առաջին պլան մղվում որակական գործոնները։ Արտադրության որակի և արդյունավետության բարձրացման, կապիտալ ներդրումների յուրաքանչյուր ռուբլու, նյութական ու աշխատանքային բոլոր ռեսուրսների խնայողի օգտագործման հարցերն ամենաանմիջական առնչություն ունեն գյուղատնտեսության, յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի գործունեության հետ։

Կենտկոմի մարտյան պլենումից հետո անցած տասը տարվա կարևոր արդյունքներից են խոշոր փոփոխությունները գյուղի սոցիալական զարգացման գործում։

Այդ ժամանակամիջոցում զգալիորեն բարձրացել է գյուղի աշխատավորների կենսամակարդակը։ Մասնավորապես, մեծ նշանակություն ունեցավ կոլտնտեսականների աշխատանքի ամսական երաշխավորված վարձատրությունը, որը սահմանվել էր 1966 թվականին՝ ելնելով սովխոզների աշխատողների տարիֆային դրույքներից։ Երաշխավորված վարձատրության կիրառումը բարերար ազդեցություն ունեցավ աշխատանքի արտադրողականության բարձրացման և կոլտնտեսականների վաստակի վրա։ Աշխատանքի ամսական միջին վարձատրությունը կոլտնտեսություններում վերջին տասը տարում աճել է 2 անգամ։ Դրա շնորհիվ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունն սկսեց ավելի ու ավելի մոտենալ սովխոզների աշխատողների աշխատավարձի մակարդակին, որը, իր հերթին, վերջին տասը տարում բարձրացել է 1,8 անգամ։ Մեծացել է այն վճարումների ու արտոնությունների չափը, որ գյուղի աշխատավորներն ստանում են սպառման հանրային ֆոնդերից։

Բարելավվել են կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովումն ու



սոցիալական ապահովագրությունը։ Ընդսմին, նրանց կենսաթոշակների չափը վերջին տարիներին բարձրացել է գրեթե երկու անգամ։ Կոլտնտեսությունների անդամների վրա տարածվել է բանվորների ու ծառայողների համար սահմանված կենսաթոշակների բոլոր տեսակների հաշվարկման կարգը։

Գյուղի աշխատավորների բարեկեցության անշեղ բարձրացման ու նրանց հոգևոր պահանջմունքների զարգացման մասին է վկայում ոչ-պարենային ապրանքների և երկարատև օգտագործման առարկաների՝ հեռուստացույցների, ռադիոընդունիչների, դաշնամուրների, սառնարանների, մոտոցիկլետների, ավտոմոբիլների սպառման ավելի բարձր աճը։ Գյուղի աշխատավորները գնալով ավելի շատ են օգտվում կենցաղային սպասարկման զանազան ծառայություններից։ Այդ ծառայությունն անշեղորեն ընդլայնվում է, և այժմ գյուղական վայրերում գործում է կենցաղային սպասարկման ավելի քան 110 հազար ձեռնարկություն։

Մի խոսքով, տեղի է ունենում գյուղական և քաղաքային բնակչության կենցաղային սպասարկման մակարդակի աստիճանական մերձեցում։ Այս ասպարեզում, իհարկե, դեռևս անելիքները շատ-շատ են, և պետք է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր սովխոզում և կոլտնտեսությունում մարդիկ կարողանան անհրաժեշտ ծառայություններն ստանալ տեղում։

Գյուղում աճում է բոլոր տեսակի կոմունալ հարմարություններ ունեցող բարեկարգ բնակելի տների ու քաղաքատիպ ավանների քանակը։ Վերջին տասը տարում գյուղական վայրերում շահագործման են հանձնվել 353 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Այլ խոսքով, յուրաքանչյուր երրորդ ընտանիք տոնել է բնակարանամուտ, սկսել ապրել կենցաղային ավելի լավ պայմաններում։ Եվ, այնուամենայնիվ, այն, ինչ արվել է, դեռևս չի համապատասխանում աճած հնարավորություններին և պահանջմունքներին։ Շատ կարևոր է ավելի լրիվ ու արդյունավետ օգտագործել այդ նպատակների համար հատկացվող միջոցները, բարձրացնել գյուղական շինարարության մակարդակը, արագացնել բնակարանների և կուլտուր-կենցաղային օբյեկտների գործարկումը։ Այս ասպարեզում, ինչպես փորձն է ցույց տալիս, մեծ դեր կարող են խաղալ արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման պլանները։

Այդ տարիներին շատ բան է արվել նաև գյուղի աշխատավորների կուլտուրական պահանջմունքները բավարարելու համար։ Գյուղում աշխատողների գրեթե երեք հինգերորդն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն։ Ներկայումս գյուղերում կա 94 հազար մասսայական գրադարան, որոնք ունեն վիթխարի գրքային ֆոնդ։ Միջին հաշվով յուրաքանչյուր գյուղական ընտանիք ստանում է 4-ական օրինակ թերթ ու ամսագիր։ Վերջին տարիներին գյուղական վայրերում ավելի բարձր տեմպերով է ընթանում կինոթատրոնների, ակումբների, մշակույթի տների շինարարությունը, զարգանում է ռադիոյի ու հեռուստատեսության ցանցը։ Սակայն գյուղի աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու գործում դեռ հսկայական անելիքներ կան։

Մեծ փոփոխություններ են տեղի ունենում գյուղական բնակչության սոցիալական կառուցվածքում, գյուղատնտեսական աշխատանքի բնույթի ու բովանդակության մեջ։ Գյուղատնտեսության մեջ մեծանում է ինդուստրիալ պրոֆիլի աշխատողների բաժինը. նրանցից շատերն իրենց մակարդակով և վարպետությամբ չեն տարբերվում արդյունաբերության բարձր որակավորում ունեցող աշխատողներից, այսինքն՝ հետևողականորեն իրականացվում է քաղաքի և գյուղի մերձեցումը սոցիալ-տնտեսական կյանքի բոլոր ոլորտներում։

Նշելով ձեռք բերված հաջողությունները, մենք պետք է շարունակ հիշենք, որ գյուղատնտեսության մեջ դեռևս շատ խոշոր պրոբլեմներ լուծման են սպասում։ Այդ ճյուղը, ինչպես ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թ. դեկտեմբերյան պլենումում արտասանած իր ճառում, այսուհետ ևս պահանջում է կուսակցության և պետության, բոլոր կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ամենօրյա սևեռուն ուշադրությունը։ Կուսակցության առաջադրած նպատակն է՝ գյուղատնտեսական արտադրությունը բարձրացնել մի

այնպիսի մակարդակի, որը համապատասխանի ժամանակակից գիտության ու տեխնիկայի հնարավորություններին և կոմունիստական շինարարության պահանջներին:

Կուսակցության ներկայիս ագրարային քաղաքականությունը, որի հիմնական ուղղությունները որոշվել են ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումում, բռնել է ժամանակի քննությունը: Կյանքը ցույց տվեց, որ այդ պատմական պլենումում մշակված քաղաքական կուրսը լիովին համապատասխանում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական ամբողջ ժողովրդի շահերին: Այդ պլենումն է՛լ ավելի բարձրացրեց մեր կուսակցության հեղինակությունը, է՛լ ավելի ամրապնդեց ՍՍՀ Միության հզորությունը:

Էկոնոմիկայի ղեկավարման գործում կուսակցությունն այսուհետև ևս հետևելու է լենինյան այդ կուրսին, ստեղծագործաբար զարգացնելու է այն՝ հաշվի առնելով մեր երկրում և սոցիալիստական համագործակցության երկրներում կուտակված փորձը, նպատակ ունենալով հաջողությամբ կատարել մեր բոլոր պլանները, ապահովել երկրի վերընթաց շարժումը կոմունիզմի ուղիով:

«Коммунист», № 3, 1975.

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՈՒԺԻ ԵՎ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՍՏՈՒԳԱՏԵՍԸ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՈՒՄ ավարտվեց կուսակցական փաստաթղթերի փոխանակումը: Այն կազմակերպական-քաղաքական կարևոր միջոցառում էր, որն անցկացվեց կուսակցական շինարարության հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. մայիսյան պլենումի որոշումներին խիստ համապատասխան: Փոխանակումը ցուցադրեց կոմունիստների անսահման նվիրվածությունը լենինիզմի իդեալներին, կուսակցության անխախտ միասնությունն ու միաձույլ համախմբվածությունը նրա Կենտրոնական կոմիտեի շուրջը:

Կոմունիստները,— ասված է «Կուսակցական փաստաթղթերի փոխանակման արդյունքների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— օրինական հպարտության զգացումով ընկալեցին նոր նմուշի կուսակցական տոմսի հանձնումն իրենց: Նոր տոմսի վրա դրոշմված են կուսակցության և սովետական պետության հիմնադիր ու առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի պատկերն ու նրա «Կուսակցությունը մեր դարաշրջանի միտքն է, պատիվն ու խիղճը» ոգեշունչ խոսքերը: Կուսակցական փաստաթղթերի փոխանակումն է՛լ ավելի է բարձրացնում ՍՄԿԿ անդամի կոչումն ու դերը, համախմբում ու ցեմենտում կուսակցության շարքերը:

ՆԵՐԿԱՅՈՒՄՍ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ կոլեկտիվներում ամենուրեք կազմակերպչական ու քաղաքական ակտիվ գործունեություն է ծավալվել՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թ. դեկտեմբերյան պլենումի որոշումները կենսագործելու, կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումում և համամիութենական սոցիալիստական մրցության վերաբերյալ որոշումներում առաջադրված խնդիրները լուծելու համար: Մասսայական բնույթ է ստացել հանդիպական պլանների և սոցիալիստական պարտավորությունների ընդունումը կոլեկտիվների կողմից: Այդ աշխատանքում հույժ կարևորվում են Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի 30-ամյակի տոնակատարության նախապատրաստությունը, մարդկանց հայրենասիրական ձգտումը՝ արտադրական նոր նվաճումներով նշանավորելու մեծ հաղթանակի հոբելյանը:

Կոմունիստների, բոլոր աշխատավորների ակտիվության ու նախաձեռնության զարգացմանը մեծապես խթանեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումը: Հանրապետության կուսկազմակերպությունները, կոմունիստներն այժմ գլխավորում են գործնական աշխատանքը՝ եղած թերություններն արմատապես վերացնելու, պլենումի առաջադրած խնդիրներն անպայմանորեն կատարելու համար:

ԲՆՈՒԹԱԳՐԵԼՈՎ ԱՅՆ ԻՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ, որում սկսվեց ու ընթացավ տոմսերի փոխանակումը հանրապետության կուսկազմակերպություններում, անհրաժեշտ է, ամենից առաջ, նշել այն իրավիճակը, որ առաջացել էր հանրապետությունում մի շարք բացասական երևույթների ու փաստերի լայն տարածման հետևանքով:

Կուսակցական և պետական կարգապահության ցածր մակարդակը, անբավարար պահանջկոտությունը կադրերի և, ամենից առաջ, ղեկավար կադրերի նկատմամբ, հանձնարարված գործի համար պատշաճ պատասխանատվության բացակայությունը, ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսակցական վերահսկողության թուլացումը, մի շարք ղեկավար աշխատողների կողմից իրենց գործողությունների բարոյա-քաղաքական հետևանքների թերըմբռնումը, իսկ մի շարք դեպքերում՝ նաև բացահայտ անտեսումը, անպատժելիության իրադրությունը, որի հետևանքով կոպիտ կերպով խախտվում էին կուսակցական կյանքի նորմերը, բնորոշ էին փոխանակման սկզբին հանրապետությունում ստեղծված իրավիճակին: ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումն անաչառ սկզբունքայնությամբ տվեց այդ իրավիճակի գնահատականը:

Այն մեծ օգնությունն ու համակողմանի աջակցությունը, որ ՍՄԿԿ Կենտկոմը ժամանակին ցույց տվեց Հայաստանի կուսկազմակերպությանը, հնարավորություն ընձեռեցին, չնայած իրադրության ամբողջ բարդությանը, կազմակերպված սկսել կուսփաստաթղթերի փոխանակումը և լուծել ՍՄԿԿ Կենտկոմի 1972 թ. մայիսյան պլենումի առաջադրած խնդիրները:

1975 թ. հունվարի 1-ի դրությամբ մեր հանրապետությունում կուսակցական նոր փաստաթղթեր են ստացել ՍՄԿԿ 129.605 անդամներ կամ փոխանակման ենթակա տոմս ունեցող կոմունիստների թվի 99,99 տոկոսը: ՍՄԿԿ 39 անդամներ, որոնք չեն փոխանակել իրենց կուսակցական փաստաթղթերը կա՛մ ծանր հիվանդ են, կա՛մ գտնվում են արտասահմանյան գործուղման մեջ: Նրանց կուսփաստաթղթերը կփոխանակվեն արտասահմանից վերադառնալուց կամ ապաքինվելուց հետո:

Կուսփաստաթղթերի փոխանակումը հաջող անցկացնելու գործին մեծապես նպաստեց կուսակցական կոմիտեների, քաղօրգանների, բոլոր կուսկազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանքը: Նրանք մշակել էին և իրականացրին մի ամբողջ շարք կազմակերպական-քաղաքական միջոցառումներ, ժամանակին լուծեցին ծագած հարցերը: Կուսկազմակերպություններին մեծապես օգնեց Հայաստանի ԿԿ Կենտկոմի պլենումը, որը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումը և կուսակցական փաստաթղթերի փոխանակման վերաբերյալ բոլոր կուսկազմակերպություններին, կուսակցության անդամներին ու անդամության թեկնածուներին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ուղղած նամակը: Գործնական աշխատանքի վերլուծությունն ու այդ աշխատանքի կատարելագործման կոնկրետ հանձնարարականները տրվեցին նաև ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի համապատասխան որոշումներում:

Կուսակցական փաստաթղթերի փոխանակման գլխավոր արդյունքն այն է, ասված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, որ մեր կուսակցությունն է՛լ ավելի ամրապնդվեց, ուժեղացրեց կապը մասսաների հետ, բարձրացավ նրա ղեկավար և ուղղություն տվող դերը սովետական հասարակության կյանքում:

Կուսակցության դերի աճն զգալի չափով պայմանավորված է նաև սկզբնական կուսկազմակերպությունների արդյունավետ գործունեությամբ, որովհետև նրանց ցանցը իրականում ընդգրկում է մեր տնտեսական, կուլտուրական, պետական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառները: Եթե կուսակցությունը հասարակության ղեկավար կորիզն է, ապա սկզբնական կազմակերպությունը աշխատանքային կոլեկտիվի՝ հասարակության այդ հիմնական բջջի, ղեկավար կորիզն է: Իսկ կուսկազմակերպություն այժմ կա գրեթե յուրաքանչյուր կոլեկտիվում:

ԿՈՒՍՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՓՈԽԱՆԱԿՈՒՄԸ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ յուրատեսակ ստուգատես էր, խստապահանջ ստուգում այն բանի, թե յուրաքանչյուր կազմակերպություն, յուրաքանչյուր կոմունիստ գործնականորեն ինչպես է իրականացնում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները: Այսօր բոլոր հիմքերը կան ասելու, որ փոխանակման նախապատրաստումն ու անցկացումը նպաստեցին կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը: Նրանց



հարաճուն մոբիլիզացնող ուժը դրսևորվում է արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության մեջ իններորդ հնգամյակի առաջադրանքների կատարման և գերակատարման համար մղվող պայքարում: Որոշ չափով ուժեղացել է կուսկազմակերպությունների ներգործությունը էկոնոմիկայի զարգացման այնպիսի արմատական հարցերի լուծման վրա, ինչպիսիք են հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, ամբողջ աշխատանքի որակի բարելավումը:

Այս ասպարեզում ծավալված աշխատանքին մեծապես խթանեց Հայաստանի ԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը: Այժմ սկզբնական կուսկազմակերպությունների դերի ու պատասխանատվության հետագա բարձրացման ամբողջ միտումը կարելի է ավելի պարզորոշ տեսնել կուսակցության քաղկոմների և շրջկոմների ամենօրյա պրակտիկ գործունեության մեջ: Տվյալ դեպքում մենք մասնավորապես նկատի ունենք այն աշխատանքը, որն սկսվել է կուսկազմակերպությունների կառուցվածքը կատարելագործելու, արտադրամասային կուսկազմակերպությունների և կուսխմբերի դերն ու նշանակությունը բարձրացնելու, ներկուսակցական ինֆորմացիան, սկզբնական կազմակերպությունների բյուրոների անդամների և քարտուղարների որակական կազմը բարելավելու համար: Վերջիններիս մեջ զգալիորեն ավելացել է առաջավոր բանվորների, կոլտնտեսականների, գյուղատնտեսության մասնագետների և ինժեներատեխնիկական աշխատողների թիվը:

Երեք տարում ստեղծվել են 198 սկզբնական, 369 արտադրամասային նոր կուսկազմակերպություններ և 1.115 կուսակցական խմբեր: Դրա շնորհիվ որոշ չափով ամրապնդվել է կուսակցական մարմինների կապը կուսակցության ստորին օղակների հետ: Դրա հետ մեկտեղ, ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը, մի շարք կուսկազմակերպությունների մասսայական-քաղաքական աշխատանքը դեռևս կտրված է տնտեսական և կուլտուրական շինարարության պրակտիկ խնդիրներից, նպատակամղված չէ ուժերի մոբիլիզացմանը, աշխատավորների արտադրական ու ստեղծագործական ակտիվության զարգացմանը: Այդ պատճառով պլենումում գլխավոր շեշտը դրվեց աշխատավորների կոլեկտիվների քաղաքական հիմնական կորիզի՝ սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը բարելավելու անհրաժեշտության վրա:

Որոշ սկզբնական կուսկազմակերպություններ դեռևս խորամուխ չեն լինում արտադրության հարցերի մեջ, երբեմն ոչ բավարար մակարդակով են վերլուծում գործերի վիճակն արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ: Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումում, կազմակերպական և քաղաքական միանգամայն անբավարար աշխատանքի հետևանքով դեռևս չի հաջողվել շոշափելի հաջողության հասնել տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում իսկական կուսակցական մոտեցում արմատավորելու, աշխատանքային և պլանային ամենախիստ կարգապահություն հաստատելու, կուսակցության և կառավարության դիրեկտիվները կատարելու, տնտեսական ու դաստիարակչական աշխատանքի նկատմամբ արդյունավետ վերահսկողություն հաստատելու գործում:

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները, իրենց հերթին, անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում կուսակցական-կազմակերպական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման, ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման, կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման նկատմամբ վերահսկողություն սահմանելու համար: Կուսակցության առանձին քաղկոմներ և շրջկոմներ անտեսում են այն հանգամանքը, որ սկզբնական կուսկազմակերպությունների նշանակալի մասն իր կազմով սակավանդամ է և, բնականաբար, մեծ օգնության և ուշադրության կարիք ունի: Մինչև 15 կոմունիստ ունեցող կուսկազմակերպությունների քանակը հանրապետությունում 2.259 է, այդ թվում ուսումնական հաստատություններում՝ 743, արդյունաբերական ձեռնարկություններում՝ 216, շինարարական և տրանսպորտային կազմակերպություններում՝ 233, առևտրի և հասարակական սննդի ձեռնարկություններում՝ 108 և այլն: Քաղկոմներն ու շրջ-

կոմներն ամենից թույլ կապված են հենց այդ կազմակերպությունների հետ, կուսակցական ղեկավար աշխատողներն այնտեղ լինում են դեպքից դեպք, և պատահական չէ, որ սակավանդամ կուսկազմակերպությունների մեծ մասը թույլ է աշխատում, պատշաճ ազդեցություն չի ունենում արտադրական կոլեկտիվների կյանքի ու գործունեության վրա։

Հանրապետության կուսկազմակերպությունները փաստաթղթերի փոխանակման ընթացքում որոշ չափով աշխուժացրին անհատական աշխատանքը կուսակցության անդամների և թեկնածուների հետ։ Այդ գործում արդյունավետ միջոց էին անհատական զրույցները։

Կուսկազմակերպությունների քարտուղարները, կուսբյուրոների և կուսկոմիտեների անդամները զրույցներ անցկացնելիս հիմնականում ձգտում էին յուրաքանչյուր կոնկրետ դեպքում պարզել, թե ինչու այս կամ այն կոմունիստն աշխատանքում կամ վարքագծում ունի թերություններ, թե դրանցից որն է կուսկազմակերպության անբավարար աշխատանքի հետևանք։ Կուսակցության որոշ անդամների հետ հարկ եղավ զրուցել երկրորդ անգամ՝ պարզելու, թե նրանք ինչպես են հաշվի առնում իրենց հասցեին արված քննադատական դիտողությունները։

Լայնորեն տարածվեց նաև կուսակցության անդամների ու թեկնածուների հետ տարվող աշխատանքի այնպիսի ձև, ինչպիսին է կուսբյուրոների և կուսկոմիտեների նիստերում, կուսժողովներում նրանց հաղորդումը՝ կանոնադրական պարտականությունների կատարման, արտադրական գործունեության, հասարակական կյանքին ցույց տված մասնակցության մասին։ Ինչպես հայտնի է, այդ ձևը կիրառվում էր և առաջներում, բայց հատկապես փոխանակման ընթացքում այն ամենուրեք տվեց դրական արդյունք։ Հետևաբար, մենք պետք է այն լայնորեն օգտագործենք նաև այսօր։

Փոխանակման ընթացքում կուսժողովներում, կուսակցական բյուրոների և կոմիտեների նիստերում լսվել է 21.090 կոմունիստի հաղորդում։ Զգալիորեն ավելացել է մշտական կամ ժամանակավոր հանձնարարություններ ունեցող կուսակցականների թիվը. փոխանակումից առաջ այն կազմում էր 43,8, իսկ այժմ՝ 70,7 տոկոս։ Քաղմասսայական աշխատանքի անցկացմանն առնչվող պարտականություններից բացի, զգալի թվով կոմունիստներ լրացուցիչ կերպով ընտրվեցին ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովների կազմում, մասնակցում են սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների գործերին։ Կուսակցական կարևոր հանձնարարություն են դաստիարակչական աշխատանքը, առաջավոր փորձի տարածումը։

Սակայն, այդ գործում տեղ են գտել նաև լուրջ վրիպումներ ու թերություններ։ Մի շարք քաղկոմներում և շրջկոմներում զրույցների նկատմամբ ցուցաբերվել է ձևական մոտեցում։ Այսպես, երբեմն հարկ էր լինում առանձին ընկերների հեռու պահել առանց որևէ անհրաժեշտության անխտիր բոլոր կոմունիստների հետ զրույցներ անցկացնելու ձգտումից։ Մյուս կողմից, կուսակցության առանձին քաղկոմների, շրջկոմների քարտուղարներ անհատական զրույցներ էին ունենում հիմնականում միայն ղեկավար կոմունիստների հետ՝ հազվադեպ հանդիպելով անմիջականորեն նյութական արտադրության ոլորտում աշխատող կոմունիստներին։ Մինչդեռ, հենց այդ զրույցները մեզ կրկին համոզեցին, որ կոմունիստների կարծիքը, լինելով հասարակական կարծիքի մի յուրատեսակ բարոմետր, պետք է լրիվ չափով հաշվի առնվի և իր կոնկրետ մարմնավորումը գտնի պրակտիկ աշխատանքում։ Բայց ոչ ամենուր է պատշաճ ուշադրություն նվիրվել զրույցների ժամանակ և ժողովներում կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների հասցեին կոմունիստների արած հիմնավոր դիտողությունների ու առաջարկությունների իրականացմանը։

ԿՈՒՍՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՓՈԽԱՆԱԿՄԱՆ ՀԵՏ ԱՌՆՉՎՈՂ աշխատանքի կարևոր արդյունքներն էին կոմունիստների փոխադարձ պահանջկոտության զգալի բարձրացումը, կուսկազմակերպություններում ամեն կարգի բացասական երևույթների նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտի ստեղծումը։ Կուսկազմակերպությունները շատ ավելի խստապահանջ են դարձել կանոնա-



դրական խախտումների նկատմամբ։ Առանձնապես հարկավոր է խոսել այն մասին, թե կոմունիստների կարգապահության ամրապնդման գործում դաստիարակչական ինչպիսի կարևոր նշանակություն ուներ կուսակցական տույժերը հանելու հետ կապված հարցերի քննարկումը։ Իհարկե, այդ աշխատանքի արդյունքն անհամեմատ ավելի զգալի կլիներ, եթե կուսակցության քաղկոմներն ու շրջկոմներն ավելի մեծ պատասխանատվություն և սկզբունքայնություն ցուցաբերեին այդ չափազանց նուրբ և լուրջ խնդրի լուծման նկատմամբ։ Մինչդեռ, մեզ մոտ, դժբախտաբար, մի շարք դեպքերում ցուցաբերվել է ձևական մոտեցում, որի հետևանքով որոշ կոմունիստների կուսակցական նոր փաստաթղթերում գրանցվել են տասը և ավելի տարիների վաղեմություն ունեցող տույժեր, մի բան, որ, իհարկե, նորմալ համարել չի կարելի։ Չէ՞ որ նրանցից շատերն իրենց ազնիվ աշխատանքով, օրինակելի վարքագծով արժանի էին ստանալու կուսակցական մաքուր տոմս։ Գործի նկատմամբ նման վերաբերմունքի մեջ մենք տեսնում ենք կամպանիոն մոտեցման դրսևորում, առանձին ընկերների ձգտում՝ որքան կարելի է շուտ «կատարել» աշխատանքը, որը ոչ մի կերպ չի նպաստում կոմունիստների գործերի ու արարքների գնահատման բարոյական չափանիշների բարձրացմանը։

Ահա թե ինչու այդ բնագավառի գործերի վիճակի վերլուծությունից հետևում է, որ հետագա աշխատանքում հիմնական շեշտը դարձյալ պետք է դնել սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը բարելավելու վրա։ Կուսակցական հասունությունը միանգամից ձեռք չի բերվում։ Իր ձևավորման պրոցեսում մարդ կարող է նաև սխալվել, շեղվել կանոնադրական պահանջներից, որի համար, իհարկե, ամենից առաջ, մեղավոր է ինքը։ Բայց կուսկազմակերպությունը ևս իրավացի չէ, երբ իրեն պատասխանատու չի զգում նրա վրիպումի ու սխալ արարքի համար։ Մենք պետք է միշտ հիշենք լենինյան այն ցուցումը, որ կուսակցության ամեն մի անդամ պատասխանատու է կուսակցության համար, իսկ կուսակցությունը՝ իր յուրաքանչյուր անդամի համար։

Փոխանակման նախապատրաստումն ու անցկացումը նպաստեցին դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի ավելի լրիվ կենսագործմանը, ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացմանը, կուսկազմակերպությունների գործունեության մեջ կուսակցական կյանքի լենինյան սկզբունքների ու նորմերի ավելի խիստ պահպանմանը, քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը։

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԲՅՈՒՐՈՆ, քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարության որոշումը «Տամբովի կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին», այդ կապակցությամբ ընդունեց համապատասխան որոշում։ Նշվեց, որ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարության որոշման մեջ բացահայտված թերությունները լրիվ վերաբերում են նաև մեր հանրապետության կուսկազմակերպությանը։ Հայաստանի կոմկուսի քաղկոմներն ու շրջկոմները դեռևս լրիվ չեն օգտագործում քննադատության և ինքնաքննադատության փորձված մեթոդը՝ հանձնարարված գործի համար կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու, արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և հանրապետության ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի զարգացման գործում եղած լուրջ թերությունները վերացնելու համար։

Քաղաքային և շրջանային մի շարք կուսկազմակերպություններ անհրաժեշտ պահանջկոտություն չեն ցուցաբերում այն կադրերի նկատմամբ, որոնք չեն ապահովում ժողովրդատնտեսական պլանների ու առաջադրանքների կատարումը, լիբերալ վերաբերմունք են դրսևորում կուսակցական և պետական կարգապահությունը խախտողների հանդեպ։

Անբավարար է զարգանում քննադատությունը ներքևից, կոմունիստների ակտիվությունը նվազում է այն բանի հետևանքով, որ կուսկոմիտեները դեռևս անբավարար են ինֆորմացիա տալիս իրենց գործունեության մասին, քիչ է

ուշադրություն նվիրվում աշխատանքային կոլեկտիվներում քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը:

Կուսակցական փաստաթղթերի փոխանակման ընթացքում կուտակված փորձը սկզբունքային մեծ նշանակություն ունի բոլոր կուսկազմակերպությունների գործունեության հետագա բարելավման համար:

Եթե փորձենք համառոտակի որոշել այն արժեքավորը, որ մեզ հաջողվեց ձեռք բերել կուսփաստաթղթերի փոխանակման ընթացքում, ապա, առաջին հերթին, հարկավոր է նշել, որ այն մեզ հնարավորություն ընձեռեց ավելի լավ իմանալ գործերի վիճակը հանրապետության կուսկազմակերպություններում, օբյեկտիվորեն ու համակողմանի գնահատել իրադրությունը նրա բոլոր օղակներում և, որ ամենագլխավորն է, պարզել այս կամ այն նեգատիվ երևույթի պատճառներն ու արմատները, որոնց վերացումը պահանջում է կուսակցական մարմինների ակտիվ միջամտությունը: Բանն այն է, որ եթե առաջներում մենք քիչ թե շատ տեղյակ էինք լինում, թե «ինչ» է տեղի ունենում, ապա այժմ, փոխանակման ընթացքում և դրանից հետո, մենք հնարավորություն ունեցանք ոչ թե պարզապես ընդլայնելու մեզ հետաքրքրող ինֆորմացիայի ծավալը, այլև որոշել երևույթների սկզբնապատճառները, ստանալ այն հարցի պատասխանը, թե «ինչու» կարող էին դրանք տեղի ունենալ:

Դրա հետ մեկտեղ, մենք հիմքեր չէինք ունենա այդքան բարձր գնահատելու փոխանակման նշանակությունն ու իմաստը մեր հանրապետության պայմաններում, եթե ձեռք բերված արդյունքներով լոկ բնութագրեինք, բացահայտեինք եղած թերությունները, պասսիվորեն արձանագրեինք փաստերը:

Հետևողականորեն ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թ. դեկտեմբերյան պլենումի որոշումներով և ելնելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումներից, հանրապետության կուսկազմակերպությունն իր խնդիրն է համարում, լրիվ չափով օգտագործելով փոխանակման ընթացքում կուտակված փորձը, այսուհետև ևս ամրապնդել կուսկազմակերպությունները կազմակերպական և գաղափարա-քաղաքական տեսակետից, ամեն կերպ զարգացնել կոմունիստների ակտիվությունը, ամրապնդել նրանց կարգապահությունը, հասնել ղեկավարման ու կառավարման իսկական կուսակցական ոճի հաստատման, կուսակցական մարմինների որոշումների փաստական կատարման նկատմամբ վերահսկողության ու ստուգման ուժեղացման:

Յուրաքանչյուր կուսկազմակերպության տեսադաշտում պետք է լինի կոմունիստների, բոլոր աշխատավորների մոբիլիզացումը՝ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների և ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թ. դեկտեմբերյան պլենումի որոշումները կենսագործելու, կուսակցության, սովետական ժողովրդին ուղղված Կենտրոնական կոմիտեի դիմումի պահանջները կատարելու համար:

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՔԱՂԿՈՄՆԵՐՆ ՈՒ ՇՐՋԿՈՄՆԵՐԸ, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է յուրաքանչյուր կոմունիստի մեջ դաստիարակեն կուսակցության քաղաքական մարտիկի հատկություններ, այդ նպատակով ավելի լրիվ օգտագործեն կուսժողովները, դրանցում քննարկեն կոմունիստներին հուզող հարցերը, պաշտպանեն գործարար, սկզբունքային առաջարկություններն ու օգտակար նախաձեռնությունները, վճռականորեն կանխեն կոմունիստների կարծիքի նկատմամբ անհարգալից վերաբերմունքի դեպքերը, կատարելագործեն կուսակցության անդամների և թեկնածուների հետ տարվող անհատական աշխատանքի ձևերը, որոնք իրենց արդարացրին կուսփաստաթղթերի փոխանակման ժամանակ:

Փոխանակումն ավարտված է, բայց գործի շահերը հրամայաբար պահանջում են շարունակել ու զարգացնել լավագույն փորձը, որը կուտակվել է այդ պրոցեսում: Այն սկզբունքային մեծ նշանակություն ունի բոլոր կուսկազմակերպությունների գործունեության բարելավման համար:

# ՌՍԴԲԿ ԵՐՐՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ՆՐԱ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Ա. Պ. ՄԿՐՏՉՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

ԿԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐ ու դեպքեր, որոնք հիշողությունից չեն ջնջվի, մոռացության չեն տրվի: Դրանք հասարակական կյանքի օվկիանում փարոսներ են, որոնք լուսավորում են մարդկության առաջընթացը: Նման իրադարձություն էր ՌՍԴԲԿ III համագումարը, որի գումարման 70-ամյակը լրանում է այս տարվա ապրիլին:

Համագումարը դարձել է պատմություն, սակայն միջազգային բանվորական շարժման համար նրա՝ գլխավորապես տակտիկայի ու ստրատեգիայի վերաբերյալ ընդունած որոշումներն ընդհանուր գծերով պահպանում են իրենց կենսական և ուղեցույց նշանակությունը նաև արդի դարաշրջանում: Եվ ոչ միայն այսքանով: ՌՍԴԲԿ III համագումարի ողջ պատմությունը, սկսած նրա գումարման համար բոլշևիկների մղած պայքարից մինչև ավարտը, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համար այսօր ուսանելի է նաև մեկ այլ՝ օպորտունիզմի և խմբակայնության դեմ ներկուսակցական պայքարի բոլշևիկյան փորձը ստեղծագործաբար ընդօրինակելու առումով:

Էկոնոմիզմի դեմ Ռուսաստանի հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի հաղթանակի պսակը հյուսվեց մեր կուսակցության II համագումարում: Ծնվեց ՌՍԴԲԿ-ն, Ռուսաստանի բանվոր դասակարգի ավանգարդը, նրա առաջավոր ջոկատը: Սակայն ՌՍԴԲԿ-ն դեռևս միաձույլ չէր: Համագումարից հետո կուսակցության ներսում կազմակերպական ու տակտիկական նպատակադրումներով միմյանց հակադիր երկու հոսանքների՝ բոլշևիկների ու մենշևիկների միջև պայքարն ավելի սրվեց: ՌՍԴԲԿ-ն ապրեց խոր ճգնաժամ: «Պառակտման գլխավոր պատճառը և միափորման գլխավոր արգելքը,— նշում է Վ. Ի. Լենինը,— մենք համարում ենք փոքրամասնության կազմալուծիչ վարմունքը, որը հրաժարվեց ենթարկվել երկրորդ համագումարի որոշումներին և պառակտումը գերադասեց երրորդ համագումար հրավիրելուց» (Երկեր, հ. 8, էջ 150):

Համագումար հրավիրելու գաղափարը Վ. Ի. Լենինի մոտ ծնվել էր ավելի վաղ՝ 1903 թ. վերջին, երբ խոր ճգնաժամը կուսակցության ներսում արդեն փաստ էր դարձել: Համագումարի հրավիրման համար բոլշևիկների պայքարն ինքնանպատակ չէր: Դա պայքար էր հեղափոխական մարքսիստական նոր տիպի կուսակցության ամրապնդման համար: Բայց «Մենշևիկները կուսակցությունը քաշում էին ետ, դեպի կազմակերպական մասնատվածությունն ու սանձարձակությունը, դեպի խմբակայնությունն ու տնայնագործությունը» (ՍՄԿԿ պատմություն, Երևան, 1971, էջ 88): Ի՞նչ անել աշխատության մեջ Վ. Ի. Լենինը գիտականորեն մշակել էր նոր տիպի կուսակցության տեսական հիմունքները, իսկ **Մի քայլ առաջ, Երկու քայլ ետ** աշխատության մեջ տվել էր նրա կազմակերպական սկզբունքները: Ստեղծվել էր, այսպիսով, մի կուռ ուսմունք՝

ղափոխությունը կատարում էր ժողովուրդը՝ բանվոր դասակարգն ու գյուղացիությունը։ 1905 թ. հունվարի 9-ի դեպքերից հետո հեղափոխությունը վերելք էր ապրում։ Պրոլետարիատը զենքով պայքարում էր ինքնակալության դեմ, ընդհարվելով ժանդարմերիայի և զորքի հետ։ Հոսում էր բանվոր դասակարգի արյունը, բայց ոչ լիբերալ բուրժուազիայի։ Գյուղացիները գրավում էին կալվածատիրական հողերը, նրանք փաստացի հեղափոխություն էին կատարում։ Այդ պայքարում հոսում էր գյուղացիության արյունը, բայց ոչ լիբերալ բուրժուազիայի։ Բուրժուազիան ինքնակալության դեմ աղերսանքներով լի պետիցիոն «կռիվ» էր մղում, ցարիզմից իր կամքն արտահայտող Սահմանադիր ժողով էր հայցում։ Պրոլետարիատը հեղափոխության մեջ օբյեկտիվորեն հանդես էր գալիս առաջամարտիկի դերում։

ՌՍԴԲԿ III ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՔՆՆԱՐԿՈՒՄ Է ժամանակավոր հեղափոխական կառավարության մասին հարցը։ Այդ առթիվ ընդունված որոշման մեջ նշվում է, որ պրոլետարիատի անմիջական և վերջնական շահերը պահանջում են կառավարման ինքնակալական ձևը փոխարինել հանրապետությամբ։ Այսպիսի հանրապետությունը կարելի է ստեղծել հաղթանակած համաժողովրդական ապստամբության օրգան ժամանակավոր հեղափոխական կառավարության միջոցով։ Այդ կառավարությունը կոչված է իրականացնել մեր կուսակցության մինիմում-ծրագիրը և հրավիրել քաղաքական ազատ ագիտացիայի պայմաններում ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիմունքներով, գաղտնի քվեարկությամբ ընտրված և իրոք ժողովրդի կամքն արտահայտող Սահմանադիր ժողով։ Ինչ խոսք, հեղափոխությունից հետո բուրժուազիան կփորձի ետ խլել ժողովրդից նրա նվաճումները։ Այդ կանխելու համար համագումարը գտնում է, որ «...թույլատրելի է մեր կուսակցության լիազորների մասնակցությունը ժամանակավոր հեղափոխական կառավարությանը, նպատակ ունենալով անողոք պայքար մղել բոլոր հակահեղափոխական փորձերի դեմ և պաշտպանել բանվոր դասակարգի ինքնուրույն շահերը» (ՍՄԿԿ-ն բանաձևերում..., մաս 1-ին, էջ 96)։

Ժամանակավոր հեղափոխական կառավարության մեջ սոցիալ-դեմոկրատիայի մասնակցության հարցում բոլշևիկների տակտիկան հետամտում էր պրոլետարիատի դասակարգային շահը՝ պրոլետարիատի դիկտատուրան, իսկ մենշևիկների տակտիկան, ըստ էության, բուրժուազիայի դասակարգային շահը՝ նրա դիկտատուրան։ Մենշևիկները բոլշևիկներին ապրիորի մեղադրում էին միլլերանիզմի մեջ։ Պարզ է, եթե հեղափոխության մեջ պրոլետարիատը չկարողանա ապահովել իր հեգեմոն դերը, իսկ սոցիալ-դեմոկրատիան՝ իր ղեկավարությունը վերջինիս նկատմամբ, ապա հեղափոխությունը կավարտվի բուրժուազիայի և ցարիզմի գործարքով, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ պոչատ սահմանադրությամբ։ Իհարկե, նման կառավարության մեջ սոցիալ-դեմոկրատիայի մասնակցությունը կլինի տիպիկ միլլերանիզմի դրսևորում։ Սակայն, նշում է Վ. Ի. Լենինը, ռուսական հեղափոխությունն ունի մեկ այլ հնարավոր ելք։ Եթե սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարությամբ պրոլետարիատն ամուր դաշինք կնքի գյուղացիության հետ, մեկուսացնելով լիբերալ բուրժուազիային, ապա հեղափոխությունը կավարտվի բանվորների ու գյուղացիների հեղափոխական դեմոկրատական դիկտատուրայի հաստատմամբ։ Այս կառավարության մեջ մասնակցելը բնավ էլ միլլերանիզմ չէ։ Այստեղ հարկ է հիշել Վ. Ի. Լենինի արած համեմատությունը։ Մենշևիկը,— նշում էր նա,— «...Միլլերանի մասնակցությունը մինիստրության մեջ Գալիֆեի հետ միասին սոցիալիստական հեղաշրջման նախօրյակի էպոխայում՝ շփոթում է Վառլենի մասնակցության հետ հեղափոխական կառավարության մեջ մանրբուրժուական դեմոկրատների կողքին, որոնք պաշտպանում էին և պաշտպանեցին հանրապետությունը» (Երկեր, հ. 8, էջ 601)։ Բոլշևիկները գտնում էին, որ ճնշումը ժամանակավոր հեղափոխական կառավարության վրա պետք է լինի և՛ ներքևից, և՛ վերևից։ Իսկ մենշևիկները գտնում էին, որ պրոլետարիատի կուսակցությունը ժամանակավոր կառավարության վրա պետք է ճնշում գործադրի միայն «ներքևից»՝ փողոցից, բայց ոչ երբեք այդ կառավարության ապարանքներից՝ «վերևից» (տե՛ս նույն տեղը, էջ 605)։ Մենշևիկյան այս տակտիկան Վ. Ի. Լենինը բնութագրում էր որպես անարխիզմ։



Բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ սոցիալ-դեմոկրատիայի տակտիկան մշակելիս՝ Վ. Ի. Լենինը օգտվում էր միջազգային բանվորական շարժման անցյալի փորձից, հաշվի առնելով Ռուսաստանի կոնկրետ պատմական պայմանները։

ՌՍԴԲԿ III ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՄԵԾ ՏԵՂ Է հատկացնում գյուղացիական հարցին։ Ընդունվում է համապատասխան որոշում գյուղացիական շարժման նկատմամբ ունենալիք վերաբերմունքի մասին։ Բանաձևում նշվում է, որ սոցիալ-դեմոկրատիան իր առջև խնդիր է դնում՝ ամենաեռանդուն կերպով աջակցել գյուղացիության այն բոլոր հեղափոխական միջոցառումներին, որոնք ընդունակ են բարելավելու նրա դրությունը՝ ընդհուպ մինչև կալվածատիրական, պետական, եկեղեցապատկան, վանքապատկան և արքունական հողերի բռնագրավումը։ Վ. Ի. Լենինը նշում է, որ հեղափոխության մեջ պրոլետարիատի բնական դաշնակիցը գյուղացիությունն է։ «Քաղաքային բանվորական շարժումը նոր դաշնակից է ձեռք բերում ի դեմս հեղափոխական գյուղացիության» (Նույն տեղը, էջ 283)։

Գյուղացիական շարժումը սոցիալ-դեմոկրատիայի առջև երկակի խնդիր է դնում—համագյուղացիական պայքարի կազմակերպում՝ ընդդեմ ինքնակալության, և չքավոր գյուղացիության պայքարի կազմակերպում՝ ընդդեմ բուրժուազիայի։

Համագումարը, քննարկելով կուսակցության պառակտված մասի վերաբերյալ հարցը, դատապարտեց մենշևիկների կազմակերպական և տակտիկական օպորտունիզմը, բոլշևիզմը որոշակիորեն սահմանազատելով մենշևիզմից։ Միաժամանակ համագումարը որոշեց թույլատրել սկզբնական կազմակերպություններում մենշևիկ կուսակցականների աշխատանքն այն պայմանով, որ նրանք ենթարկվեն կուսակցական կարգապահությանը, համագումարի որոշումներին։ Վերանայվեց կուսակցության կանոնադրությունը։ Առաջին պարագրաֆի մարտովյան ձևակերպումը վերացվեց և ընդունվեց լենինյան ձևակերպումը։

Համագումարը վերացրեց նաև կուսակցության ղեկավարման երկկենտրոն սիստեմը՝ Կենտկոմը և կենտրոնական օրգանը, ընտրելով ղեկավարման մեկ միասնական կենտրոն՝ ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեն՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։ ՌՍԴԲԿ III համագումարը հրաժարվեց «Իսկրան» ճանաչել կուսակցության օրգան։ Հանձնարարվեց Կենտկոմին ստեղծել նոր օրգան՝ «Պրոլետարի» լրագիրը, որի խմբագիրը դարձավ Վ. Ի. Լենինը։ Քննարկվեցին կազմակերպական բնույթի այլ հարցեր։ Համագումարը դուրս բերեց կուսակցությունը ճգնաժամային վիճակից, վճռական քայլ կատարեց նոր տիպի կուսակցության ամրապնդման ճանապարհին։

ՌՍԴԲԿ III համագումարը մշակեց բոլշևիկների տակտիկան և ստրատեգիան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ։ Լենինյան այն միտքը, որ հեղափոխությունը Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատիայի առջև դրեց «...այնպիսի պահանջներ..., որպիսիք դեռ ոչ մի անգամ և ոչ մի տեղ պատմությունը չի դրել բանվորական կուսակցության առջև դեմոկրատական հեղաշրջման էպոխայում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 8, էջ 570—571), վկայում է, որ բոլշևիկների տակտիկան և ստրատեգիան մշակելիս պետք է հաշվի առնվեին դարաշրջանի, և առավել ևս Ռուսաստանի կոնկրետ պատմական պայմանները։ Հեղափոխությունը Ռուսաստանում տեղի էր ունենում իմպերիալիզմի դարաշրջանում։ Ի տարբերություն եվրոպական երկրների, որտեղ բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունները կատարվեցին բուրժուազիայի արշալույսին, Ռուսաստանում այն կատարվում էր նրա մայրամուտին։ Բուրժուազիան արդեն կորցրել էր իր հեղափոխականությունը, ասպարեզը զիջել պրոլետարիատին։ Այս գլխավոր առանձնահատկությունից ելնելով, Վ. Ի. Լենինը գիտականորեն ապացուցեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում Ռուսաս-

ղափոխությունը կատարում էր ժողովուրդը՝ բանվոր դասակարգն ու գյուղացիությունը։ 1905 թ. հունվարի 9-ի դեպքերից հետո հեղափոխությունը վերելք էր ապրում։ Պրոլետարիատը զենքով պայքարում էր ինքնակալության դեմ, ընդհարվելով ժանդարմերիայի և զորքի հետ։ Հոսում էր բանվոր դասակարգի արյունը, բայց ոչ լիբերալ բուրժուազիայի։ Գյուղացիները գրավում էին կալվածատիրական հողերը, նրանք փաստացի հեղափոխություն էին կատարում։ Այդ պայքարում հոսում էր գյուղացիության արյունը, բայց ոչ լիբերալ բուրժուազիայի։ Բուրժուազիան ինքնակալության դեմ աղերսանքներով լի պետիցիոն «կռիվ» էր մղում, ցարիզմից իր կամքն արտահայտող Սահմանադիր ժողով էր հայցում։ Պրոլետարիատը հեղափոխության մեջ օբյեկտիվորեն հանդես էր գալիս առաջամարտիկի դերում։

ՌՍԴԲԿ III ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՔՆՆԱՐԿՈՒՄ է ժամանակավոր հեղափոխական կառավարության մասին հարցը։ Այդ առթիվ ընդունված որոշման մեջ նըրշվում է, որ պրոլետարիատի անմիջական և վերջնական շահերը պահանջում են կառավարման ինքնակալական ձևը փոխարինել հանրապետությամբ։ Այսպիսի հանրապետությունը կարելի է ստեղծել հաղթանակած համաժողովրդական ապստամբության օրգան ժամանակավոր հեղափոխական կառավարության միջոցով։ Այդ կառավարությունը կոչված է իրականացնել մեր կուսակցության մինիմում-ծրագիրը և հրավիրել քաղաքական ազատ ագիտացիայի պայմաններում ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիմունքներով, գաղտնի քվեարկությամբ ընտրված և իրոք ժողովրդի կամքն արտահայտող Սահմանադիր ժողով։ Ինչ խոսք, հեղափոխությունից հետո բուրժուազիան կփորձի ետ խլել ժողովրդից նրա նվաճումները։ Այդ կանխելու համար համագումարը գտնում է, որ «...թույլատրելի է մեր կուսակցության լիազորների մասնակցությունը ժամանակավոր հեղափոխական կառավարությանը, նպատակ ունենալով անողոք պայքար մղել բոլոր հակահեղափոխական փորձերի դեմ և պաշտպանել բանվոր դասակարգի ինքնուրույն շահերը» (ՍՄԿԿ-ն բանաձևերում..., մաս 1-ին, էջ 96)։

Ժամանակավոր հեղափոխական կառավարության մեջ սոցիալ-դեմոկրատիայի մասնակցության հարցում բոլշևիկների տակտիկան հետամտում էր պրոլետարիատի դասակարգային շահը՝ պրոլետարիատի դիկտատուրան, իսկ մենշևիկների տակտիկան, ըստ էության, բուրժուազիայի դասակարգային շահը՝ նրա դիկտատուրան։ Մենշևիկները բոլշևիկներին ապրիորի մեղադրում էին միլյերանիզմի մեջ։ Պարզ է, եթե հեղափոխության մեջ պրոլետարիատը չկարողանա ապահովել իր հեգեմոն դերը, իսկ սոցիալ-դեմոկրատիան՝ իր ղեկավարությունը վերջինիս նկատմամբ, ապա հեղափոխությունը կավարտվի բուրժուազիայի և ցարիզմի գործարքով, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ պոչատ սահմանադրությամբ։ Իհարկե, նման կառավարության մեջ սոցիալ-դեմոկրատիայի մասնակցությունը կլինի տիպիկ միլյերանիզմի դրսևորում։ Սակայն, նշում է Վ. Ի. Լենինը, ռուսական հեղափոխությունն ունի մեկ այլ հնարավոր ելք։ Եթե սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարությամբ պրոլետարիատն ամուր դաշինք կնքի գյուղացիության հետ, մեկուսացնելով լիբերալ բուրժուազիային, ապա հեղափոխությունը կավարտվի բանվորների ու գյուղացիների հեղափոխական դեմոկրատական դիկտատուրայի հաստատմամբ։ Այս կառավարության մեջ մասնակցելը բնավ էլ միլյերանիզմ չէ։ Այստեղ հարկ է հիշել Վ. Ի. Լենինի արած համեմատությունը։ Մենշևիկը,— նշում էր նա,— «...Միլյերանի մասնակցությունը մինիստրության մեջ Գալիֆեի հետ միասին սոցիալիստական հեղաշրջման նախօրյակի էպոխայում՝ շփոթում է Վառլենի մասնակցության հետ հեղափոխական կառավարության մեջ մանրբուրժուական դեմոկրատների կողքին, որոնք պաշտպանում էին և պաշտպանեցին հանրապետությունը» (Երկեր, հ. 8, էջ 601)։ Բոլշևիկները գտնում էին, որ ճնշումը ժամանակավոր հեղափոխական կառավարության վրա պետք է լինի և՛ ներքևից, և՛ վերևից։ Իսկ մենշևիկները գտնում էին, որ պրոլետարիատի կուսակցությունը ժամանակավոր կառավարության վրա պետք է ճնշում գործադրի միայն «ներքևից»՝ փողոցից, բայց ոչ երբեք այդ կառավարության ապարանքներից՝ «վերևից» (տե՛ս նույն տեղը, էջ 605)։ Մենշևիկյան այս տակտիկան Վ. Ի. Լենինը բնութագրում էր որպես անարխիզմ։



Բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ սոցիալ-դեմոկրատիայի տակտիկան մշակելիս՝ Վ. Ի. Լենինը օգտվում էր միջազգային բանվորական շարժման անցյալի փորձից, հաշվի առնելով Ռուսաստանի կոնկրետ պատմական պայմանները։

ՌՍԴԲԿ III ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՄԵԾ ՏԵՂ է հատկացնում գյուղացիական հարցին։ Ընդունվում է համապատասխան որոշում գյուղացիական շարժման նկատմամբ ունենալիք վերաբերմունքի մասին։ Բանաձևում նշվում է, որ սոցիալ-դեմոկրատիան իր առջև խնդիր է դնում՝ ամենաեռանդուն կերպով աջակցել գյուղացիության այն բոլոր հեղափոխական միջոցառումներին, որոնք ընդունակ են բարելավելու նրա դրությունը՝ ընդհուպ մինչև կալվածատիրական, պետական, եկեղեցապատկան, վանքապատկան և արքունական հողերի բռնագրավումը։ Վ. Ի. Լենինը նշում է, որ հեղափոխության մեջ պրոլետարիատի բնական դաշնակիցը գյուղացիությունն է։ «Քաղաքային բանվորական շարժումը նոր դաշնակից է ձեռք բերում ի դեմս հեղափոխական գյուղացիության» (նույն տեղը, էջ 283)։

Գյուղացիական շարժումը սոցիալ-դեմոկրատիայի առջև երկակի խնդիր է դնում—համագյուղացիական պայքարի կազմակերպում՝ ընդդեմ ինքնակալության, և չքավոր գյուղացիության պայքարի կազմակերպում՝ ընդդեմ բուրժուազիայի։

Համագումարը, քննարկելով կուսակցության պառակտված մասի վերաբերյալ հարցը, դատապարտեց մենշևիկների կազմակերպական և տակտիկական օպորտունիզմը, բոլշևիզմը որոշակիորեն սահմանազատելով մենշևիզմից։ Միաժամանակ համագումարը որոշեց թույլատրել սկզբնական կազմակերպություններում մենշևիկ կուսակցականների աշխատանքն այն պայմանով, որ նրանք ենթարկվեն կուսակցական կարգապահությանը, համագումարի որոշումներին։ Վերանայվեց կուսակցության կանոնադրությունը։ Առաջին պարագրաֆի մարտովյան ձևակերպումը վերացվեց և ընդունվեց լենինյան ձևակերպումը։

Համագումարը վերացրեց նաև կուսակցության ղեկավարման երկկենտրոն սիստեմը՝ Կենտկոմը և կենտրոնական օրգանը, ընտրելով ղեկավարման մեկ միասնական կենտրոն՝ ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեն՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։ ՌՍԴԲԿ III համագումարը հրաժարվեց «Իսկրան» ճանաչել կուսակցության օրգան։ Հանձնարարվեց Կենտկոմին ստեղծել նոր օրգան՝ «Պրոլետարի» լրագիրը, որի խմբագիրը դարձավ Վ. Ի. Լենինը։ Քննարկվեցին կազմակերպական բնույթի այլ հարցեր։ Համագումարը դուրս բերեց կուսակցությունը ճգնաժամային վիճակից, վճռական քայլ կատարեց նոր տիպի կուսակցության ամրապնդման ճանապարհին։

ՌՍԴԲԿ III համագումարը մշակեց բոլշևիկների տակտիկան և ստրատեգիան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ։ Լենինյան այն միտքը, որ հեղափոխությունը Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատիայի առջև դրեց «...այնպիսի պահանջներ..., որպիսիք դեռ ոչ մի անգամ և ոչ մի տեղ պատմությունը չի դրել բանվորական կուսակցության առջև դեմոկրատական հեղաշրջման էպոխայում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 8, էջ 570—571), վկայում է, որ բոլշևիկների տակտիկան և ստրատեգիան մշակելիս պետք է հաշվի առնվեին դարաշրջանի, և առավել ևս Ռուսաստանի կոնկրետ պատմական պայմանները։ Հեղափոխությունը Ռուսաստանում տեղի էր ունենում իմպերիալիզմի դարաշրջանում։ Ի տարբերություն եվրոպական երկրների, որտեղ բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունները կատարվեցին բուրժուազիայի արշալույսին, Ռուսաստանում այն կատարվում էր նրա մայրամուտին։ Բուրժուազիան արդեն կորցրել էր իր հեղափոխականությունը, ապարեպը գիջել պրոլետարիատին։ Այս գլխավոր առանձնահատկությունից ելնելով, Վ. Ի. Լենինը գիտականորեն ապացուցեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում Ռուսաս-

ղափոխությունը կատարում էր ժողովուրդը՝ բանվոր դասակարգն ու գյուղացիությունը։ 1905 թ. հունվարի 9-ի դեպքերից հետո հեղափոխությունը վերելք էր ապրում։ Պրոլետարիատը զենքով պայքարում էր ինքնակալության դեմ, ընդհարվելով ժանդարմերիայի և զորքի հետ։ Հոսում էր բանվոր դասակարգի արյունը, բայց ոչ լիբերալ բուրժուազիայի։ Գյուղացիները գրավում էին կալվածատիրական հողերը, նրանք փաստացի հեղափոխություն էին կատարում։ Այդ պայքարում հոսում էր գյուղացիության արյունը, բայց ոչ լիբերալ բուրժուազիայի։ Բուրժուազիան ինքնակալության դեմ աղերսանքներով լի պետիցիոն «կռիվ» էր մղում, ցարիզմից իր կամքն արտահայտող Սահմանադիր ժողով էր հայցում։ Պրոլետարիատը հեղափոխության մեջ օբյեկտիվորեն հանդես էր գալիս առաջամարտիկի դերում։

ՌՍԴԲԿ III ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՔՆՆԱՐԿՈՒՄ է ժամանակավոր հեղափոխական կառավարության մասին հարցը։ Այդ առթիվ ընդունված որոշման մեջ նշվում է, որ պրոլետարիատի անմիջական և վերջնական շահերը պահանջում են կառավարման ինքնակալական ձևը փոխարինել հանրապետությամբ։ Այսպիսի հանրապետությունը կարելի է ստեղծել հաղթանակած համաժողովրդական ապստամբության օրգան ժամանակավոր հեղափոխական կառավարության միջոցով։ Այդ կառավարությունը կոչված է իրականացնել մեր կուսակցության մինիմում-ծրագիրը և հրավիրել քաղաքական ազատ ագիտացիայի պայմաններում ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիմունքներով, գաղտնի քվեարկությամբ ընտրված և իրոք ժողովրդի կամքն արտահայտող Սահմանադիր ժողով։ Ինչ խոսք, հեղափոխությունից հետո բուրժուայիան կփորձի ետ խլել ժողովրդից նրա նվաճումները։ Այդ կանխելու համար համագումարը գտնում է, որ «...թույլատրելի է մեր կուսակցության լիազորների մասնակցությունը ժամանակավոր հեղափոխական կառավարությանը, նպատակ ունենալով անողոք պայքար մղել բոլոր հակահեղափոխական փորձերի դեմ և պաշտպանել բանվոր դասակարգի ինքնուրույն շահերը» (ՍՄԿԿ-ն բանաձևերում..., մաս 1-ին, էջ 96)։

Ժամանակավոր հեղափոխական կառավարության մեջ սոցիալ-դեմոկրատիայի մասնակցության հարցում բոլշևիկների տակտիկան հետամտում էր պրոլետարիատի դասակարգային շահը՝ պրոլետարիատի դիկտատուրան, իսկ մենշևիկների տակտիկան, ըստ էության, բուրժուազիայի դասակարգային շահը՝ նրա դիկտատուրան։ Մենշևիկները բոլշևիկներին ապրիորի մեղադրում էին միլյերանիզմի մեջ։ Պարզ է, եթե հեղափոխության մեջ պրոլետարիատը չկարողանա ապահովել իր հեգեմոն դերը, իսկ սոցիալ-դեմոկրատիան՝ իր ղեկավարությունը վերջինիս նկատմամբ, ապա հեղափոխությունը կավարտվի բուրժուազիայի և ցարիզմի գործարքով, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ պոչատ սահմանադրությամբ։ Իհարկե, նման կառավարության մեջ սոցիալ-դեմոկրատիայի մասնակցությունը կլինի տիպիկ միլյերանիզմի դրսևորում։ Սակայն, նշում է Վ. Ի. Լենինը, ռուսական հեղափոխությունն ունի մեկ այլ հնարավոր ելք։ Եթե սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարությամբ պրոլետարիատն ամուր դաշինք կնքի գյուղացիության հետ, մեկուսացնելով լիբերալ բուրժուազիային, ապա հեղափոխությունը կավարտվի բանվորների ու գյուղացիների հեղափոխական դեմոկրատական դիկտատուրայի հաստատմամբ։ Այս կառավարության մեջ մասնակցելը բնավ էլ միլյերանիզմ չէ։ Այստեղ հարկ է հիշել Վ. Ի. Լենինի արած համեմատությունը։ Մենշևիկը,— նշում էր նա,— «...Միլյերանի մասնակցությունը մինիստրության մեջ Գալիֆեի հետ միասին սոցիալիստական հեղաշրջման նախօրյակի էպոխայում՝ շփոթում է Վառլենի մասնակցության հետ հեղափոխական կառավարության մեջ մանրբուրժուական դեմոկրատների կողքին, որոնք պաշտպանում էին և պաշտպանեցին հանրապետությունը» (Երկեր, հ. 8, էջ 601)։ Բոլշևիկները գտնում էին, որ ճնշումը ժամանակավոր հեղափոխական կառավարության վրա պետք է լինի և՛ ներքևից, և՛ վերևից։ Իսկ մենշևիկները գտնում էին, որ պրոլետարիատի կուսակցությունը ժամանակավոր կառավարության վրա պետք է ճնշում գործադրի միայն «ներքևից»՝ փողոցից, բայց ոչ երբեք այդ կառավարության ապարանքներից՝ «վերևից» (տե՛ս նույն տեղը, էջ 605)։ Մենշևիկյան այս տակտիկան Վ. Ի. Լենինը բնութագրում էր որպես անարխիզմ։



Բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ սոցիալ-դեմոկրատիայի տակտիկան մշակելիս՝ Վ. Ի. Լենինը օգտվում էր միջազգային բանվորական շարժման անցյալի փորձից, հաշվի առնելով Ռուսաստանի կոնկրետ պատմական պայմանները։

ՌՍԴԲԿ III ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՄԵԾ ՏԵՂ է հատկացնում գյուղացիական հարցին։ Ընդունվում է համապատասխան որոշում գյուղացիական շարժման նկատմամբ ունենալիք վերաբերմունքի մասին։ Բանաձևում նշվում է, որ սոցիալ-դեմոկրատիան իր առջև խնդիր է դնում՝ ամենաեռանդուն կերպով աջակցել գյուղացիության այն բոլոր հեղափոխական միջոցառումներին, որոնք ընդունակ են բարելավելու նրա դրությունը՝ ընդհուպ մինչև կալվածատիրական, պետական, եկեղեցապատկան, վանքապատկան և արքունական հողերի բռնագրավումը։ Վ. Ի. Լենինը նշում է, որ հեղափոխության մեջ պրոլետարիատի բնական դաշնակիցը գյուղացիությունն է։ «Քաղաքային բանվորական շարժումը նոր դաշնակից է ձեռք բերում ի դեմս հեղափոխական գյուղացիության» (Նույն տեղը, էջ 283)։

Գյուղացիական շարժումը սոցիալ-դեմոկրատիայի առջև երկակի խնդիր է դնում—համագյուղացիական պայքարի կազմակերպում՝ ընդդեմ ինքնակալության, և չքավոր գյուղացիության պայքարի կազմակերպում՝ ընդդեմ բուրժուազիայի։

Համագումարը, քննարկելով կուսակցության պառակտված մասի վերաբերյալ հարցը, դատապարտեց մենշևիկների կազմակերպական և տակտիկական օպորտունիզմը, բոլշևիզմը որոշակիորեն սահմանազատելով մենշևիզմից։ Միաժամանակ համագումարը որոշեց թույլատրել սկզբնական կազմակերպություններում մենշևիկ կուսակցականների աշխատանքն այն պայմանով, որ նրանք ենթարկվեն կուսակցական կարգապահությանը, համագումարի որոշումներին։ Վերանայվեց կուսակցության կանոնադրությունը։ Առաջին պարագրաֆի մարտովյան ձևակերպումը վերացվեց և ընդունվեց լենինյան ձևակերպումը։

Համագումարը վերացրեց նաև կուսակցության ղեկավարման երկկենտրոն սիստեմը՝ Կենտկոմը և կենտրոնական օրգանը, ընտրելով ղեկավարման մեկ միասնական կենտրոն՝ ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեն՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։ ՌՍԴԲԿ III համագումարը հրաժարվեց «Իսկրան» ճանաչել կուսակցության օրգան։ Հանձնարարվեց Կենտկոմին ստեղծել նոր օրգան՝ «Պրոլետարի» լրագիրը, որի խմբագիրը դարձավ Վ. Ի. Լենինը։ Քննարկվեցին կազմակերպական բնույթի այլ հարցեր։ Համագումարը դուրս բերեց կուսակցությունը ճգնաժամային վիճակից, վճռական քայլ կատարեց նոր տիպի կուսակցության ամրապնդման ճանապարհին։

ՌՍԴԲԿ III համագումարը մշակեց բոլշևիկների տակտիկան և ստրատեգիան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ։ Լենինյան այն միտքը, որ հեղափոխությունը Ռուսաստանում սոցիալ-դեմոկրատիայի առջև դրեց «...այնպիսի պահանջներ..., որպիսիք դեռ ոչ մի անգամ և ոչ մի տեղ պատմությունը չի դրել բանվորական կուսակցության առջև դեմոկրատական հեղաշրջման էպոխայում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 8, էջ 570—571), վկայում է, որ բոլշևիկների տակտիկան և ստրատեգիան մշակելիս պետք է հաշվի առնվեին դարաշրջանի, և առավել ևս Ռուսաստանի կոնկրետ պատմական պայմանները։ Հեղափոխությունը Ռուսաստանում տեղի էր ունենում իմպերիալիզմի դարաշրջանում։ Ի տարբերություն եվրոպական երկրների, որտեղ բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունները կատարվեցին բուրժուայիայի արշալույսին, Ռուսաստանում այն կատարվում էր նրա մայրամուտին։ Բուրժուազիան արդեն կորցրել էր իր հեղափոխականությունը, ասպարեզը զիջել պրոլետարիատին։ Այս գլխավոր առանձնահատկությունից ելնելով, Վ. Ի. Լենինը գիտականորեն ապացուցեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում Ռուսաս-

տանում կատարվող բուրժուա-դեմոկրատական հեղափոխություն, ի տարբերություն վերընթաց կապիտալիզմի դարաշրջանի բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների, օբյեկտիվ նախադրյալներ ունի՝ վերաճելու սոցիալիստականի։

Վ. Ի. Լենինը մարքսիզմը հարստացրեց տեսական նոր դրույթներով։ Նա իր հետագա աշխատություններում մշակեց ու զարգացրեց այդ դրույթները՝ ստեղծելով սոցիալիստական հեղափոխության մի կուռ ուսմունք։

1905—1907 թթ. հեղափոխությունը պարտվեց։ Մենշևիկներն այդ պարտությունը համարում էին բոլշևիկյան տակտիկայի և ստրատեգիայի պարտություն։ Վ. Ի. Լենինը նշել է, որ «...հեղափոխության կրած պարտությունը հայտաբերեց ոչ թե խնդիրների անճշտություն, ոչ թե մերձավորագույն նպատակների «ուտոպիականությունը», ոչ թե միջոցների ու եղանակների սխալ լինելը, այլ ուժերի անբավարար նախապատրաստությունը, հեղափոխական ճգնաժամի անբավարար խորությունն ու լայնությունը...» (Երկեր, հ. 15, էջ 433)։ Հեղափոխական շարժումների հետագա ընթացքը և հաղթական ավարտը Ռուսաստանում 1917 թ. հոկտեմբերին հաստատեցին բոլշևիկյան տակտիկայի և ստրատեգիայի կենսական ուժը։ Դրանք ապացուցեցին, որ իմպերիալիզմի դարաշրջանում բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ պրոլետարիատը օբյեկտիվորեն հանդես է գալիս հեգեմոն դերում, այդ պայքարում նրա բնական դաշնակիցը գյուղացիությունն է։ Տրամաբանական եզրակացությունն այն է, որ հաղթանակած հեղափոխությունն ստեղծում է իր ժամանակավոր հեղափոխական կառավարությունը՝ բանվորների ու գյուղացիների հեղափոխական դեմոկրատական դիկտատուրան, որի մեջ պրոլետարիատի կուսակցության մասնակցությունը հրամայական պահանջ է։ Այդպիսի պայմաններում բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը, առանց տևական դադարի, վերաճում է սոցիալիստականի։

Հեղափոխական շարժումների ողջ ընթացքը և նրա հաղթական ավարտը Ռուսաստանում հերքեցին մենշևիկների և II ինտերնացիոնալի սոցիալիստների այն պնդումները, թե բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ հեգեմոնը բուրժուազիան է, որ այդ պայքարում պրոլետարիատը հանդես է գալիս միայն նրան աջակցողի դերում, իսկ գյուղացիությունը ռեակցիոն դասակարգ է, որ բուրժուա-դեմոկրատական և սոցիալիստական հեղափոխությունների միջև ընկած է տևական մի ժամանակաշրջան։ Հերքվեց նաև մենշևիկների՝ պրոլետարիատի դասակարգային պայքարում կուսակցության ղեկավար դերի ժխտման օպորտունիստական դրույթը։

Բոլշևիկների տակտիկան ու ստրատեգիան, որ առաջին քննությունը բռնեցին Ռուսաստանում, միջազգային ճանաչում ստացան։ Բանվորական շարժման փորձը վկայում է, որ, ինչպես նշել է Լենինը, «...ազատագրական պայքարում հեգեմոնիան անցնում է պրոլետարիատին և որ բուրժուա-դեմոկրատական հեղափոխության մեջ պրոլետարիատի հեգեմոնիան՝ ամբողջ գյուղացիության հետ նրա դաշինքի պայմաններում, անհրաժեշտաբար վերաճում է պրոլետարիատի հեգեմոնիայի սոցիալիստական հեղափոխության մեջ՝ գյուղական չքավորության և քաղաքի ու գյուղի բոլոր շահագործվող մասսաների հետ նրա դաշինքի պայմաններում» (ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ, Երևան, 1970, էջ 14)։

Միջազգային ճանաչում ստացավ նաև ինքնակալության դեմ հեղափոխական ու դեմոկրատական ուժերի միավորման ու միասնական ճակատի ստեղծման բոլշևիկյան տակտիկան։

ԴԺՎԱՐ Է ԳԵՐԱԳՆԱՀԱՏԵԼ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԴԵՄ հեղափոխական ուժերի միասնության նշանակությունն արդի դարաշրջանում։ Վ. Ի. Լենինը նշել է, որ կապիտալիզմը միջազգային ուժ է, հետևաբար, նրան հաղթելու համար անհրաժեշտ է միավորել միջազգային պրոլետարիատի ուժերը։ Դարաշրջանի գլխավոր բովանդակությունը՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցումը, պայմանավորում են երեք գլխավոր ուժեր՝ սոցիալիստական սիստեմը, միջազգա-



յին բանվորական շարժումը կապիտալի երկրներում և ազգային-ազատագրական շարժումները։ Ընդ որում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հակաիմպերիալիստական շարժման առաջատար հեղափոխական ուժն ու նեցուկն է։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունները հակաիմպերիալիստական պայքարը չեն անջատում պրոլետարիատի վերջնական նպատակի՝ սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարից։ Այստեղից՝ կապիտալի երկրների պրոլետարիատը, հանդես գալով գյուղացիության, մտավորականության, ուսանողության և բնակչության միջին խավերի հեղափոխական շարժումները համախմբողի դերում, երբեք աչքաթող չի անում իր դասակարգային մերձավորագույն խնդիրը—պայքարը պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման համար, հանուն վերջնական նպատակի՝ սոցիալիզմի կառուցման։

Հեղաշրջման նախօրյակին ինքնակալության քաղաքական վարքագծի նրկատմամբ սոցիալ-դեմոկրատիայի տակտիկան ևս, որ մշակել էր կուսակցության III համագումարը, միջազգային կիրառում ստացավ։ Ինչպես յոթանասուն տարի առաջ ինքնակալությունը հեղափոխական ուժերի հարվածների տակ ընտրեց նահանջի տակտիկան, հեղափոխության թափը կասեցնելու և իր դիրքերն ամրապնդելու նպատակով դիմելով մասնակի զիջումների, այսօր ևս միջազգային բանվորական շարժման հուժկու հարվածների տակ բուրժուազիան, իր սոցիալական թիկունքն ամրապնդելու նպատակով, ճնշման միջոցներին զուգընթաց, դիմում է զիջումների, մասնակիորեն բավարարելով աշխատավորության պահանջները։ Վ. Ի. Լենինի բնորոշմամբ այս «...անկարևորի զիջման, կարևորի պահպանման եղանակը» (Երկեր, հ. 24, էջ 58) հետամտում է մի նպատակ՝ հեռու պահել բանվոր դասակարգին քաղաքական պայքարից, ստեղծել այն պատրանքը, թե իբր պրոլետարիատը կարող է իրականացնել իր իղձերը բուրժուազիայի հետ համաձայնության գալու ճանապարհով։

Ռուսաստանի հեղափոխության առանձնահատկություններից բխած բոլշևիկյան տակտիկական դրույթները կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու արդի դարաշրջանում իրենց հիմնական գծերով համընդհանուր են աշխարհի այն երկրների համար, որոնք դեռ նոր պետք է թոթափեն ֆեոդալիզմի և գաղութատիրության լուծը, և այն երկրների համար, որոնք կանգնած են պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման նախաշեմին։ Խոսելով ցարիզմի տապալման և այդ գործում ռուսական հերոսական պրոլետարիատի ու նրա ավանգարդ բոլշևիկյան կուսակցության տակտիկայի և ստրատեգիայի միջազգային նշանակության մասին, Վ. Ի. Լենինը նշել է. «Ցարիզմի տապալումը Ռուսաստանում, որ հերոսաբար սկսել է մեր բանվոր դասակարգը, մի շրջադարձի կետ կլինի բոլոր երկրների պատմության մեջ, բոլոր ազգերի բոլոր բանվորների գործի դյուրացում բոլոր պետություններում, երկրագնդի բոլոր ծայրերում։ Եվ թող յուրաքանչյուր սոցիալ-դեմոկրատ, թող յուրաքանչյուր գիտակից բանվոր հիշի այն, թե համաժողովրդական պայքարի ինչ մեծագույն խնդիրներ են այժմ դրված իր ուսերին։ Թող չմոռանա, որ ինքը ներկայացնում է նաև ամբողջ գյուղացիության, աշխատավորների և շահագործվողների ամբողջ մասսայի, ամբողջ ժողովրդի կարիքներն ու շահերն ընդդեմ համաժողովրդական թշնամու» (Երկեր, հ. 8, էջ 109)։

Յոթանասուն տարի առաջ Վ. Ի. Լենինի ասած այս մարգարեական խոսքերը կյանքի են կոչված։ Բոլշևիզմը, որպես քաղաքական մտքի հոսանք, համաշխարհային տարածում ստացավ, սոցիալիզմը մեկ երկրի շրջանակներից դուրս եկավ և դարձավ համաշխարհային մի հզոր սիստեմ։ Դարաշրջանը մարքսիզմ-լենինիզմի հաղթարշավի դարաշրջանն է, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանը։ Ներկայումս մեր մոլորակի 89 երկրներում գործում են կոմունիստական ու բանվորական կուսակցություններ, որոնց նահապետը իրավամբ համարվում է Վ. Ի. Լենինի ստեղծած բոլշևիկյան կուսակցությունը՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՎԱՐԵԼ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ*

Մ. Բ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ գյուղի ողջ աշխատավորության ջանքերն ուղղել է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները կենսագործելու նպատակին։ Մեր հանրապետության կոլտնտեսականները, սովխոզների բանվորներն ու մասնագետները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, ընթացիկ հնգամյակի անցած տարիներին որոշակի հաջողություններ են ձեռք բերել գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։ 1971—1974 թթ. գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ծավալը կազմեց 573 մլն ռուբլի, ոռոգելի հողերի տարածությունն ավելացավ 41 հազար հեկտարով, յուրացվեցին 14,3 հազար հեկտար քարքարոտ, խոպան ու ոչ պիտանի հողեր։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը, ութերորդ հնգամյակի համեմատությամբ, աճեց 22,9 տոկոսով։ Զգալիորեն ամրապնդվել է նրա նյութատեխնիկական բազան։ Հանրապետության գյուղատնտեսության մեջ հիմնական արտադրաֆոնդերը 1974 թ. կազմեցին 1,3 մլրդ ռուբլի կամ, 1970 թ. համեմատությամբ, ավելացավ 53 տոկոսով։ Այս ամենի շնորհիվ աճեց գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրության և մթերումների ծավալը։ Պետությանն են հանձնվել հնգամյա առաջադրանքներից ավելի միս, կաթ, ձու, հացահատիկ, բանջարեղեն, կարտոֆիլ և այլ մթերքներ։

1974 թ. ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու, համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած ամենաբարձր արդյունքների համար ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը երկրի գյուղատնտեսական շատ այլ շրջանների ու տրնտեսությունների թվում համամիութենական սոցմրցության հաղթողներ ճանաչեցին նաև Հայկական ՍՍՀ Ախուրյանի ու Նոյեմբերյանի շրջաններին, Արարատի շրջանի Ստ. Շահումյանի անվան և Տամշադինի շրջանի Ղրղի գյուղի կոլտնտեսություններին, Կալինինոյի շրջանի Տահնազարի սովխոզին, Ստեփանավանի անասնաբուծական-անասնաբուժական սովխոզ-տեխնիկումին, Ղափանի շրջանի Սյունիքի թռչնաֆաբրիկային։

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունն ըստ արժանվույն են գնահատում գյուղի աշխատողների հերոսական գործերը։ Վերջերս մամուլում հրապարակվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը՝ մեր հանրապետության գյուղատնտեսության 319 առաջավորների շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին։

Ընդհանուր առմամբ, սակայն, հանրապետության գյուղատնտեսական արտադրության ներկայիս վիճակը հեռու է գոհացուցիչ լինելուց։ Գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրության ծավալով, ինչպես և գյուղատրնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման ցուցանիշներով մենք դեռևս զգալիորեն ետ ենք մնում հնգամյակի առաջադրանքներից։ 1971—1973 թթ. գյուղատնտեսական համախառն արտադրանքի տարեկան միջին աճը կազմել է 8,5 տոկոս՝ հնգամյա պլանով նախատեսված 14,5 տոկոսի փոխարեն, որի հետևանքով կրճատվել է հանրապետությունում մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական մթերքների արտադրածավալը։ Այսպես, 1973 թվականին, բնակչության մեկ շնչի հաշվով, արտադրվել է 106 կգ հացահատիկ, 91 կգ կարտոֆիլ, 150 կգ կաթ, այն ժամանակ, երբ 1960 թ. արտադրվել է համապատասխանաբար՝ 125, 99, 171 կգ։ Եթե 1971—1973 թթ. կապիտալ ներդրումների տարեկան միջին ծավալը, ութերորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացել է 38,9 տոկոսով, ապա գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին աճը կազմել է ընդամենը 16,9 տոկոս։

Մեր հանրապետությունում ժողովրդական տնտեսության այս կարևոր ճյուղի ետ մնալը բացատրվում է մասնավորապես նրանով, որ դրա ղեկավարման մակարդակը դեռևս էականորեն ետ է մնում կուսակցության ու կառավարության արդի պահանջներից։

ՀԿԿ Կենտկոմի այս տարվա հունվարյան պլենումը կուսակցական սկզբունքայնությամբ վերլուծեց հանրապետության գյուղատնտեսության արդի վիճակը և տնտեսության այդ ճյուղում դրության շուտափույթ բարելավումը համարեց ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության ու համապատասխան կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը։

Հանրապետության ժողովրդական վերահսկողության մարմինները ստուգումների ընթացքում բացահայտել են բազմաթիվ փաստեր, երբ Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությունը չի կատարել գյուղատնտեսության զարգացման համար առանձնացված միջոցներն արդյունավետ ծախսելու վերաբերյալ կուսակցության ու կառավարության ցուցումները։ Իսկ մինիստրության ղեկավարությունը, տեղյակ լինելով գյուղատնտեսության զարգացման համար նախատեսված միջոցներն այլ նպատակներով ծախսելու բազմաթիվ փաստերին, ըստ էության, հաշտվել է այդ դրության հետ և վճռական քայլերի չի դիմել ապօրինի ծախսումները կանխելու համար։

Վատ են օգտագործվել արտադրաֆոնդերը։ Տարեցտարի նվազել է ֆոնդահատույցը, կոլտնտեսություններում և սովխոզներում նկատելիորեն կրճատվել են հիմնական արտադրաֆոնդերի միավորին ընկնող գյուղատնտեսական համախառն արտադրանքը և շահույթը։ Գյուղատնտեսության մինիստրության, նրա տեղական մարմինների կողմից անհրաժեշտ պահանջկոտության բացակայությամբ պետք է բացատրել այն իրողությունը, որ շատ տնտեսությունների ղեկավարներ միջին ցուցանիշների քողի տակ թաքցնում են իրենց անգործությունը, դրանով իսկ զգալի վնաս հասցնելով պետությանը։

Շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ վատ են իրականացրել այն միջոցառումները, որոնք մշակվել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման մասին կուսակցության ու կառավարության պահանջներին համապատասխան։ Վերջին տարիներին առանձին շրջաններ նախկինում նվաճված մակարդակից ավելի ցածր բերք են ստանում։ Այսպես, Աշտարակի շրջանում 1971—1973 թթ. բանջարեղենի ցանքատարածությունների հեկտարի միջին բերքը կազմել է 29 ցենտներ՝ 1961—1965 թթ. ստացված 36 ցենտների դիմաց, Արթիկի շրջանում՝ համապատասխանաբար 44 ցենտներ՝ 75-ի դիմաց, Իջևանի շրջանում՝ 45 ցենտներ՝ 82-ի դիմաց և այլն։

Լուրջ թերություններ կան նաև հողերի արդյունավետ օգտագործման ոլորտում։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների սովետը վերջին ութ տարիներին քանիցս անդրադարձել են հողերի պահպանության, ռացիոնալ օգտագործման հարցերին և մատնանշել հողային օրենսդրության կոպիտ խախտումների, ոչ գյուղատնտեսական նպատակներով վարելահողեր առանձնացնելու, պիտանի հողատարածությունները, հատկապես ջրովի հողերը, օգտագոր-

* Սույն հոդվածը գրված է ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի 1975 թ. հունվարի 22-ի նիստում քննարկված նյութերի հիման վրա։ Խմբ.։

Սովետական կառավարությունը խոշոր միջոցներ է հատկացնում անասնապահական համալիրների ստեղծմանը՝ հաշվի առնելով այն կարևոր դերը, որ ունեն դրանք անասնապահական մթերքների արտադրության ավելացման գործում: Սակայն պլանով նախատեսված անասնապահական համալիրների շինարարության առաջադրանքները ևս մեզ մոտ անբավարար են կատարվում: Հրնգամյակի առաջին երեք տարում չեն իրացվել 12,7 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ: Համալիրների շինարարության համար հրապարակներ ընտրելիս հաճախ պատշաճ ուշադրություն չի նվիրվում հողի ռացիոնալ օգտագործմանը, հաշվի չեն առնվում կերի բազայի առկայությունը, աշխատուժով ապահովվածությունը, արտահրապարակային ինժեներական կոմունիկացիաների կառուցման ծախսերի ծավալը և այլ հանգամանքներ:

ՀԱՐԿ Է ՆՇԵԼ, ՈՐ ՀՍՍՀ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ մինիստրությունը և նրա տեղական մարմինները դեռևս անհրաժեշտ հետևողականություն չեն ցուցաբերում պետական և կոոպերատիվ սեփականությունը պահպանելու, հափշտակումները կանխելու, անտնտեսվարության հետևանքով գյուղատնտեսական մթերքների կորուստներն ու փչացումները վերացնելու գործում: 1971—1973 թթ. գյուղատնտեսական մթերքների կորուստներից ու փչացումներից կոլտնտեսությունների ու սովխոզների կրած նյութական վնասը կազմել է մոտ 8 մլն ռուբլի: 1973 թ. անասունների անկումից սովխոզների կրած վնասը կազմել է 2,4 մլն, իսկ ոչ կոնդիցիոն անասունների հանձնումից՝ 2,1 մլն ռուբլի: Կաթի բազիսային յուղայնությունը չապահովելու հետևանքով տնտեսությունների կաթի կորուստը կազմել է 3.600 տոննա:

Ինչպես ցույց են տվել ժողովրդական վերահսկողության մարմինների և հանրապետության ֆինանսների մինիստրության կատարած բազմակի ստուգումները, մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում, փաստական դրությունը թաքցնելու նպատակով, կեղծում են անասունների գլխաքանակի, դրանց մթերատվության, գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունների, բերքատվության, մթերքների համախառն ելքի հաշվետու տվյալները և այլ ցուցանիշներ: Հաշվապահական կադրերի ցածր որակավորումը, հաշվապահական-հաշվառման գործի անբավարար մակարդակը նպաստավոր պայմաններ են ստեղծում չարաշահումների ու վատնում-յուրացումների համար:

Ճիշտ է, հանրապետության գյուղատնտեսության մինիստրության կոլեգիան բազմիցս քննարկել է (կատարված ստուգումների արդյունքների հիման վրա) կոլտնտեսություններում ու սովխոզներում հանրային սեփականության պահպանման հարցերը և դրանց վերաբերյալ ընդունել համապատասխան որոշումներ, սակայն դրությունը դեռևս ծայրահեղորեն անբավարար է:

Գյուղատնտեսության մինիստրության կոլեգիան ու նրա ապարատը խոր չեն ուսումնասիրում գյուղատնտեսության էկոնոմիկան, ինչպես հարկն է չեն վերլուծում տնտեսություններում տիրող իրավիճակը և անհրաժեշտ մտահոգություն չեն ցուցաբերում հանրային արտադրության ցածր արդյունավետության պատճառները վերացնելու ասպարեզում:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների պլանային առաջադրանքները պարբերաբար չկատարելու, հողն ու տեխնիկան ոչ արդյունավետ օգտագործելու, գյուղատնտեսական կուլտուրաների մշակության ագրոտեխնիկայի ցածր մակարդակի, ինչպես նաև անասնապահության ցածր մթերատվության պատճառով հետզհետե ավելանում է վնասով աշխատող սովխոզների թիվը: Այսպես, եթե 1971 թ. դրանք 107-ն էին, իսկ 1972-ին՝ 172-ը, ապա 1973-ին այդ թիվը հասավ 187-ի:

Հանրապետության գյուղատնտեսության զարգացման համար էական նշանակություն ունեն գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացումն ու մասնագիտացումը, միջտնտեսային կապերի ընդլայնումն ու ծավալումը: Սակայն գյուղատնտեսության մինիստրությունը և նրա տեղական մարմինները դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը՝ խոպանի յուրացման 20-ամյակի առթիվ Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառից բխող խնդիրներին համապա-



տասխան: Բավական է նշել, որ հանրապետության ամեն մի 7-րդ կաթնապրանքային ֆերմայի անասունների գլխաքանակը 100-ից չի անցնում, իսկ թռչնաբուծական ֆերմաների մեծ մասում թռչունների քանակը 5.000-ից էլ պակաս է:

ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՍԻՍՏԵՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, հողերի, ոռոգման ջրի, գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը բարելավելու, գյուղատնտեսական արտադրության բոլոր օղակներում պետական կարգապահությունն ամրապնդելու վերաբերյալ մինիստրության մշակած միջոցառումները կրում են ընդհանուր, դեկլարատիվ բնույթ: Ստուգումների ժամանակ պարզվեց, որ մինիստրության 24 կառուցվածքային ստորաբաժանումներից (գլխավոր վարչություններ, վարչություններ, բաժիններ) 15-ը չունեն աշխատանքային պլաններ, իսկ մի մասն էլ լրիվ պատկերացում չունի իր անելիքների մասին: Ուշացումներով են քննվում կուսակցական ու սովետական վերադաս մարմինների որոշումները:

Մինիստրությունում վերադաս մարմիններից ստացված որոշումների ու կարգադրությունների կատարման ստուգման հստակության բացակայության պատճառով հաճախ անհետևանք են մնում շատ կարևորագույն որոշումներ: ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1974 թ. մայիսի 15-ի «Հանրապետությունում խաղողագործության և պտղաբուծության հետագա զարգացման և ինտենսիվացման միջոցառումների մասին» որոշումը մինիստրության կոլեգիան քննության է առել 123 օր հետո միայն: Ի կատարումն Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի 1973 թ. մարտի 14-ի «Նախագծա-նախահաշվային փաստաթղթերի փորձաքննության գործի դրվածքը Հայկական ՍՍՀ մինիստրություններում ու գերատեսչություններում» որոշման՝ համապատասխան հրաման ձևակերպելու համար մինիստրության ապարատին հարկավոր եղավ 386 օր: Նման փաստերը եզակի չեն:

Մինիստրության ապարատը, զբաղված լինելով հիմնականում եռամսյակային և տարեկան պլանների կատարման հետ կապված ընթացիկ հարցերի լուծումով, աչքաթող է արել գյուղատնտեսության արտադրության զարգացման հեռանկարային հարցերը: Ապարատի աշխատողները կոնկրետ, օպերատիվ, նպատակասլաց աշխատանքի փոխարեն, հիմնական ժամանակը կորցնում են զանազան հաշվետվություններ, զեկուցագրեր, տեղեկագրեր, որոշումների, հրամանների նախագծեր և այլ փաստաթղթեր կազմելու վրա:

Մինիստրությունում պատշաճ կերպով կարգավորված չեն պաշտոնական գործուղումները: Մարդիկ տեղերն են մեկնում առանց անհրաժեշտ նախապատրաստության, որի հետևանքով նրանց ուղևորությունները ցանկալի արդյունք չեն տալիս: 1973—1974 թթ. մինիստրության աշխատողները Մարտունու շրջանում եղել են, ընդհանուր առմամբ, 539 օր, Եղեգնաձորում՝ 486, Թումանյանում՝ 440, Ազիզբեկովում՝ 423, Կրասնոսելսկում՝ 397, Ամասիայում՝ 383 օր, սակայն նրանց գործուղումներն էական արդյունք չեն տվել: Ամասիայի բոլոր 7 սովխոզները, Թումանյանի 12 սովխոզներից 10-ը, Կրասնոսելսկի 8 սովխոզներից 7-ը 1973 թ. փակեցին վնասով:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը մշտապես շեշտում են, որ ապարատի աշխատանքի ոճն ու մեթոդները բարելավելու, կատարման ճըշգրիտ ստուգումն ապահովելու հարցում կարևոր է մինիստրությունների ու գերատեսչությունների կոլեգիաների դերը: Սակայն հանրապետության գյուղատնտեսության մինիստրության կոլեգիան այդ խնդիրն անբավարար է կատարում:

Մի շարք դեպքերում կոլեգիայի որոշումները կազմվել են հապճեպ, հանգամանորեն չեն ուսումնասիրվել հարցերը, չեն որոշվել կատարման ժամկետները և չեն նշվել դրա համար պատասխանատու կոնկրետ անձինք: Այս կամ այն որոշման կատարումը ձախողելուց հետո կոլեգիան հաճախ նույն հարցի վերաբերյալ ընդունում է նոր որոշում, դրանով իսկ թուլացնելով աշխատողների պատասխանատվությունը:

Մինիստրության կոլեգիայի աշխատանքի ոճի համար բնորոշ է հետևյալ

փաստը. 1973 թ. մարտին կոլեգիան քննության է առել «Հացահատիկների և կարտոֆիլի ցանքերի քիմիական մշակումը բարելավելու աշխատանքների վերաբերյալ» հարցը, որտեղ նշվել է Մարտունու, Կրասնոսելսկի, Եղեգնաձորի, Ամասիայի, Սիսիանի շրջանների տնտեսությունների անբավարար աշխատանքը։ Մոռացության տալով իր որոշումը, մինիստրության կոլեգիան մեկ տարի անց կրկին քննության է առել նշված հարցը և ընդունել մի այլ որոշում, որտեղ բառացիորեն արձանագրվել են նույն թերությունները, նշվել են նույն շրջանների անբավարար աշխատանքը և տրվել են նույն հանձնարարականները։

Մինիստրության կոլեգիան, նրա վարչությունները չեն ցուցաբերել անհրաժեշտ սկզբունքայնություն, հաճախ լիբերալ մոտեցում են դրսևորել կուսակցության և կառավարության որոշումների կենսագործումը չապահոված, պետական պլանները ձախողած աշխատողների նկատմամբ։ Այսպես, 1973 թ. մայիսին կոլեգիան քննարկել էր տևականորեն ետ մնացող մի շարք սովխոզների վիճակը բարելավելու հարցը։ Ընդունված որոշման մեջ նշվել էր նաև Անիի շրջանի Անիի սովխոզի վատ աշխատանքը (տնտեսությունը տարիներ շարունակ վնասով է աշխատել, չի կատարել գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների պլանները և այլն)։ Այդ ամենի համար կոլեգիան սովխոզի դիրեկտոր Հ. Օհանյանին հայտարարեց նկատողություն և նախազգուշացրեց, որ եթե մինչև տարվա վերջը տնտեսության վիճակը որոշակիորեն չբարելավվի, ապա նա կազատվի դիրեկտորի պարտականություններից։ Անցյալ տարի կոլեգիան կրկին անդրադարձավ այդ սովխոզի ֆինանսա-տնտեսական գործունեությանը, և նշեց, որ 1972-ի համեմատությամբ 1973 թվականին մոտ 4,5 անգամ ավելացել են տնտեսության վնասները. միայն անասունների անկումներից սովխոզը կրել է շուրջ 70 հազար ռուբլու վնաս, տրվել է աշխատավարձի ֆոնդի գերածախս, յուրացվել են պետական միջոցները։ Կոլեգիան չկատարեց իր իսկ որոշումը և բավարարվեց Հ. Օհանյանին երկրորդ նկատողությունը հայտարարելով։

Կրասնոսելսկի շրջանի Բաշքենդի սովխոզում ֆինանսական մարմինների կատարած ստուգումից բացահայտվել են մի շարք խախտումներ ու չարաշահումներ, պետության խաբելու դեպքեր։ Ստուգման նյութերի հիման վրա կոլեգիան 1972 թ. նոյեմբերի 27-ին որոշել է Մ. Դանիելյանին ազատել սովխոզի դիրեկտորի պաշտոնից և մեղավոր անձանց ենթարկել քրեական պատասխանատվության՝ նյութերն ուղարկել դատաքննչական մարմիններին։ Մի քանի օր անց կոլեգիան անհասկանալի պատճառներով վերանայել է իր որոշումը և Մ. Դանիելյանին վերականգնել նախկին պաշտոնում։ Գյուղատնտեսության մինիստրությունում հաճախ դատաքննչական մարմիններին չեն ուղարկվում այն անձանց գործերի ստուգման արդյունքները, ովքեր մեղադրվում են պետական ու կոլտնտեսային միջոցների հափշտակման և յուրացման մեջ։

ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը, վերլուծելով հանրապետության գյուղատնտեսության արդի վիճակը, կոնկրետ միջոցառումներ նշեց տնտեսության այդ ճյուղում եղած թերությունները վերացնելու, գյուղատնտեսության զարգացման տեմպերը ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների մակարդակին բարձրացնելու համար։ 1975 թ. պլանի անթերի կատարման, իններորդ հնգամյակը բոլոր ցուցանիշներով հաջողությամբ ավարտելու շահերը պահանջում են արմատապես վերակառուցել ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության և նրա կոլեգիայի ողջ գործունեությունը, կատարելագործել նրա աշխատանքի մեթոդներն ու ոճը, ամրապնդել պետական կարգապահությունը, աշխատանքի գործարար ոճ հաստատել կառավարման բոլոր օղակներում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՓՐԿԱՐԱՐ ԴՐՈՇՈՎ

Ա. Գ. ԱԴՈՅԱՆ

ԴԱՐԵՐ ԵՆ ԵԿԵԼ ՈՒ ԱՆՑԵԼ, շատ ժողովուրդներ ու ազգեր են գոյավորվել և ապրել, դրանցից շատերը նույնիսկ իսպառ անհետացել են պատմության թատերաբեմից։ Սակայն նրանց գոյատևման բուն պատմությունը բնորոշվում է յուրաքանչյուր ժողովրդի և ազգի ներսում առկա հակոտնյա դասակարգերի անողոք մարտերի անհաշտելիությամբ։

Հայտնի է, որ մարդկության պատմությունը լի է ոչ միայն դասակարգային կատաղի կռիվների բազում իրադարձություններով, այլև ազգերի ու ժողովուրդների դարավոր և արյունահեղ բախումներով։ Բախումներ, որոնք ստրկատիրական ու ֆեոդալական հասարակարգերում հաճախ տևել են տասնյակ տարիներ և մեծաթիվ զոհեր խլել աշխատավորներից։ Մարքսիզմը վաղուց է ապացուցել, որ հասարակական կյանքն ամենուր ընթացել է պատմության անագորույն օրենքով. հարստությամբ հղփացած կեղեքիչները դարերով ստրկացրել ու ճորտացրել են ոչ միայն իրենց երկրի նյութական բարիքներ ստեղծողներին, այլև սրով ու հրով նվաճած այլ ազգությունների ու ժողովուրդների։

Ֆեոդալական կարգերի խորտակման և կապիտալիստական հասարակարգի հաստատման մի ժամանակահատվածում՝ հատկապես 18-րդ դարի վերջին քառորդից սկսած մինչև 1870 թ. Եվրոպայում և այլուր ծայր առած ազգային-ազատագրական շարժումները գլխավորում էր տակավին առաջավոր բուրժուազիան, որը միտում էր ազգային շուկա և ազգային պետություն հաստատել ֆեոդալիզմի փլատակների վրա։ Անցած երկու դարերում բազմաթիվ ազգերի հաջողվեց թոթափել անգլիական, իսպանական, օսմանյան, հաբսբուրգյան և այլ կեղեքիչների ծանր լուծը ու բռնել զարգացման կապիտալիստական հունը։ Ցարիզմի անարգ բռնացումների դեմ ևս ծառացան Ռուսաստանի ծայրամասերի մի շարք ժողովուրդներ։

Մուտք գործելով իմպերիալիզմի դարաշրջանը, եվրոպական բուրժուազիան դեն նետելով ազգային շահերի պաշտպանության իր հնամենի դիմակը, այլևս չէր կարողանում սքողել, որ աշխարհի ժողովուրդների մեծ մասի գաղութացմամբ հսկայական հարստություններ էր դիզել ստրկացված ժողովուրդներից։ Բայց շուտով սթափվեցին Եվրոպայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի ու Աֆրիկայի բազմաթիվ ճորտացված ժողովուրդներ, և ահեղ գոյամարտեր եղան կեղեքող ու կեղեքվող ազգերի միջև։

Տակավին անցյալ դարի կեսից սկսած, երբ պրոլետարիատը պատմության ասպարեզ ելավ իբրև հասարակական պրոգրեսի ու մարդկության ամեն կարգի կեղեքումից ազատագրող վճռական ուժ, այդ օրից ի վեր հնչեց սեփականազրկողների սեփականազրկման ժամը։ Եվ ահա, պրոլետարիատի անզուգական առաջնորդներ և գիտական սոցիալիզմի անմահ ռահվիրաներ՝ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը խորապես հետազոտելով ու բացահայտելով կապիտալիստական հասարակության ծագման, զարգացման ու խորտակման օրենքները, միաժամանակ վեր հանեցին ազգային-ազատագրական շարժում-

ների սոցիալական դիալեկտիկան և դրա օրգանական կապերը՝ բանվոր դասակարգի ազատագրական գոտեմարտի հետ:

Այդ նրանք էին, որ մատնանշեցին ազգային կեղեքման վերացման իրական ելքը, ասելով «...այլ ժողովուրդներին կեղեքող ժողովուրդը երբեք չի կարող ազատ լինել» (К. Маркс и Ф. Энгельс, соч. 2. изд., т. 18, стр. 509): Նրանք էին, որ կեղեքված գաղութային ժողովուրդներին համարեցին պրոլետարիատի հուսալի դաշնակիցներ, որոնց պետք է անկախություն տալ ինքնուրույն ազգային կյանքի համար: Եվ, վերջապես, միջազգային հեղափոխական պրոլետարիատի այդ իմաստուն ուսուցիչներն էին, որ ազգային հարցի լուծման պրոլետարական սկզբունքի հիմքը դրին՝ ժողովուրդների ու ազգերի ինքնորոշվելու իրավունքը հռչակեցին:

Ցավոք, II Ինտերնացիոնալի պարագլուխներն ու տեսաբանները, հանձին Կ. Կաուցկու և այլոց, շուտով հրաժարվեցին այդ իսկ ինտերնացիոնալի 1896 թ. լոնդոնյան կոնգրեսի որոշումից, որում առաջին անգամ պաշտոնապես սևեռվեց ազգի ինքնորոշման իրավունքի մարքսիստական դրույթը:

Մարքսիզմի հետևողական պաշտպանության և նրա տեսական հարուստ ժառանգության հետագա զարգացման պատիվը Վ. Ի. Լենինին վիճակվեց: Երկարատև ու անզիջում պայքարելով մարքսիզմը աջից ու ձախից վերանայողների, շովինիստների ու նացիոնալիստների դեմ, Լենինը դեռ մինչև 1917 թվականը մշակեց ու ստեղծեց ամբողջական և կուռ մարքսիստական ուսմունք ազգային հարցի մասին: Տեսականորեն հիմնավորելով սոցիալիստական հեղափոխության և գաղութային ազգային-ազատագրական շարժումների հույժ կարևոր կապերի անհրաժեշտությունը, նա համակողմանի մշակեց և փայլուն կերպով կիրառեց ազգի ինքնորոշման՝ ընդհուպ մինչև անջատման և ինքնուրույն պետություն ստեղծելու իրավունքը:

Լենինն այն հանճարեղ մարքսիստ-ինտերնացիոնալիստն էր, որն իր տիտանական հեղափոխական պայքարի ընթացքում անդուլ պրոպագանդում էր, թե «...ռուսական բանվորները չեն կարող և չպետք է մոռանան ազգային այն կեղեքման մասին, որի լծի տակ գտնվում են Ռուսաստանում ապրող տասնյակ և տասնյակ միլիոնավոր «այլազգիներ»...

«Ազգությունների կեղեքման քաղաքականությունը ազգերի բաժանման քաղաքականություն է: Այն միաժամանակ ժողովրդի գիտակցությունը սիստեմատիկ կերպով այլասերելու քաղաքականություն է: Սևհարյուրակայինների բոլոր հաշիվները կառուցված են զանազան ազգերի շահերի հակադրության, խավար ու ծեծկված մասսաների գիտակցությունը թունավորելու վրա» (Երկեր, հ. 20, էջ 287—288):

Իսկ ի՞նչ անել այս դեպքում: Նա գտնում էր անհրաժեշտ, որ «...բանվոր դասակարգը վճռականապես պետք է դեմ արտահայտվի ազգությունների որևէ կեղեքման... անհրաժեշտ է լիակատար իրավահավասարություն տալ, լիակատար չափով և վերջնականապես հրաժարվել որևէ ազգի որևէ արտոնությունից» (Նույն տեղը):

Պրոլետարիատը կարող է հաղթանակել, եթե նրան սերտորեն գործակցեն ոչ միայն այլազգի բանվորները, այլև բոլոր դեմոկրատական ուժերը: Ահա այս միավորմանը մշտապես և մեծ չափերով խանգարել է ազգային կեղեքումից բխող ազգային ատելությունը: Պատմական հարուստ փորձից ելնելով, Լենինն ուսուցում էր իր համախոհներին, թե ռեակցիոն նացիոնալիզմը դեմոկրատիայի և պրոլետարական պայքարի գլխավոր արգելակն է (տե՛ս Երկեր, հ. 20, էջ 513):

«Իմպերիալիզմը՝ աշխարհի ազգերի աճող ճնշումն է մի բուռ մեծ տերությունների կողմից, ազգերի նկատմամբ ճնշումն ընդլայնելու և ամրացնելու համար այդ տերությունների միջև մղվող պատերազմների դարաշրջանն է, ժողովրդական մասսաներին կեղծավոր սոցիալ-հայրենասերների կողմից խաբելու դարաշրջանը,— այսինքն՝ այն մարդկանց կողմից, որոնք «ազգերի ազատության», «ազգերի ինքնորոշման իրավունքի» և «հայրենիքի պաշտպանու-



թյան» պատրվակով արդարացնում և պաշտպանում են աշխարհի ազգերի մեծամասնության կեղեքումը մեծ տերությունների կողմից:

Այդ պատճառով ս.-դ. ծրագրում կենտրոնական տեղը պետք է լինի ազգերի հենց այն բաժանումը՝ կեղեքողների և կեղեքվողների, որն իմպերիալիզմի էությունն է և որը կեղծարար աչքաթող են անում սոցիալ-շովինիստներն ու Կաուցկին» (Երկեր, հ. 21, էջ 518—519):

Մերկացնելով իմպերիալիստական առաջին համաշխարհային պատերազմի անմիջական հրահրողներին, ցուցադրելով կապիտալիստական սիստեմի ամբողջ նեխվածությունը, Լենինն իրեն հատուկ խորաթափանցությամբ կանխատեսեց. «Պրոլետարիատի սոցիալական հեղափոխությունն է միայն ճանապարհ հարթում դեպի խաղաղությունը և ազգերի ազատությունը:

Իմպերիալիստական պատերազմն իրենով սոցիալական հեղափոխության դարագլուխն է բացում: Նորագույն դարաշրջանի բոլոր օբյեկտիվ պայմանները օրակարգում դնում են պրոլետարիատի հեղափոխական մասսայական պայքարը...» (Նույն տեղը, էջ 441): Ահա թե ինչու Լենինը ազդարարեց, որ բոլշևիկները կոչված են իմպերիալիստական պատերազմը վերածելու կեղեքվողների դասակարգային պատերազմի. սա էր օրվա հրատապ պահանջը, իմպերիալիստների սարքած սպանդից դուրս գալու ելքը:

Չպետք է անտեսել այն կարևոր հանգամանքը, որ արևմտահայ ազգային-ազատագրական շարժումն իր կազմակերպվածությամբ, զինվածությամբ ու մասշտաբայնությամբ, իրոք, անբարենպաստ վիճակում ընկալեց առաջին համաշխարհային պատերազմի բոթը: Այստեղ պետք է հաշվի առնել և այն վտանգավոր իրադրությունը, երբ երկար ժամանակ հայությունը մնացել էր երկփեղկված երկու խոշոր հատվածների, չէր գտնվում միասնական տերիտորիայում, ընդհատված էր նրա ազգային կոնսոլիդացիան և զերծ էր պետականությունից: Մի յուրահատուկ հանգամանք, որն իր բացասական կնիքն էր դրել հայ ժողովրդի ազատագրական դարավոր ճիգերի և արյունալի մաքառումների ընթացքի վրա:

ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀՐԱՀՐԱԾ առաջին համաշխարհային պատերազմն անասելի ծանր և ողբերգական կորուստներ պատճառեց մեր ժողովրդին: 1915 թ. գարնանը սկսած երիտթուրքերի ռեակցիոն կլիկի հրամանով և սուլթանական Թուրքիայի դաշնակից գերմանական կայզերի հովանավորությամբ, Արևմտյան Հայաստանում չտեսնված գազանությամբ գործադրվեց ցեղասպանության իրենց իսկ մշակած վաղեմի պլանը՝ սրատվեց ու վայրագաբար բնաջնջվեց մեկուկես միլիոնից ավելի հայ բնակչություն:

Հրեշային այդ ոճիրը կամ ժողովրդասպանության նողկալի քաղաքականությունը մեր սրտերը լցնում են բուռն զայրույթով ու նողկանքով երիտթուրքերի ու նրանց սատարող գերմանական ռազմամոլների հանդեպ, որոնք այդ քստմնելի ակտով ողջ աշխարհի առջև մի անգամ ևս զարհուրելի մասշտաբներով դրսևորեցին իրենց շովինիզմի գազանային էությունը և միջնադարյան խավարամտությունը: Հիտլերյան ռասիզմի այդ նախորդները վերջին հաշվով մի դաս են տվին մարդկությանը. այն, որ քանի դեռ աշխարհում գոյություն ունեն սոցիալական ու ազգային կեղեքումներ, բացառված չեն նման ոճիրներ: Այդ ոճիրների դարավոր ակունքը՝ մարդու շահագործումն է մարդու կողմից: Ահա ինչու միայն սոցիալիստական կարգերի հաստատմամբ մեկընդմիշտ կվերանա և՛ մարդու, և՛ ազգի կեղեքումը:

Այն, ինչ կատարեցին հիտլերականները համաշխարհային երկրորդ պատերազմում ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, լեհերի, չեխերի, հրեաների, սերբերի և սլավոնական այլ ժողովուրդների հետ, դրա համոզիչ ապացույցն է: Բնորոշն այն է, որ գերմանական ռասիստները ժողովուրդների մասսայական բնաջնջումները կատարում էին «գիտության» ու տեխնիկայի վերջին խոսքի համաձայն և առավել մեթոդիկորեն:

Մենք չենք մոռանա XX դարի երկոտանի հրեշին՝ Ադոլֆ Հիտլերին, որը զանգվածային սպանության հերթական հրահանգավորման պահին իր համ-

հարցներին ցինիկորեն հայտարարել է, թե մեր ժամանակներում ո՞վ է հիշում հայերի բնաջնջումը:

Այդ մենք ենք, Սովետական Հայաստանի վերածնված հայությունը, որ մեր ժողովրդի զանգվածային բնաջնջման՝ մեծ եղեռնի (ապրիլի 24-ի) օրը խոր կսկիծով հիշում ենք ու սգում: Մենք չենք մոռանա մեր պապերի ու տատերի, հայրերի ու մայրերի, եղբայրների ու քույրերի երկինք բարձրացող ողբն ու կականը, նրանց նզովքի ձայները՝ թուրքական ասխտների ու սուլթանի սանձազերծ բաշիբոզուկների արյունախում «սխրանքների» առթիվ: Չենք կասկածում, որ առաջավոր մարդկությունը դեռ երկար ժամանակ կհիշի հայկական հարցի գենոցիդային լուծումը սուլթանական Թուրքիայի արյունախում վերնախավի կողմից: Հայության մասսայական բնաջնջման այդ օրը՝ մեծ եղեռնի վաթսուներորդ տարելիցի հինգշաբթին, հանրապետության հարյուր հազարավոր քաղաքացիներ իրենց համակած վիշտը սրտերում կայցելեն Երևանի Ծիծեռնակաբերդի կատարին կռթնած եղեռնի վերասլաց կոթողի համալիրը, կծածկեն նրա սրբատաշ քարերը երփներանգ ծաղկեպսակներով և հավերժական ջահի ալեծածան ցոլքերի ներքո մորմոքող ցասումով մի պահ կմտորեն այդ մեծ կորստի առթիվ:

Այո՛, մենք ենք հիշում նրանց, մենք՝ զոհվածների հարազատ շառավիղները, որ ամեն տարի ապրիլի 24-ին բարոյական մեր տուրքն ենք հատուցում հարազատ ժողովրդի զանգվածային զոհերի, ազգային-ազատագրական շարժման անձնուրաց բազում մարտիկների անթառամ հիշատակին, բոլոր նրանց, ովքեր խիզախորեն մաքառեցին կիսաֆեոդալական հետամնաց Թուրքիայի անվերջ բռնացող վայրագությունների դեմ, հանուն մեր ժողովրդի փրկության, հանուն նրա մարդկային ու ազգային տարրական իրավունքների անձեռնմխելիության:

Պատմությունը վաղուց է արդարացրել մեր ժողովրդի ազգային ոգորումների դարավոր ճիգերը: Արևմտահայ ազգային-ազատագրական գերդժվարին մաքառումներն ուղղված էին թուրքական բռնակալական-ֆեոդալական, իր դարն ապրած օսմանյան կայսրության բիրտ կարգերի դեմ: Տնտեսապես, քաղաքականապես և կուլտուրապես սուլթանական Թուրքիան դարերով կեղեքում էր, կողոպտում ու պարբերաբար թրատում կամ աքսորավայրերում ոչնչացնում բուլղար, հույն, արաբ, ռումին, հունգար, հայ և ստրկացված այլ ժողովուրդների, որոնք ձգտում էին մեկընդմիշտ թոթափել թուրք բռնակալի անտանելի լուծը, որոնք զարգացման մակարդակով անհամեմատ բարձր էին կանգնած կեղեքողներից:

Մի առիթով Ֆ. Էնգելսը նկատել է. «Քանի դեռ կենսունակ ժողովուրդը շղթայված է օտար զավթիչների կողմից, նա անհրաժեշտաբար իր բոլոր ուժերը, իր բոլոր ձգտումները, իր ողջ եռանդը գործադրում է արտաքին թշնամու դեմ և քանի դեռ նրա ներքին կյանքն այդպիսով մնում է կաթվածահար, նա ի վիճակի չէ կռվելու սոցիալական ազատության համար» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 18, стр. 555):

Անցյալ դարի 60-ական թվականներից սկսած արևմտահայության վիճակը ճիշտ այնպիսին էր, ինչպես ասված է Էնգելսի վերոբերյալ հատվածում՝ թուրքական տնտեսական, քաղաքական և ռազմա-ֆեոդալական ստրկության ծանր լուծը դրդում էր շատ ժողովուրդների, այդ թվում և հայերին, կազմակերպված պայքար մղել անօրեն և պորտաբույծ թշնամու դեմ, և ըստ հնարավորին զենքով դիմակայել Աբդուլ Համիդի սրարշավներին, խաղաղ բնակչության հարստահարման ու կրկնվող ջարդերին: Կասկած չի կարող լինել այն մասին, որ արևմտահայերի դժնդակ և արյունալի դիմադրական բախումները սուլթանական հորդաների հետ, հիրավի, եղել են արդարացի և պրոգրեսիվ: «Զանգվածների զարթոնքը ֆեոդալական մրափից, նրա կռիվն ամեն կարգի ազգային կեղեքման դեմ, հանուն ժողովրդի ինքնիշխանության, հանուն ազգի ինքնիշխանության՝ պրոգրեսիվ է»,— գրել է Լենինը (ПСС, т. 24, стр. 132):

Պատմա-քաղաքական և աշխարհագրական մի շարք գործոնների բերումով, հայ ժողովուրդն իր հազարամյակների երթում միշտ հարկադրված է եղել



օժանդակ ուժեր որոնել հարձակվող մեծաթիվ նվաճողներին դիմագրավելու համար: Դեռ անցյալ դարի երկրորդ կեսում, երբ եվրոպական իմպերիալիստական տերությունները և ցարական Ռուսաստանը սկսեցին ակտիվ միջամտել հայոց գործերին, ավելի ցայտուն երևաց այն ճշմարտությունը, որ Հայաստանը շարունակում է մնալ կովախնձոր իմպերիալիստական տերությունների միջև:

Հանդես գալով խոշոր տերությունների նվաճողական իմպերիալիստական քաղաքականության դեմ, բոլշևիկները հետևողականորեն մերկացրին իմպերիալիստների վարած կուրսի զավթողական էությունը: Լենինը քանիցս հրապարակավ նշեց, որ առաջին համաշխարհային պատերազմը իմպերիալիստական տերությունները մղում են աշխարհը վերաբաժանելու, ժողովուրդներին ստրկացնելու նպատակով:

Լենինի հայ զինակիցներն ու համախոհները, ականավոր բոլշևիկներ Ստ. Շահումյանը, Ս. Կասյանը, Ս. Սպանդարյանը, Ալ. Մյասնիկյանը, Բ. Կնունյանցը, Ս. Լուկաշինը, Դ. Շահվերդյանը և ուրիշներ ակտիվ մասնակցում էին ցարիզմի դեմ մղվող դասակարգային կռվին, գաղափարապես ու կազմակերպորեն այդ պայքարում ներգրավելով արևելահայ աշխատավորական զանգվածներին:

Իրենց հրապարակային բանավոր ու գրավոր ելույթներում, շեշտելով սկսված իմպերիալիստական պատերազմի ու թուրքական պետության կողմից մեր ժողովրդին սպառնացող մահաբեր վտանգը, նրանք լենինյան շիտակությամբ քննադատում էին դաշնակցության վարած կուրսի ավանտյուրիստական բնույթը, մատնանշելով հայության ազատագրման հուսալի ուղին: Նրանք գտնում էին, որ հայության սոցիալական ու ազգային ազատագրումը հնարավոր է միայն օսմանյան սուլթանության և ռուսական ցարիզմի խորտակմամբ:

ՀԱՅՏՆԻ Է ՎԱՂՈՒՑ, ՈՐ ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ քաղաքականապես հեռատես զավակները՝ Ի. Օրին, Մ. Նալբանդյանը, Խ. Աբովյանը և բոլշևիկները Ստ. Շահումյանի գլխավորությամբ, ժամանակին խորապես ըմբռնեցին, որ մեր բախտը մեկընդմիշտ կապվում է Ռուսաստանի ռեալ կարողության հետ: Հիրավի, Ռուսաստանի արտաքին քաղաքական կուրսը օբյեկտիվորեն բարենպաստ էր Անդրկովկասի ու հատկապես հայության ոչ միայն նորմալ գոյատևման, այլև զարգացման համար: 1828 թ. Ռուսաստանի հետ միավորման օրից ի վեր Արևելահայաստանն ընդմիշտ ձերբազատվեց իր գլխին կախված թուրք-պարսկական թրից, ռուսաց հովանավորության շնորհիվ հետագայում դարձավ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության օրրանը, հայության պայծառաշող հայրենիքը:

Ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, «Մաքառելով սեփական և օտար ճնշողների դեմ, Հայաստանի աշխատավորներն ավելի ու ավելի ուժգնորեն էին մղվում դեպի Ռուսաստանի դեմոկրատական ու հեղափոխական ուժերը, հանձինս նրանց տեսնելով իրենց հզոր ու հավատարիմ դաշնակցին: Ցարական ինքնակալության դեմ Ռուսաստանի պրոլետարիատի պայքարի պատմական փորձը Հայաստանի աշխատավորներին ցույց տվեց ազատության, սոցիալական առաջադիմության միակ ճշմարիտ ուղին՝ հեղափոխական պայքարի ուղին, սոցիալիստական վերափոխումների ուղին» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 223):

Անհրաժեշտ է, որ մեր նոր սերունդը լավ յուրացնի պատմության դասերը, որոնք բազում փաստերով մեզ համոզում են, որ եվրոպական իմպերիալիստական տերությունները քանիցս բացասական դեր են խաղացել հայության ճակատագրում: Օրինակ, Անգլիայի ակներև ճնշմամբ, ըստ Ադրիանապոլսի 1829 թ. կնքված պայմանագրի, Ռուսաստանը Թուրքիային վերադարձրեց իր գրաված Կարսը, Էրզրումը, Բայազետը:

Անգլիական պետական գործիչ Լլոյդ Ջորջն իր հուշերում խոստովանել է. «Հայաստանը զոհաբերվեց մեր կերտած հաղթության տաճարին... Բրիտանական կառավարության քաղաքականությունը ճակատագրական անխուսափելիությամբ հանգեցրեց 1895—1897 և 1909 թվականների սպանդին ու 1915

խանության կողմից աքսորված հարյուր հազարավոր հայերին վերադառնալ հարազատ հողերի վրա, ինքնիշխան ազատ պետություն ստեղծել և լծվել շինարարական աշխատանքի։

Ցավոք, ռազմատենչ թուրքական ղեկավարները, կամենալով անարիկ պատնեշ ստեղծել սոցիալիստական հեղափոխության հաղթարշավի առջև, ներխուժեցին Կովկաս նոր հողեր նվաճելու և բոլշևիզմի «վտանգը» կանխելու միտումով։ Մի բան, որը շատ ձեռնտու էր իմպերիալիստական տերություններին։

Ս. Կասյանը դեռ 1918 թ. մարտին մերկացրեց թուրքական իշխանության ավազակային նվաճումների նպատակը՝ «Թուրքահայաստանի մասին» լենինյան դեկրետի կենսագործման խափանումը, որը նրան հաջողվեց եվրոպական ու անդրկովկասյան հակահեղափոխության համատեղ ջանքերով։

Այդ մղձավանջային օրերին վերջնական խորտակման եզրին հասած հայ ժողովրդի մասին Ռուսաստանում և Անդրկովկասում հոգում էին միայն բոլշևիկները, որոնք հետևողականորեն պաշտպանում էին մեր ժողովրդի ազատաբաղձ ողորումները, անում ամեն ինչ, որպեսզի նրա կրած տառապանքները շուտով վերջ գտնեին։

Զնայած Մոսկվայի սրտացավ հորդորներին, դաշնակցական ղեկավարները մինչև վերջին վայրկյանը կախված մնացին արևմտյան տերությունների կառքից։ Ինչպես խոստովանել է Հ. Քաջազնունին, Սևրի դաշնագիրը շլացրել էր նրանց աչքերը, կաշկանդել միտքը, մթագնել գիտակցությունը։ Դաշնակցության այդ առաջին վարչապետը գրել է (1923 թ. արտասահմանում եղած ժամանակ). «Մենք շարունակ սխալված ենք եղել մեր հաշիվների մեջ, չենք ունեցել որոշ ու ճշտակ գիտակցություն մեր անելիքի մասին, չենք ունեցել մի ղեկավարող սկզբունք»։

Այս ամենը թանկ, շա՜տ թանկ նստեցին մեր ժողովրդին։ Հետևաբար, թուրքական ցեղասպանների սարքած սպանդը չպետք է բնավ սքողի պատմական այն իրողությունը, որ եթե արևմտահայության ազատագրական դեգերումների ու մաքառումների անհեռատես դաշնակ ղեկավարները կազմակերպական ջանքերով կովի հանեին մարտունակ ուժերի գեթ տասը տոկոսը, մեր ժողովրդի կորուստները քսան անգամ պակաս կլինեին. հիրավի, եթե շարժման ոլորտներում չիշխեր «բաբելոնյան խառնակությունը» կամ շարժման մեջ չգոյանար «ճացկատակների աճագին պարտիա» ու եթե հայ բուրժուազիայի կամակատար դաշնակցությունը կարողանար վարել շարժումը և ոչ թե «չոլա տանել» (գրել է Արամ փաշան), ապա թշնամին այդքան սանձարձակ չէր լինի և կորուստները քիչ կլինեին։

Ազգային-ազատագրական շարժման ներսում հասունացող գաղափարաքաղաքական ճգնաժամ հարուցող պարոնայք դաշնակցական ղեկավարների որդեգրած աղետաբեր կուրսն ի նկատի ունենալով, Ստ. Շահումյանը քանիցս հրապարակավ ասել է ճշմարտությունը։ Այն, որ նրանք «հայ ազգի համար կույր առաջնորդներ են», որոնց «գործերը և ճանապարհը կործանաբեր են հայ ժողովրդի համար»։ Իսկ արդյո՞ւնքը։ «Միմիայն դժբախտություն, կոտորածներ ու ավերումներ»,— գրել է նա։

Ավելին, նույնիսկ հայության զարհուրելի ողբերգության գեթ վերջին ամսին, եթե դաշնակցականները քաղաքականապես տհաս չլինեին և անսային սովետական կառավարության օգնության ձայնին (1920 թ. բանակցությունների ընթացքում), չմերժեին նրա փրկարար օգնությունը, մեր ժողովուրդը թուրքական արշավանքի ժամանակ նորանոր զոհեր չէր տա և չէր կորցնի իր տերիտորիաների զգալի մասը։

Ի վերջո, 1920 թ. դեկտեմբերին նրանք Ալեքսանդրապոլում դաշինք կնքեցին իրենց դարավոր կեղեքիչ թուրքերի հետ և դավաճանեցին հայ ժողովրդի ազգային շահերին։

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ հաղթությամբ կեղեքվող մարդկության, աստի և կեղեքվող ազգերի ազատագրման արշալույսը բացվեց։ Կանգնելով սովետական դրոշի ներքո, հայ աշխատավորու-



թյունն ընթացավ Լենինի մատնանշած ուղիով։ Որդեգրելով սոցիալիզմի կառուցման, ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության, փոխադարձ օգնության ծրագիրը, հայ ժողովուրդը սովետական հայրենիքում, ռուս և եղբայրական մյուս ժողովուրդների անշահախնդիր օգնությամբ կարճ ժամանակամիջոցում կառուցեց ու վերաշինեց երկիրը, ձեռնամուխ եղավ սոցիալիզմի մեծ պլանների կենսագործմանը։ Դառնալով ՍՍՀՄ եղբայրական հանրապետությունների միասնական ընտանիքի իրավահավասար անդամ, Հայաստանն սկսեց կոմունիստական կուսակցության հմուտ ղեկավարությամբ առաջ ընթանալ սոցիալիզմի կառուցման ուղիով։

Աշխատավորներին ու նոր սերնդին դաստիարակելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով, մեր կուսակցությունը երկիրը վարեց մեծ Լենինի ու նրա կուսակցության՝ ՍՄԿԿ մշակած ծրագրի հունով։ Ձեռք բերած հաջողությունները պատմական են։

Մեր սրտերը լցվում են ազգային հպարտության այն խոր զգացումով, որ աշխատավոր հայության դարավոր արդարաբաղձ իղձերն իրականություն դարձան, երբ նրա անձնվեր ու իմաստուն զավակները լենինյան հունով վարեցին մեր ազատագրական երթը։ Ու եթե այսօր մենք բարգավաճում ենք և հպարտանում մեր վիթխարի հաջողություններով, չպետք է մոռանանք, որ այդ ամենը, այդ թվում և մեր ժողովրդի ֆիզիկական գոյությունն անգամ, պարտական ենք ՍՄԿԿ վարած լենինյան ազգային քաղաքականությանը։

Թոթափած անցյալի վիշտն ու մղձավանջը, վերազինված լենինիզմի կենսատու ուսմունքով, համակված սոցիալիստական ինտերնացիոնալիզմի եղբայրացման սրբազան շնչով, Սովետական Հայաստանի ողջ աշխատավորությունը խրոխտ քայլերով, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների ստեղծարար երթին ներդաշնակ կոմունիզմի լուսավոր ոլորտներն է մտնում։

Այժմ խոսենք փաստերի, պերճախոս թվերի լեզվով։ Թվեր, որոնք նույնիսկ մի քանի տասնյակ տարիներ առաջ երևակայական պետք է կոչվեին։

Այն հանգամանքը, որ սովետական կարգերի օրոք բուրժուական հայ ազգը վերածնվելով դարձավ սոցիալիստական, այն, որ նա այժմ հանդիսանում է ՍՍՀՄ-ում գոյավորված սովետական ժողովուրդ հանրության օրգանական մասը, վկայում է, որ սոցիալ-պատմական այդ վիթխարի ու հանրանշանակ իրադարձությունների հիմքում եղած արտադրաուժերի ու արտադրահարաբերությունների ոլորտներում վիթխարի փոփոխություններ են կատարվել։

Սովետական հանրակարգի տարիներին Հայաստանը դարձավ ինդուստրիալ-ագրարային երկիր՝ 2.790.000 բնակչությամբ, 697 նոր կառուցված գործարաններով ու ֆաբրիկաներով։ Փաստ է, որ հանրապետության արդյունաբերական արտադրությունն աճել է 200 անգամից ավելի։ Ընթացիկ տարում գգալիորեն կավելանա հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր մարզերում զբաղված մարդկանց թիվը, որն անցյալ տարի 951.000 էր։ Այժմ միայն արդյունաբերության մեջ աշխատում է 273.350 մարդ։

Մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայով մեր հանրապետությունը գտնվում է այն մակարդակին, որպիսին գոյություն ունի Արևմտյան Եվրոպայի արդյունաբերականորեն զարգացած այնպիսի երկրներում, ինչպիսիք Ֆրանսիան ու Իտալիան են։ Հայաստանի բարձր զարգացած մեքենաշինության, առաջին հերթին, էլեկտրատեխնիկական ու հաստոցաշինական ձեռնարկությունների արտադրանքը բարձր է գնահատվում ՍՍՀՄ-ում և արտասահմանում։

Հանրապետությունը մեկ օրում արտադրել է (1974 թ.) էլեկտրաէներգիա՝ 23 մլն կվտ-ժամ, հանքային պարարտանյութեր՝ 1.096 տոննա, կտրող հաստոցներ՝ 37 հատ, ավտոմեքենաներ՝ 19 հատ, ցեմենտ՝ 4.845 տոննա, ամեն տեսակի կտորեղեն՝ 360.000 մետր, կաշվե կոշիկ՝ 28.600 զույգ, ժամացույցներ՝ 10.900 հատ, սառնարաններ՝ 394 հատ։ Լույս տեսնող լրագրերի տիրաժը 647.000 է։ Սովետական Հայաստանի արդյունաբերությունը թողարկում է՝ շարժական հզոր էլեկտրակայաններ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, ռադիոտեխնիկական և լուսավորող սարքեր, մետաղահատ և այլ հաստոցներ, դարբնա-մամլիչ սարքավորումներ, էլեկտրաչափիչ ճշգրիտ սարքեր։ Սովետա-

կան մեր հանրապետությունը գիտատեխնիկական առաջավոր մտքի օջախ է. նրա արտադրանքի զգալի մասը համապատասխանում է համաշխարհային ստանդարտին և արտահանվում 70-ից ավելի երկրներ: Առանձնապես զարգացած է քիմիական արդյունաբերությունը, որի տեսակարար կշիռը հանրապետության էկոնոմիկայում մեծ է:

Արմատապես վերափոխվել է մեր հանրապետության գյուղատնտեսությունը, որը խարսխված է բավարար չափով շահագործվող նորագույն տրակտորների, կոմբայնների, ավտոմեքենաների պարկի վրա: 354 սովխոզների ու 374 կոլտնտեսությունների արտադրած խաղողի, ծխախոտի, մրգերի և բանջարեղենի արդյունաբերական մշակումները (կոնյակ, պահածոներ, գինիներ, պանիր, սիգարեթներ) լավ համբավ ունեն ՍՍՀՄ-ում և արտասահմանում: Միայն անցյալ հնգամյակում իռիգացիայի նպատակով ներդրվել է 172,3 մլն ռուբլի: 1974 թ. հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը կազմել է 476 մլն ռուբլի:

Ամբողջ հանրապետությունը վաղուց ի վեր դարձել է շինարարության հրապարակ: Արդյունաբերական, գյուղական, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարությամբ վեր են խոյացել տասնյակ գեղեցիկ քաղաքներ, բազմաթիվ բարեշեն ավաններ և մեծաթիվ բնակելի շենքեր: Բավական է ասել, որ յուրաքանչյուր օր շահագործման է հանձնվում 55 նոր բնակարան:

Վերածնված հայ ժողովուրդը ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների հետ վիթխարի հասումներ ունի կուլտուրական հեղափոխության մարզում: 102 գիտական հաստատություններ՝ 15.860 գիտական աշխատողներով. սա պատկառելի ցուցանիշ է մեր հանրապետության համար: Գործում է գիտությունների ակադեմիան իր բազմաթիվ ինստիտուտներով: Այժմ 553.000 հոգի ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն: Գիտության, կուլտուրայի ու արվեստի բոլոր ճյուղերում Հայաստանի աշխատավորությունն ամեն տարի իր ծանրակշիռ լուման է մուծում: Հայաստանում տասը հազար բնակչին ընկնում է ավելի քան 215 ուսանող: Ընթացիկ ուսումնական տարում 12 բուհերում ուսանում են 53.200 հոգի, իսկ հանրակրթական դպրոցներում՝ 687.500 աշակերտ:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՏԱՐԻՆԵՐԻՆ, հատկապես մեծ Հայրենականի ընթացքում, ցայտուն կերպով դրսևորվեցին հայ ժողովրդի սովետական հայրենասիրությունը, նրա՝ սովետական սոցիալիստական կարգերին անսահման նվիրվածությունը: Սովետական եղբայրական ժողովուրդների զավակների հետ ուս-ուսի, հայ ազգի հարյուր հազարավոր որդիներ արիաբար մասնակցեցին ֆաշիզմի ջախջախման պատմական ճակատամարտերում: Պատերազմի թեժ օրերին «Պրավդա» լրագիրը (1941 թ. օգոստոսի 25) գրել է. սովետական մեծ երկրի բոլոր ժողովուրդների զավակները ուս-ուսի տված քաջաբար կռվում են հայրենիքի պաշտպանության ճակատներում: Սովետական Միության բոլոր ժողովուրդների մղած այդ ընդհանուր կռվում հայ ժողովուրդն իր հաստատուն տեղն ունի ռազմիկների մարտական շարքերում, որոնք կռվում են հանուն իրենց անկախության, հանուն իրենց ազատության:

Եվ այժմ, երբ ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը պատրաստվում է նշելու ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի 30-ամյա տարելիցը, հայ ժողովուրդը հպարտության զգացումով նորից վերհիշում ու վերաիմաստավորում է ընդհանուր թշնամու դեմ տարած հաղթանակի գործում իր ներդրած ավանդը: Մեծ Հայրենականի հերոսամարտերում ցուցաբերած սխրագործությունների համար տասնյակ հազարավոր հայ զինվորներ արժանացան շքանշանների ու մեդալների, 103 հայորդիների շնորհվեց Սովետական Միության հերոսի բարձր կոչում: Մարդկության ոխերիմ թշնամու՝ ֆաշիզմի դեմ ոտքի ելած մեծ ժողովրդի խիզախ զավակները ռազմի դաշտերում ոչ միայն պաշտպանում էին սովետական մեր մեծ հայրենիքը, այլև հատուցման իրենց պարտքն էին կատարում 1915-ի ցեղասպանության հրահրողների դեմ:

Բարձր գնահատելով սովետահայ ժողովրդի հոգևոր կերպարը, Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ սովետահայությունը «...սիրում է իր հայրենի երկիրը՝ Սովետական Սոցիալիստական Հայաստանը: Հայրենասիրությունը դա սքանչելի հատկություն է, որն ամենախորին հարգանք է ներշնչում:



Բայց եթե հայերը և մեր երկրի բոլոր ժողովուրդները ընկալեին գործի միայն մեկ կողմը, եթե նրանք խոսեին ու մտածեին միայն իրենց հանրապետության մասին, նրա քաղաքների ու դաշտերի, նրա կուլտուրայի մասին, ապա կարող էր նացիոնալիստական գիրքերը գլորվելու վտանգ առաջանալ: Հայաստանում մենք տեսանք միանգամայն այլ բան: Իրենց հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին հայերի, ինչպես որ սովետական մյուս ժողովուրդների մեջ, զուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրական ոգու հետ՝ նվիրվածությամբ ու սիրով դեպի մեր ընդհանուր մեծ սոցիալիստական հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 251):

Թևակոխելով կոմունիզմի կառուցման փուլը, Սովետական Միության բոլոր ժողովուրդներն իրենց ստեղծարար սխրանքներով կենսագործում են ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական կանխագծումները՝ հնգամյակի վերջին եզրափակիչ տարվա հոյակապ պլանները: Կոմունիստական ապագայի կերտման ընթացքում համակողմանիորեն զարգանում և ծաղկում են ՍՍՀՄ բոլոր սոցիալիստական ազգերը, որոնք գնալով ավելի են մերձենում կյանքի բոլոր ոլորտներում. նրանց բարեկամությունն ու եղբայրությունը օրենքի ուժ է ստանում և այդպիսով խթանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի զարգացմանը: Ինչ խոսք, սոցիալ-պատմական այդ պրոցեսն իր բարերար ներգործությունն է ունեցել և շարունակում է ունենալ նաև հայ ժողովրդի ողջ հոգեբանության, նրա աշխարհայացքի և նիստուկացի վրա: Ամենքս խորապես գիտակցում ենք, որ մեր հանրապետության զարգացումն ու ծաղկումը սովետական սոցիալիստական մյուս ազգերի աշխատակցության և փոխօգնության արգասիք է: Տնտեսական, քաղաքական և կուլտուրական շահերի կատարյալ ընդհանրությունն է բնորոշում սովետական ժողովուրդների այսօրվա վիթխարի առաջընթացը:

Այսօր Սովետական Հայաստանը դարձել է աշխարհի աշխատավոր ողջ հայության ազատ ու բարգավաճ հայրենիքը, որը սփյուռքահայության հուսալի հանգրվանն է: Սոցիալիզմի կառուցման տարիներին հայրենիք վերադարձան ավելի քան 230 հազար աշխատավոր հայեր: Եկան ու ձուլվեցին մայր ժողովրդի ստեղծագործ երթին և նվիրումով ու ակտիվորեն կառուցում են նոր հասարակարգը՝ կոմունիզմը:

Օրերս Հայաստանի աշխատավորները խորին գոհունակությամբ ու ոգևորությամբ ծանոթացան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի անմիջական նախաձեռնությամբ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ընդունած որոշմանը: Այն, Սովետական Հայաստանի տնտեսական և կուլտուրական ծաղկման, հայ ժողովրդի բարօրության նկատմամբ մեր կուսակցության լենինյան Կենտկոմի, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հայրական հոգատարության փայլուն դրսևորումն է, որակապես նոր փուլ է նշանավորում Հայաստանի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար և սահմանում դրանց հետագա զարգացման սկզբունքային ուղիները հանրապետության արտադրաուժերի առկա և պոտենցիալ հնարավորությունների խորապես գիտական և կոմպլեքսային հաշվառման հիման վրա:

Կասկածից վեր է, որ Հայաստանի աշխատավորները պատվով կիրագործեն պատմական նշանակություն ունեցող այդ որոշման խոստումնալի առաջադրանքները:

Պատմության քառուղիներում բզկտված ու արյունաքամ հայ ժողովուրդը 1920 թվականին փարելով լենինյան փրկարար դրոշին, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ՍՍՀՄ եղբայրական ընտանիքում, կերտեց իր շենշող հայրենիքը՝ Սովետական Հայաստանը, որը հավերժող ու հոյակապ կոթող է մեր միլիոնավոր նահատակների հիշատակին:

# ԱՌԱՋՆՈՐԴԻ ԲՈՑԱՇՈՒՆՉ ԽՈՍՔԸ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ «ԳԻՏԵԼԻՔ» ԸՆԿԵՐՈՒԹՅԱՆ հրատարակչությունը լույս է ընծայել ճանաչված փիլիսոփա-գեղագետ Հրանտ Ապրեսյանի Հեղափոխության մեծ հռետոր ուշագրավ աշխատությունը*, որը ջերմ ընդունելություն է գտել ընթերցողների լայն շրջաններում: Այս աշխատությամբ հեղինակը վերստին հաստատեց իր անմնացորդ նվիրվածությունը մեծ առաջնորդի հոգևոր ժառանգության գիտական մեկնաբանմանը: Գրքում առաջ քաշված հարցերը, բանիմաց վերլուծությունները և եզրահանգումները համահունչ են կուսակցության գաղափարական աշխատանքի արդի պահանջներին, օգնում են գաղափարական կադրերին՝ ստեղծագործաբար յուրացնելու Վ. Ի. Լենինի բազմաբեղուն գործունեության մի կարևոր բնագավառի՝ բանավիճելու արվեստի առանձնահատկությունները:

Լենինը՝ աշխատավոր զանգվածների սպասումների ու իղձերի արտահայտիչն ու թարգմանը, նրանց սոցիալական պայքարի առաջնորդը, ժողովրդական մասսաներին մշտապես հաղորդակից էր դարձնում սոցիալիստական շարժման փորձին ու տեսությանը: Այդ նպատակի իրագործման համար նա վարպետորեն օգտագործել է ժամանակի գաղափարական ներգործման բոլոր միջոցները՝ ելակետ ունենալով պատմության դիալեկտիկական-մատերիալիստական ըմբռնումը, գիտական կոմունիզմի մարքսիստական ուսմունքը:

Հասարակական մտքի պատմության մեջ ոչ մի գաղափարախոսություն այնպես խորությամբ ու գիտականորեն չի արտահայտել աշխատավոր զանգվածների շահերը, ինչպես մարքսիզմ-լենինիզմը: Նման իրողությունը պարտավորեցնում էր մարքսիստ-լենինյաններին՝ մատչելի լեզվով, հստակ ու համոզիչ աշխատավոր մարդուն պարզաբանել կյանքի ճշմարտությունը, սոցիալական ու հոգևոր խավարում դեգերող ամբոխին ցույց տալ պայքարի ուղին, հեռանկարը:

Բանվորական շարժումը, դասակարգային պայքարը նրանց առաջնորդներից պահանջում են գաղափարական զենքը միշտ պատրաստ պահել, առավել հուժկու դարձնել այն, համալրել հեղափոխական ջոկատները նորանոր համախոհներով, մերկացնել բուրժուական, հակաժողովրդական գաղափարների սնանկությունը: Միայն սոցիալական պայքարում հարստացավ ու առնականացավ հեղափոխական ուսմունքը, միայն պայքարի հորձանուտում թրծվեցին գաղափարական մարտիկները, որոնց գրավոր ու բանավոր խոսքը նպատակային է, ոգեշունչ:

Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը իրենց ստեղծած ուսմունքը դարձրին պայքարի ծրագիր, անձամբ մասնակցեցին բանվորական շարժմանը, հանդես եկան աշխատավորական զանգվածների առջև, սակայն այդ ժամանակ դեռ չէր հասունացել հրաբխի ժայթքման պահը: Նման օբյեկտիվ իրողությունը սոցիալիստական շարժման ղեկավարներից պահանջում էր դասակարգային պայքարում ավելի լայնորեն կիրառել տեսական զենքը՝ գրավոր պրոպագանդան:

* Г. З. Апресян. Великий оратор революции. О некоторых чертах и особенностях ораторского искусства В. И. Ленина, М., «Наука», 1974.



XX դարում սոցիալիստական շարժման թատերաբեմը Արևմտյան Եվրոպայից տեղափոխվեց Ռուսաստան, որտեղ սոցիալական հակասություններն իրենց բնույթով առավել սուր էին, հղի անխուսափելի բախումներով: Ռուսաստանյան իրականության մեջ սոցիալական, ազգային անտագոնիզմը դարձավ համաշխարհային իմպերիալիզմի թույլ օղակը, ուր և բարենպաստ պայմաններ ստեղծվեցին սոցիալիստական հեղափոխության համար: Իրադարձությունների արագ ընթացքը, ծավալվող դասակարգային մարտերը, հրամայաբար թելադրում էին ի հայտ բերել պայքարի նոր, առավել ակտիվ միջոցներ: Եթե տեսությունը ծանր հրետանին է, ապա հրապարակախոսությունը, բանավոր խոսքը տակտիկական այն մարտկոցներն են, որոնց անհապաղ կիրառումը հույժ կարևոր է տվյալ պահին՝ բարիկադների վրա, հանպատրաստից միտինգում, գաղափարական թշնամու հետ բանավիճելիս: Բոլշևիկ-հրապարակախոսները բանավիճելու իրենց արվեստն ու տաղանդը գործադրեցին ոչ միայն հին աշխարհը խորտակելիս, այլև հեղափոխությունից հետո, նոր կյանքի կերտման բոլոր ոլորտներում:

Լենինը՝ հեղափոխության մեծագույն հռետորը, ճարտասանության մեջ բացառիկ երևույթ է, առաջին հերթին, նրա համար, որ վարպետորեն զուգորդել է գործն ու հրապարակային խոսքը, տեսությունն ու պրակտիկան: Լենինն իր հուժկու հրապարակախոսական տաղանդը ծառայեցրեց դասակարգային պայքարում ստեղծելու և կոփելու նոր տիպի կուսակցություն, որը դարձավ մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը: Խոսքի զենքով նա անխնա պայքար էր մղում հեղափոխության հակառակորդների ու թշնամիների դեմ:

Լենինի բանավոր ու գրավոր ելույթները նրա հեղափոխական, տեսական, կուսակցական-քաղաքական և պետական վիթխարի գործունեության բաղկացուցիչ մասն են: Դրանք մեր կուսակցության, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման անգնահատելի սեփականությունն են, գաղափարական վինանոցի անսպառ աղբյուրը: Լենին-հռետորի հզոր զենքը ճշմարտությունն էր: Նա համոզում էր փաստերի ուժով, մտքի խորությամբ ու պարզությամբ: Կլարա Ցետկինը, իր հուշերում հիշատակելով Կոմինտերնի III կոնգրեսի նիստերը, նշել է այնտեղ հանդես եկած մի շարք հռետորների մասին, որոնք այդ բարդ իրավիճակում հաճախ իրար հետ վիճում էին, և նրանց փաստարկումները մերթ թվում էին անվիճելի, մերթ՝ տարակուսելի: Եվ ահա հանդես է գալիս Լենինը: «Նրա զեկուցումը,— նկատել է հեղափոխական շարժման ականավոր գործիչը,— համոզելու արվեստի կատարյալ նմուշ է, զերծ հռետորական պաճուճանքներից: Նա գործում է միայն իր հստակ մտքի ուժով, փաստարկումների անդրդվելի տրամաբանությամբ, հետևողական հստատուն դիրքորոշմամբ: Լենինը չի ուզում շլացնել, հրապուրել, նա ուզում է միայն համոզել: Նա համոզում է, դրանով իսկ գրավում»: Լենինի խոսքը հուզել է մարդկանց, նրանց մղել գործողության, պայքարի:

Մեր ժամանակի բուռն դինամիկան, սոցիալիստական հասարակության մեջ տեղի ունեցող վերափոխումները, ժողովրդի սոցիալական ու հոգևոր զարգացումն ակնհայտորեն բարձրացրել են հրապարակային խոսքի, հռետորական վարպետության պահանջները:

Արդ, բոլշևիկյան ճարտասանությունը կոչված է խորությամբ ու ճշմարտացի արտահայտելու ժամանակակից կյանքը, ակտիվ աջակցելու կոմունիստական շինարարությանը: Դրա համար անհրաժեշտ են բազմակողմանի գիտելիքներ ունեցող, բանավոր խոսքին կատարելապես տիրապետող կադրեր՝ ժողովրդական տնտեսության կառավարման, գիտության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում: Այդ դժվարին ու շնորհակալ խնդրի իրականացման գործում կարևոր է Լենինի բանավոր խոսքի, նրա հռետորական արվեստի ուսումնասիրությունը:

ՔՆՆԱՐԿԵԼՈՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՀՌԵՏՈՐԱԿԱՆ արվեստի հատկանիշներն ու առանձնահատկությունները՝ հեղինակն իր դրույթները հիմնավորում է առաջնորդի ելույթների վերլուծությամբ: Այսպես, առաջին գլխում, որը կրում է առաջնորդի 1919 թ. մայիսի 19-ի արտասանած ճառի խորագիրը, լուսաբան-

ցիալիստական պետության առանձնահատկությունները, զարգացման փուլերը:

Իր ելույթում առաջնորդը հետևողականորեն մերկացնում է բուրժուական տեսաբանների այն թյուր տեսակետը, թե պետությունը վերդասակարգային է, «համաժողովրդական»: Վլադիմիր Իլյիչը համոզիչ ապացուցում է, որ պետությունը շահագործողական հասարակարգում իշխող դասակարգի ձեռքին մեքենա է՝ ճնշելու, իր կամքը թելադրելու ընչազուրկներին, աշխատավոր դասակարգերին: Իլյիչը մասնավորապես նշում է, որ պատմական անհրաժեշտություն է շահագործողների պետության տապալումը և դրա փոխարինումը պրոլետարական նոր տիպի պետությամբ:

Դժվար է, իհարկե, վերականգնել Լենինի դասախոսության ժամանակ նրա կենդանի խոսքի ելևէջները, ինտոնացիան: Բայց տեքստից կարելի է կռահել՝ որքա՜ն այն հուզիչ է եղել, հարուստ՝ արտահայտչական երանգներով: Առաջնորդի համոզվածությունը դավանած գաղափարների ճշմարտացիության մեջ՝ նրա խոսքը դարձնում էր ավելի տպավորիչ, ավելի ներգործուն:

Հետաքրքրությամբ է ընթերցվում կոմերիտմիության III համագումարում Լենինի արտասանած ճառի հանգամանալից վերլուծությունը: Դիմելով երիտասարդությանը՝ Իլյիչը նշել է, որ նոր սերնդի հիմնական խնդիրը սովորելն է. համագումարի պատգամավորներին համոզիչ խոսքով նա ցույց է տալիս, որ միայն սովորելով կարելի է հաղորդակցվել մարդկային հանճարի նվաճումներին, ուղի հարթել պատերազմներից ու դասակարգային կռիվներից քայքայված երկրի տնտեսությունը վերականգնելու և այն քաղաքակրթության լայն ասպարեզ դուրս բերելու համար: Հին հասարակությունն անկարող է պատրաստի գիտելիքներ տալ կոմունիզմի մասին: Ուստի անհրաժեշտ է քննադատաբար վերաբերվել անցյալի ժառանգությանը: Ներկայի և անցյալի էական երևույթների կապը Լենինը դիտում էր պատմական հաջորդականության մեջ: Դրանում հռետորը տեսնում էր մարդկային կենսագործումների անընդհատությունը, առանց որի չկա այդ անհրաժեշտ կապը: Ըստ Լենինի, կոմունիստական դաստիարակությունն անքակտելի է կոմունիստական, հաճախ աննկատ, ամենօրյա ստեղծագործ աշխատանքից: Նա ունկնդիրներին ոչ թե խրատում էր, այլ զրուցում նրանց հուզող հարցերի շուրջ: Եվ, անդրադառնալով մերթ պատմությանը, մերթ՝ արդիականությանը, նա պարզաբանում էր կարևոր երևույթների էական գծերը. համոզիչ ցույց տալիս ունկնդիրներին, թե ինչ է հարկավոր անել:

Լենինի պարզ ու մատչելի ճառը լայն արձագանք գտավ պատգամավորների, հետագայում՝ սովետական միլիոնավոր պատանիների ու աղջիկների շրջանում: Այսօր էլ այն երիտասարդության կոմունիստական դաստիարակության ծրագրային փաստաթուղթն է: Առաջնորդը երիտասարդությանը սովորեցնում էր, ոգևորում, խորհուրդ տալիս:

ՀԱՋՈՐԴ ԳԼԽՈՒՄ ԼՈՒՍԱԲԱՆՎԱԾ Է ԼԵՆԻՆԻ զեկուցումը քաղլուսվարների Համառուսաստանյան II համագումարում, 1921 թ. հոկտեմբերի 17-ին: Ելույթի սկզբում հռետորը նկատում է, որ ինքը մտադիր է ոչ թե խորհուրդներ ու ցուցումներ տալ, այլ զրույցի միջոցով պարզաբանել նոր տնտեսական քաղաքականության հետ առնչվող որոշ հարցեր: Առաջնորդը հնարավոր էր համարում, որ զրույցի ժամանակ կլինեն հարցեր, այլազան կարծիքներ, ռեպլիկներ: Լսարանին դիմելով՝ նա ցանկանում էր, որ պատգամավորները խորապես գիտակցեն կուսակցության X համագումարի կանխագծած քաղաքականության իրականացման նշանակությունը: Հայտնի է, որ եղան կոմունիստներ, որոնք միանգամից չհասկացան նոր տնտեսական քաղաքականության էությունը: Ավելին, նրանց մեջ կային դժգոհներ, թերահավատներ, նույնիսկ՝ հեղափոխությունից «հիասթափվածներ»: Ակտիվացել էին օպոզիցիոներները, տարբեր խմբավորումների մասնակիցները, որոնք, ձայնակցելով բուրժուական հակասովետական պրոպագանդային, չարախնդորեն գուժում էին բոլշևիկների անկման մասին: Ինչպես միշտ՝ պայքարի ծանր պայմաններում, Լենինի խոսքն այստեղ ևս զերծ էր թերասումներից, գունազարդումից, ստվերոտ գույների խտացումից: Հռետորի վերարտադրած ռեալիստական պատկերին անհարիր



էին և՛ վարդագույն, և՛ մռայլ երանգները: Նա իրերը կոչում էր իրենց անուններով, չթաքցնելով կատարած սխալները:

Ճշմարտացի բնութագրելով երկրի տնտեսական դրությունը՝ Իլյիչը միաժամանակ անդրադարձավ սուբյեկտիվ բնույթի այն սխալներին, որոնք պատճառ հանդիսացան ստրատեգիական նահանջի համար: Կտրուկ բնութագրումներով ու գնահատություններով նա բնավ չէր չափազանցնում ստեղծված, իրոք, ծանր վիճակը: Եվ նրա հարցերը՝ ո՞վ ավելի լավ կօգտագործի ներկա դրությունը, ո՞ւմ հետևից կգնա գյուղացիությունը, ո՞վ կհաղթի այդ պայմաններում—կապիտալի՞ստը, թե՞ սովետական իշխանությունը, ամենևին ճարտասանական միտում չունեին: Նման հարցադրմամբ Լենինը լսարանին ավելի ստույգ էր ներկայացնում իրավիճակի ծանրությունը:

ՀՌԵՏՈՐԱԿԱՆ ՄՏԱՀՂԱՑՈՒՄԸ ԵՎ ԴՐԱ ՄԱՐՄՆԱՎՈՐՈՒՄԸ գլխում հեղինակը դարձյալ դիմում է առաջնորդի ստեղծագործական լաբորատորիայի նյութերին, որոնք վերլուծական նորանոր եզրահանգումների աղբյուր են: Ամենակատարյալ մտահղացում-պլանը, կոնսպեկտը չեն կարող նախատեսել այն բոլորը, ինչ հետո կասվի կենդանի խոսքում, ունկնդիրների հետ անմիջական շփման ժամանակ: Ուսումնական դասախոսության ընթացքում դասախոսը ղեկավարվում է ծրագրով և իր անհատականությունը կարող է դրսևորել ծրագրավորված նյութի յուրովի մատուցմամբ: Հրապարակային ելույթում, բանավիճելիս, անխուսափելի են հանպատրաստից մտքերը, անմիջական ստեղծագործման պահերը, որոնք տվյալ իրավիճակի արձագանքն են:

Այստեղ, անշուշտ, մեծ նշանակություն ունի Լենինի վիթխարի փորձը, որ կուտակվել էր տարիների ընթացքում, մասնավորապես դասակարգային թշնամիների դեմ մղված քաղաքական ու գաղափարական պայքարում: Ինչպես նշվեց, առաջնորդը չգերազանցված պոլեմիստ էր. դժվար է պատկերացնել պոլեմիկան, վեճը, առանց իմպրովիզացիայի, հանպատրաստի խոսքի: Հասարակական-քաղաքական պայքարը, ժամանակին ու տեղին հակառակորդին պատասխանելը կամ մերկացնելը հաճախ Լենինին հարկադրել են անմիջապես, անհապաղ հանդես գալ: Առաջնորդի հանպատրաստի ելույթները հռետորական արվեստի փայլուն նմուշներ են:

Եզրափակիչ գլխում, որը կրում է Վ. Ի. Լենինի հռետորական արվեստի ընդհանուր բնութագրման շուրջ խորագիրը, արծարծված են շարադրված հիմնական հարցերից բխող եզրահանգումները, գործնական խնդիրները:

Կոմունիստական պրոպագանդան մշտապես բխում է հասարակական կյանքի կենսաթրթիռ պրոբլեմներից, ժամանակի պահանջներից: Կոմունիստական ճարտասանությունը տոգորված է նորարարական ոգով, այժմեականության պաթոսով: Ունկնդիրներն ավելի ու ավելի իրազեկ են դառնում հասարակական կյանքի բոլոր բնագավառներում տեղի ունեցող իրադարձություններին, ուստի և մեր օրերում հրամայական անհրաժեշտություն, սոցիալական պահանջ է նորությունների մասին ընդհանրացված հրապարակային խոսքը: Այդ հարցերի շուրջ լուրջ եզրահանգումներ կան ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած գաղափարական հարցերին նվիրված փաստաթղթերում:

Ուսումնասիրությունը զերծ չէ թերություններից, բացերից: Նշենք, որ կան առանձին դատողությունների, բնութագրումների կրկնություններ, հպանցիկ պարզաբանումներ ու լրացման կարոտ մտքեր:

Գիրքն ուսանելի է, մասնավորապես, գաղափարական-պրոպագանդիստական կադրերի համար. ցանկալի է այն հրատարակել հայերեն:



# ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ 30-ԱՄՅԱԿԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

**Պ. Վ. ՄԵԼՆԻԿՈՎ**
**Անդրկովկասյան կարմրադրոշ զինվորական օկրուգի զորքերի հրամանատար, գեներալ-գնդապետ**

*ՄՈՏԵՆՈՒՄ Է ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ ԵՎ ՊԵՏՈՒԹՅԱՆ հերոսական պատմության նշանավոր հոբելյանը՝ Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության տարած հաղթանակի 30-ամյակը։*

*Այդ հաղթանակը, ինչպես նշվում է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, համոզիչ ապացուցեց աշխարհում առաջին սոցիալիստական պետության կենսունակությունն ու անխորտակելիությունը։ Դա Հոկտեմբերի ծնունդ հանդիսացող հասարակական ու պետական նոր կարգի, սոցիալիստական էկոնոմիկայի, մարքս-լենինյան գաղափարախոսության, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության, ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամության հաղթանակն է։*

*Ժողովուրդների լենինյան բարեկամությունը մեր հաղթանակի վճռական գործոններից մեկն է։ Լինելով կուսակցության լենինյան ազգային քաղաքականության մեծ նվաճումը, այն ծնվել է հեղափոխական պայքարի և քաղաքացիական պատերազմի տարիներին, զարգացել ու ամրապնդվել սոցիալիստական շինարարության ընթացքում։ Մեր թշնամիներին չհաջողվեց այդ բարեկամության ամրությունը սասանել ո՛չ զենքի ուժով և ո՛չ էլ բուրժուական գաղափարախոսության թույնով։*

*ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն իր վառ մարմնավորումն է գտնում նրանց տնտեսական, քաղաքական, կուլտուրական համագործակցության մեջ, նրանց միջև հաստատված իրավահավասարության և փոխադարձ հարգանքի, վստահության և փոխօգնության հարաբերությունների մեջ։*

*Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում՝ աշխարհի ամենաբազմազգ երկրներից մեկում, անմիջապես կյանքի կոչեց այնպիսի մի օրինաչափություն, ինչպիսին է մեր երկրի ժողովուրդների ռազմական սերտ դաշինք հաստատելու և ամրապնդելու անհրաժեշտությունը։ 1920 թ. փետրվարին Վ. Ի. Լենինը գրում էր. «...Կանգնելով իմպերիալիստական տերությունների հսկայական ճակատի դեմ, մենք, որ պայքարում ենք իմպերիալիզմի դեմ, մեզնից ներկայացնում ենք մի միություն, որ պահանջում է ամենասերտ ռազմական համախմբվածություն, և այդ համախմբվածությունը խախտող ամեն տեսակ փորձերը դիտում ենք որպես միանգամայն անթույլատրելի երևույթ,*



*որպես դավաճանություն միջազգային իմպերիալիզմի դեմ պայքարելու շահերին... Մենք ասում ենք՝ անհրաժեշտ է ռազմական ուժերի միասնություն, նահանջն այդ միասնությունից անթույլատրելի է» (Երկեր, հ. 30, էջ 413)։*

*Սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու գործում ժողովուրդների միասնության լենինյան գաղափարները դրվեցին սովետական զինված ուժերի կառուցման հիմքում։ Մեր զինվորական կազմակերպությունը, լինելով իսկական ժողովրդական իշխանության գործիք, մարմնավորում է բանվորների և գյուղացիների դասակարգային դաշինքը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, սոցիալիստական հայրենասիրությունն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմը։ Իր ողջ կառուցվածքով, նպատակներով ու խնդիրներով այդ կազմակերպությունն արտացոլում է սոցիալիստական հասարակական ու պետական կարգի բնույթը, այն հետևողականությունը, որով կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն իրականացնում են ՍՍՀՄ ժողովուրդների իրավահավասարության ու եղբայրական համագործակցության լենինյան քաղաքականությունը։*

*«Սովետական զինված ուժերի համաշխարհային-պատմական հաղթանակները քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմների տարիներին,— գրում է ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր Ա. Ա. Գրեչկոն,— ցուցադրեցին սոցիալիստական հասարակարգի անսպառ հնարավորություններն իսկական ժողովրդական զինվորական կազմակերպության ստեղծման ու ամրապնդման, բազմազգ սոցիալիստական պետության զինված պաշտպանության գործում»* (А. А. Гречко. Вооруженные Силы Советского государства. Воениздат, М., 1974 г., стр. 125—126)։

*ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԲԱԶՄԱԶԳ ՍՈՎԵՏԱԿԱՆ պետության և նրա զինված ուժերի ամրության համակողմանի ու դաժան փորձությունն էր։ Անցած պատերազմի տարիներին ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունը, որը հենվում է ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության սկզբունքների վրա, համաշխարհային-պատմական հաղթանակ տարավ ֆաշիզմի ռասսայական մարդատյաց քաղաքականության նկատմամբ։*

*Ինչպես հայտնի է, հարձակում ծրագրելով Սովետական Միության վրա, հիտլերականները մեծ հույսեր էին դնում այն բանի վրա, որ պատերազմը պառակտում ու թշնամանք կսերմանի մեր ժողովուրդների միջև։ Սակայն նրանք չարաչար սխալվեցին։ Սոցիալիստական հայրենիքին սպառնացող ահեղ վտանգը ոչ միայն չպառակտեց սովետական ժողովուրդներին, չսասանեց նրանց հավատը հաղթանակի նկատմամբ, այլև, ընդհակառակը, է՛լ ավելի համախմբեց սովետական բոլոր մարդկանց։ Մոսկվայի ու Ստալինգրադի մոտ, Հյուսիսային Կովկասում և Ուկրաինայում, Բելոռուսիայում և Մերձբալթիկայում ողջ սովետական ժողովուրդը մեկ մարդու նման կրծքով պաշտպանում էր սոցիալիստական հայրենիքը։ Իրենց հայրենիքի պատվի, ազատության ու անկախության համար, կոմունիզմի համար ֆաշիստական զավթիչների դեմ ուսուսի տված մարտնչում էին ռուսը և ուկրաինացին, լիտվացին ու կիրգիզը, բելոռուսն ու ղազախը, վրացին ու լատիշը, ուզբեկն ու մոլդավացին, տաջիկն ու հայը, ադրբեջանցին, թուրքմենն ու էստոնացին՝ երկրի բոլոր ազգությունների մարտիկները։ Մեր պետության բոլոր ազգերի ու ազգությունների ջանքերի շնորհիվ միայն 1941 թ. հունիսի 22-ից մինչև դեկտեմբերի 1-ը լրացուցիչ կերպով գործող բանակ ուղարկվեցին 291 դիվիզիա և 94 բրիգադ։ Համալրումները էին գալիս միութենական բոլոր հանրապետություններից։*

*Սոցիալիստական ազգերի՝ խաղաղ շինարարության տարիներին ամրապնդված բարեկամությունը մի անխորտակելի պատնեշ դարձավ հիտլերյան զավթիչների ճանապարհին։ «Սովետական Միության ժողովուրդների իսկական բարեկամությունը,— գրել է Մ. Ի. Կալինինը,— որ հոգածությամբ փայփայել էինք խաղաղ ժամանակ, վառ կրակով բոցավառվեց պատերազմի տարիներին և զարմացրեց արտասահմանում ոչ միայն մեր թշնամիներին, այլև բարեկամ-*

ներին։ Այդ բարեկամությունը կոփվեց պատերազմական ծանր փորձություններում» (М. И. Калинин. О коммунистическом воспитании и воинском долге. М., Воениздат, 1958, стр. 588)։

Սովետական ժողովուրդը հաղթանակի հասավ, անցնելով դժվարին, բայց հերոսական ուղի լենինյան կուսակցության՝ թշնամու դեմ տարած հաղթանակի ոգեշնչողի ու կազմակերպչի փառապանծ դրոշի ներքո։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա ստեղծված կոմունիստական կուսակցությունն էր, որ մասսաների շրջանում տարած կազմակերպչական ու դաստիարակչական իր անխոնջ գործունեությամբ մեր երկրի բոլոր ժողովուրդներին ու ազգություններին միավորեց եղբայրական մի համերաշխ ընտանիքի մեջ։ Նա կոփեց սովետական հասարակության բարոյաքաղաքական միասնությունը, որը դարձավ թշնամու դեմ տարած հաղթանակի վճռական գործոններից մեկը։

Կուսակցության լավագույն զավակները մեկնեցին կարմիր բանակ և ռազմա-ծովային նավատորմ, կարևորագույն ու վճռական տեղամասեր։ Զինված ուժերի շարքերը մեկնեցին Ռուսաստանյան Ֆեդերացիայի հարյուր հազարավոր կոմունիստներ։ Ուկրաինայի 565 հազար կոմունիստների գրեթե երկու երրորդը ռազմաճակատ գնաց պատերազմի առաջին իսկ ամիսներին։ Միայն 1941 թ. Ադրբեջանի կուսակցական կազմակերպությունը ռազմաճակատ ուղարկեց 39 հազար կոմունիստների։ Հայաստանի կոմկուսը, որի կազմում պատերազմի սկզբին կար 36.849 կոմունիստ, պատերազմի առաջին երեք տարում կարմիր բանակ ուղարկեց կուսակցության 20 հազար անդամների։ Կռվելով առաջին շարքերում, կոմունիստները ցույց էին տալիս հերոսության և անձնազոհության օրինակներ։ Նրանք բացառիկ դեր կատարեցին զորքերի մարտական ոգին, տարբեր ազգությունների զինվորների ռազմաճակատային բարեկամությունն ամրապնդելու գործում։

Ռազմաճակատում և թիկունքում կոմունիստները պարզաբանում էին Հայրենական պատերազմի արդարացի բնույթը, մերկացնում թշնամու՝ մեր հայրենիքը ստրկացնելու պլանները։ Առանձնահատուկ տեղ էր տրվում սովետական ժողովուրդների բարեկամության և հայրենասիրության, նրանց մարտական դաշինքի նշանակության պրոպագանդմանը, ֆաշիստական օկուպանտների նկատմամբ խոր ատելության ոգով դաստիարակմանը։

Մեծ ուշադրություն էր նվիրվում տարբեր ազգությունների մարտիկների հետ տարվող աշխատանքին, որն իրականացվում էր մայրենի լեզվով։ ԲԳԿԲ-ի Գլխավոր քաղաքական վարչության 1942 թ. սեպտեմբերի 17-ի ցուցումների համաձայն, շատ բան արվեց ագիտատորների, պրոպագանդիստների, կուսակցական-քաղաքական աշխատողների ազգային կադրեր ընտրելու նպատակով։ Հրամանատարները, քաղաշխատողները ձգտում էին հնարավորին չափ լրիվ հաշվի առնել կարմիրբանակայինների ազգային առանձնահատկությունները, սովորույթներն ու ավանդույթները։

Մարտիկների ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում մեծ աշխատանք էին կատարում այդ նպատակով ռազմաճակատներում ստեղծված դասախոսների ու զեկուցողների արտահաստիքային կոլեկտիվները։ Այսպես, Անդրկովկասյան ռազմաճակատի քաղվարչությանը կից 1943 թ. սկզբին ստեղծվել էր մի կոլեկտիվ, որի մեջ մտնում էին 350 լավագույն պրոպագանդիստներ, ագիտատորներ, կուսակցական աշխատողներ, գիտնականներ, Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի ժողովրդական տնտեսության առաջավոր մարդիկ։

ՄԻԼԻՈՆԱՎՈՐ ՄԱՐՏԻԿՆԵՐԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՈԳԻՆ բարձրացնելու, հայրենասիրության կրակը նրանց սրտերում նոր ուժով բորբոքելու գործում վիթխարի դեր կատարեցին մեր հանրապետությունների ժողովուրդների նամակներն իրենց ռազմաճակատային զավակներին։ Պատերազմի մասնակիցները լավ են հիշում այդ բոցաշունչ ուղերձները, որոնք այսօր էլ հնչում են որպես ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրության ու բարեկամության հիմն, որպես նրանց սիրո ու հարգանքի առհավատչյա այն մարտիկների նկատմամբ, ովքեր իրենց հարազատ հողն էին պաշտպանում նենգ թշնամուց։



Առաջին նամակը ռազմաճակատ ուղարկեցին Ուզբեկստանի աշխատավորները։ Այն հրապարակվեց 1942 թ. հոկտեմբերի 31-ին։ Այնուհետև իրենց ճակատային հայրենակիցներին նամակներով դիմեցին Ղազախստանի, Հայաստանի, Կիրգիզիայի, Թուրքմենիայի, Ադրբեջանի, Վրաստանի և մյուս հանրապետությունների աշխատավորները։

Ահա, օրինակ, ինչ էին գրում հայ մարտիկներին Հայաստանի աշխատավորները. «Մեր ավագ եղբայր՝ ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, եղբայր ժողովուրդների զավակների հետ ձեռք-ձեռքի տված մարտնչեցեք թշնամու դեմ, ռազմաճակատներում ամրապնդեցեք անխախտ բարեկամությունն ու եղբայրությունը... Միայն դեպի արևմուտք ընթանալով, դուք կարագացնեք ձեր հաղթական վերադարձը հայրենի տուն, հարազատ Հայաստան»։

Բանակի բազմազգ անձնակազմի բարեկամությունը, նրա մարտական համախմբվածությունը դրսևորվում էին Հայրենական մեծ պատերազմի բոլոր մարտերում։ Նրանք, ովքեր անցել են ռազմի ճամփաներով, կարող են սովետական մարտիկների արիության, իսկական բարեկամության ու եղբայրության հազարավոր օրինակներ վկայակոչել։ Ահա դրանցից մի քանիսը։

Ավելի քան երեսուն ազգությունների ռազմիկներ պաշտպանում էին Բրեստի ամրոցը։ Մոսկվայի մոտ տեղի ունեցած ճակատամարտում ռուս մեծ ժողովրդի զավակների հետ անձնվիրաբար մարտնչում էին ուրիշ ազգությունների մարտիկներ։ Մայրաքաղաքը պաշտպանող զորքերի հրամանատարներ են եղել ռուս Գովորովը, լեհ Ռոկոսովսկին, բելոռուս Դովատորը, օս Պլիեր, վրացի Ջանջիբաձեն, հայ Մարտիրոսյանը, լատիշ Պաեգլեն, ադրբեջանցի Ասլանովը, թուրքմեն Գելդիևը և ուրիշ շատ փառաբանված հրամանատարներ։

Ժողովուրդների բարեկամության վիթխարի ուժը ցուցադրվեց Ստալինգրադյան ճակատամարտում։ Քաղաքի համար մղված մարտերի ահեղ օրերին Ստալինգրադյան ռազմաճակատի մարտիկները գրում էին. «Մենք այստեղ՝ մերձվոլգյան տափաստաններն ենք եկել մեր մեծ հայրենիքի բոլոր ծայրերից՝ ռուսական անեզր հարթավայրերից, ուկրաինական դաշտերից, Բելոռուսիայի անտառներից, Կովկասի լեռներից, հեռավոր Սիբիրից... Մենք այստեղ ենք եկել սովետական երկրի տարբեր ծայրերից, բայց, պաշտպանելով Ստալինգրադը, մեզնից յուրաքանչյուրը գիտի, որ այստեղ ինքը պաշտպանում է իր հայրենիքը, իր ընտանիքը, իր ժողովուրդը»։ Բազմազգ սովետական բանակի մարտական եղբայրության վառ դրսևորման օրինակ տվեց 13-րդ գվարդիական հրաձգային դիվիզիայի մարտիկների խումբը, որը «Պավլովի տանը» դիմացավ հիտլերականների գրեթե երկամսյա պաշարմանը։ Ամբողջ-տան պաշտպաններից էին ռուսներ Պավլովը, Ալեքսանդրովը, Աֆանասևը, Վորոնովը, Չեռնոգոլովին, ուկրաինացիներ Գլուշչենկոն, Սաբգայդան, Դեմչենկոն, Դովժենկոն, վրացիներ Մոսիաշվիլին և Ստեփանոշվիլին, թաթարներ Ռամազանովը և Շկուրատովը, ղազախ Մուրզաևը, հայ Հովակիմյանը, ուզբեկ Տուրգունովը, տաջիկ Տուրդիևը, աբխազ Սուկբան։ Այդ տան պատերի տակ ֆաշիստները կորցրին ավելի շատ զինվոր, քան Փարիզի գրավման ժամանակ։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ անսասանության յուրօրինակ քննություն էր Կովկասի համար մղված մարտը։ Վտանգի ահեղ ժամին Կովկասի ժողովուրդների զավակներն ու դուստրերն ավելի համախմբվեցին կուսակցության շուրջը, ամրապնդեցին անխախտ բարեկամությունը ռուս ժողովրդի և ՍՍՀՄ մյուս ժողովուրդների հետ։ Թբիլիսի քաղաքում Անդրկովկասի ժողովուրդների հակաֆաշիստական միտինգում ընդունված դիմումի մեջ ասված էր. «Աշխարհում չկա և ոչ մի ուժ, որը կարողանա բաժանել Անդրկովկասի ժողովուրդներին, նրանց կտրել ռուս մեծ ժողովրդից... Մենք անմատչելի բնագծերի կվերածենք լեռնային ամեն մի կածան, ամեն մի կիրճ, որտեղ թշնամուն ամենուրեք անխուսափելի մահ է սպասում»։

Անդրկովկասի ռազմաճակատի մարտիկները՝ ռուսներն ու ուկրաինացիները, վրացիներն ու բելոռուսները, ադրբեջանցիներն ու հայերը, ղազախներն ու օսերը, մեր երկրի շատ ժողովուրդների ներկայացուցիչներ, արիաբար մարտնչում էին Կովկասի նախալեռներում, Կովկասյան գլխավոր լեռնաշղթայի

լեռնանցքներում: Նրանց միասնությունն ու մարտական եղբայրությունը դրսևորվում էր ամեն օր՝ թեժ գոտեմարտերում և մարտական սխրանքներում:

Մալգոբեկի մոտ անօրինակ սխրանք կատարեց «ԿՎ» ծանր տանկերի վաշտի հրամանատար Վ. Պետրովը: Չորս տանկով նա մարտի մեջ մտավ թշնամու 60 տանկերի դեմ: Իր հրամանատարական «Ալեքսանդր Նևսկի» մեքենայով նա շարքից դուրս բերեց 14 տանկ, ոչնչացրեց մոտ մի վաշտ զինվոր: Օգտագործելով թեւային հարմար դիրքերը, դարանները, հանկարծակի հարվածները, Պետրովի տանկիստները խփեցին գերմանական 35 տանկ, իսկ մյուսներին ստիպեցին նահանջել: «Թշնամուն հարվածել Սովետական Միության Հերոս Պետրովի նման»՝ այս լոզունգը չի մոռացել նաև անդրկովկասցի տանկիստների այսօրվա սերունդը:

Ազով քաղաքից 50-ամյա կամավոր, ավագ Լ. Կոնդրատևը ձեռքի նռնակները նետեց թշնամու դզոտի վրա, որը փորձում էր կասեցնել մեր գրոհը: Բայց դզոտը կրկին աշխուժացավ: Այդ ժամանակ Կոնդրատևը իր մարմնով ծածկեց դիտանցքը: Մի քանի օր հետո նրա սխրանքը կրկնեց քաղդեկ Ս. Կիրիչենկոն:

Նախկին երկրաբան, քաղղեկ Վ. Կանկավան, գլխավորելով հատուկ ջոկատը, լեռնանցքում փակեց հակառակորդի 17 տանկերի ճանապարհը: Հակատանկային հրացանով նա խփեց երեք մեքենա:

Ծովային հետևակի գումարտակի կոմերիտական Կաֆուր Մամեդովը մարտերից մեկում ոչնչացրեց 13 հիտլերական, նրանց ականանետը, իսկ հետո իր կյանքի գնով փրկեց վաշտի հրամանատար Սինեցկուն ֆաշիստական սնայպերի գնդակից:

Գիզելի մոտ տեղի ունեցած մարտերից մեկում էսկադրիլիայի հրամանատարի՝ քաղաքական գծով տեղակալ, կապիտան Ս. Մկրտումյանի ինքնաթիռի վրա գրոհեցին թշնամու վեց կործանիչներ: Վարպետորեն մանևրելով, Սամսոնը ցած գցեց մեկ ինքնաթիռ, իսկ մյուսը հրդեհեց: Այդ կռվում նա ստացավ վեց վերք, բայց մարտը վարեց այնքան ժամանակ, մինչև որ սկսեց այրվել իր ինքնաթիռը: Խիզախ օդաչուն շլքեց բոցավառվող մեքենան և, հավաքելով վերջին ուժերը, բացառիկ վարպետությամբ վայրէջք կատարեց յեռան լանջին: Անվեհեր ու հմուտ օդաչուին շնորհվեց Սովետական Միության Հերոսի բարձր կոչում:

Կովկասի համար մղված մարտերում, ինչպես նաև այլ կռիվներում, բոլոր ազգությունների ռազմիկները միմյանց հետ կիսում էին անասելի դժվարությունները, միասին վաստակում զինվորի փառքը, չխնայելով ո՛չ ուժերը և ո՛չ էլ կյանքը: Անդրկովկասյան ռազմաճակատի պարծանքն ու ֆաշիստների սարսափն էին սնայպերներ Պրոսկուրինը, Երալիևը, Շաշինը, Մենադարիշվիլին, Մեջիդովը, Պողոսյանը և շատ ուրիշներ:

Ահա ինչ էին գրում Լենինգրադյան ռազմաճակատի ռազմիկները անդրկովկասցի սնայպերների մասին: «Լենինգրադյան ռազմաճակատի զորամասերում և ստորաբաժանումներում սիրում և հարգում են սնայպերներ, եֆրեյտոր Հասանովին, ավագ Զաքարյանին, կրտսեր սերժանտ Կոբախիձեին, որոնք, պաշտպանելով Լենինի քաղաքը, բարձր են պահում Վրաստանի, Հայաստանի և Ադրբեջանի ազատասեր ժողովուրդների պատիվը» («Боец РККА», 8. 1. 1944):

Արհամարհելով մահը, թշնամու տանկերի թրթուրների տակ են նետվել սերժանտ Խոմյակովը և կարմիրբանակային Իսագուլովը, իրենց կյանքը միասին զոհեցին մարտիկներ Տերեշչենկոն և Մկրտումյանը՝ թշնամու գնդակից փրկելով գումարտակի հրամանատար Վոստրիկովին, Մարուխյան սառցադաշտերում մինչև մահ դիմադրեցին ականանետների անձնակազմի անդամներ Տուչկովն ու Կարտոզիան, Իվանչենկոն և Ռոզենբերգը:

Այդպես էին մարտնչում անդրկովկասցի մարտիկները: Այդպես էին կռվում սովետական բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները, պաշտպանելով Կովկասը:

Սովետական զինված ուժերի կազմում ֆաշիստական զավթիչներին ջախջախում էին պատերազմի տարիներին ստեղծված ազգային միավորումները: Հիմնականում Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի, Ղազախստանի, Լատվիայի, Լիտվայի, Տաջիկստանի, Թուրքմենիայի, Ուզբեկստանի և Էստոնիայի մարդկային ռեսուրսների հաշվին կազմվել էր ավելի քան 80 դիվիզիա և բրիգադ: Իրենց անուններն անմոռաց փառքով պսակեցին Անապայի 416-րդ հրաձգային կարմրադրոշ դիվիզիան, Տագանրոգի 416-րդ հրաձգային կարմրադրոշ, Սուվորովի շքանշանակիր դիվիզիան, Թամանյան 89-րդ հրաձգային կարմրադրոշ, Կուտուզովի և Կարմիր աստղի շքանշանակիր դիվիզիան, Բելգրադի 223-րդ հրաձգային կարմրադրոշ դիվիզիան, Կիրովոգրադ—Բրատիսլավայի 409-րդ հրաձգային, Բոգդան Խմելնիցկու շքանշանակիր դիվիզիան, Կրիվոյ-Ռոգի 394-րդ հրաձգային կարմրադրոշ դիվիզիան և շատ ուրիշներ:

Բազմաթիվ ժողովուրդների զավակներ արիաբար մարտնչում էին պարտիզանական ջոկատներում: Այսպես, Ս. Ա. Կովպակի հրամանատարությամբ գործող ուկրաինական պարտիզանական միավորման մեջ ներգրավված էին երկրի ավելի քան 40 ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ:

Սովետական ժողովուրդների մարտական եղբայրության, նրանց զավակների ու դուստրերի արիության ու խիզախության վառ վկայությունն է այն նշանակալից փաստը, որ պատերազմի տարիներին Սովետական Միության հերոսի կոչման արժանացած զինծառայողների թվում կան հարյուր ազգությունների ներկայացուցիչներ:

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, բարեկամությունն ու միասնությունը զարգանում և ամրապնդվում էին ոչ միայն ֆաշիստական ագրեսորների դեմ մղված պայքարի ճակատում, այլև աշխատանքային ճակատում: Կոմունիստական կուսակցությունը կարողացավ կարճ ժամանակամիջոցում մոբիլիզացնել թիկունքը և ամբողջ ժողովրդական տնտեսությունն արմատապես վերակառուցել պատերազմի պահանջներին համապատասխան:

Մեր հայրենիքի համար ամենավտանգավոր ժամանակաշրջանում ռազմաճակատի մատակարարման հիմնական ծանրությունն ընկել էր արևելյան շրջանների, այդ թվում Միջին Ասիայի, Անդրկովկասի հանրապետությունների և Ղազախստանի վրա: Այսպես, պատերազմի տարիներին Ադրբեջանը տալիս էր ամբողջ երկրում արդյունահանվող նավթի ավելի քան 70 տոկոսը: Բաքվի մի շարք գործարաններ վերակառուցվել էին սպառազինություն և զինամթերք արտադրելու համար: Վրաստանում կրկնապատկվել էր արտադրանքի թողարկումը մեքենաշինական և մետաղամշակման ձեռնարկություններում: Հայաստանի ձեռնարկությունները յուրացրել էին պաշտպանական արտադրանքի ավելի քան 30 նոր տեսակների արտադրությունը:

Կարելի է բազմաթիվ փաստեր բերել, որոնք վկայում են թիկունքում տարբեր հանրապետությունների աշխատավորների բարեկամությունն ու փոխօգնությունը պատերազմի տարիներին: Ահա դրանցից մեկը: Հայաստանում, Ալավերդու ծծմբաթթվի գործարանում բանվորները մեկ ամսում կառուցեցին հատուկ սարքավորում, որի արտադրանքն ուղարկվում էր Թբիլիսիի ձեռնարկությունները՝ Շպագինի ատրճանակ-գնդացրի փողանցքը քրոմավորելու համար: Իսկ Ադրբեջանի աշխատավորները Ալավերդու ծծմբաթթվի գործարանի համար առաքում էին պղպատի և չուգունի ձուլվածք:

Հաղթահարելով պատերազմի հետևանքով ստեղծված մեծ դժվարությունները, կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորներն անում էին հնարավոր ամեն բան՝ հոգալու ռազմաճակատի և թիկունքի կարիքները: Անձնուրաց էին աշխատում գիտության, արվեստի, կուլտուրայի գործիչները, սովետական ողջ ինտելիգենցիան:

Երկրում ծավալվել էր ռազմաճակատին համակողմանի օգնություն ցույց տալու հայրենասիրական շարժում: Տամբովի մարզի աշխատավորները հանդես եկան «Տամբովի կոլտնտեսական» տանկային շարասյուն ստեղծելու նախաձեռնությամբ: Նրանց օրինակին հետևեցին միութենական շատ հանրապետությունների աշխատավորներ:

Բոլոր հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի աշխատավորները անհատույց պետությանն էին հանձնում իրենց խնայողություններն ու

թանկարժեք իրեր, տաք հագուստ ու նվերներ հավաքում ռազմաճակատի համար: Հայկական ՍՍՀ Ավան, Ագարակ, Ծաթղռան և այլ գյուղերում, ինչպես այն ժամանակ թերթերն էին գրում, տնային տնտեսուհիներն իրենց նախաձեռնությամբ կազմակերպել էին կոլեկտիվներ՝ տաք սպիտակեղեն և տաք բաճկոններ կարելու համար: Պատերազմի չորս տարում մեր երկրի աշխատավորները «պաշտպանության ֆոնդի» օգտին մուծել են 118 մլրդ ռուբլի:

Մեր մեծ հայրենիքի բոլոր ազգերն ու ազգությունները արժանի ավանդ ներդրեցին գերմանա-ֆաշիստական հրոսակախմբերի ջախջախման գործում: «Եթե խոսելու լինենք Հայրենական մեծ պատերազմի գլխավոր հերոսի մասին,— նշում է Լ. Ի. Բրեժնևը,— ապա այդ անմահ հերոսը մեր երկրում ապրող և եղբայրության անխախտ կապերով զոդված ժողովուրդների ամբողջ համերաշխ ընտանիքն է» (Լենինյան կուրսով, հ. 1, էջ 184):

Միասնական սովետական հայրենիքի զավակներն ու դուստրերը ոչ միայն պատվով պաշտպանեցին իրենց սոցիալիստական նվաճումները, այլև համաշխարհային քաղաքակրթությունը փրկեցին ֆաշիստական բարբարոսությունից, դրանով իսկ վիթխարի աջակցություն ցույց տալով մյուս երկրների ժողովուրդների ազատագրական պայքարին:

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՄՏԵԼ Է որպես համաժողովրդական պատերազմ: Մեծ Հայրենականի բոլոր չորս տարիներին, քանի դեռ երկիրը դղրդում էր թնդանոթների համազարկերից, չկար սովետական մի մարդ, որն իր ուժերը չծառայեցներ ֆաշիստական ագրեսորների ջախջախման գործին, անկախ այն բանից՝ ընթացե՞լ է նա հարձակվող զորքերի առաջին շարքերում, թե վիրավոր մարտիկներ է դուրս բերել կռվի դաշտից, գրահ է կոփել տանկերի համար, թե հացահատիկ աճեցրել…

Պատերազմում ուժեղ և նենգ հակառակորդի նկատմամբ նվաճված մեծ հաղթանակը ցույց տվեց ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծ, անհաղթելի ուժը. այն համոզիչ հաստատեց նոր տիպի բանակի՝ սոցիալիստական պետության իսկական ժողովրդական բազմազգ բանակի մասին լենինյան գաղափարների կենսունակությունը:

Պատերազմի բովում կոփվեց նաև շատ երկրների ժողովուրդների մարտական բարեկամությունը: Սովետական մարտիկների հետ ուս-ուսի՝ ֆաշիզմի դեմ մարտնչում էին լեհական զորքի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի ժողովրդա-ազատագրական, Ալբանիայի պարտիզանական բանակների զինվորներն ու սպաները, իսկ պատերազմի վերջերին՝ նաև բուլղարական, ռումինական և հունգարական զորքերը:

Եղբայրական բանակների սրբազան դաշինքը, որը ծնվեց ընդհանուր թշնամու դեմ մղված մարտերում և ամրացավ հետպատերազմյան շրջանում, ինտերնացիոնալիզմի գաղափարների կենդանի մարմնացումն է: Այն ամենը, ինչ թանկ է ու սրբազան աշխատավորների համար՝ դասակարգային համերաշխությունը, ժողովուրդների բարեկամությունն ու փոխադարձ վստահությունը, ընդհանուր ջանքերով իրենց նվաճումները պաշտպանելու ձգտումը, դարձել է Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների սոցիալիստական բանակների մարտիկների նշանաբանը: «Վարշավայի պայմանագիրը,— նշել է ՍՍՀՄ պաշտպանության մինիստր Ա. Ա. Գրեչկոն,— եղբայրական ժողովուրդների, սոցիալիստական երկրների մարքս-լենինյան կուսակցությունների պատմական ստեղծագործության արդյունքն է: Դա սոցիալիզմի պաշտպանության մասին լենինյան ուսմունքի նոր հաղթանակն է, մի խոշոր քայլ նրա հետագա զարգացման գործում» («Красная Звезда», 29.1.1975 г.):

ՍՍՀՄ բազմազգ զինված ուժերը դաժան փորձություններից դուրս եկան էլ ավելի կոփված: Յուրացնելով կուտակված փորձը՝ նրանք այսօր էլ շարունակում են կատարելագործել իրենց մարտական պատրաստությունը: Այդ պրոցեսը տեղի է ունենում ողջ երկրի զարգացմանն ու ամրապնդմանը, գիտության ու տեխնիկայի աննախադեպ առաջընթացին զուգընթաց:

Բազմազգ սովետական ժողովրդի հերոսական ջանքերն ուղղված են



ՍՍՀՄ-ում զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցմանը: Երկրում ստեղծվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը: Տեղի է ունենում սոցիալիստական բոլոր հանրապետությունների մերձեցում, հետզհետե ավելի որոշակի է դրսևորվում մեր սովետական կյանքի ինտերնացիոնալացման օբյեկտիվ պրոցեսը: Դասակարգերի և սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների միջև անշեղորեն ամրապնդվում են բարեկամությունն ու համագործակցությունը: Իսկ այդ նշանակում է, որ շարունակ ամրանում են ՍՍՀՄ զինված ուժերի հզորության անսասան հիմքերը:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԸ ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԻ ՄԱՍՆ Է, որը նրա հետ ապրում է մեկ կյանքով: Այնտեղ ծառայում են մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների ներկայացուցիչները: Եվ ինչ ազգության էլ պատկանի սովետական զինվորը, նա ամենից առաջ հպարտ է, որ ինքը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ Միության քաղաքացին է, նրա զինված պաշտպանը: «Սովետական Հանրապետությունների Միությունը,— գրել է Մ. Վ. Ֆրունզեն,— տարբեր ազգությունների աշխատավորների դաշինքն է: Կարմիր բանակը, որ նրա արտացոլումն է, ազգային բանակ չէ. նա նույնպես դաշինք է, բայց մարտական դաշինք, ուր մեր բոլոր սովետական հանրապետությունների աշխատավորներն իրենց զավակներին են ուղարկում՝ ռազմական գործը սովորելու և ձեռք-ձեռքի տված, միասնական ու համերաշխ, պատնեշի նման կանգնելու սովետական հողի պաշտպանության դիրքերում» (М. В. Фрунзе. Избр. произв., т. II, М., Воениздат, 1957, стр. 194):

Անդրկովկասյան կարմրադրոշ զինվորական օկրուգի զորքերում ծառայում են 70-ից ավելի ազգությունների զավակներ: Եվ յուրաքանչյուր զորամաս, յուրաքանչյուր ստորաբաժանում մի կուռ մարտական կոլեկտիվ է, որտեղ իշխում է հարգանքի, վստահության և փոխօգնության մթնոլորտ: Մեր հայրենիքի հարավային սահմանների պաշտպանների, ինչպես և սովետական բոլոր մարտիկների համար ժողովուրդների լենինյան բարեկամությունը, նրանց միասնությունն ու համախմբվածությունը արիության, զինվորական պարտքի նկատմամբ նվիրվածության անսպառ աղբյուր են:

Կուսակցության ղեկավարությամբ բոլոր միութենական հանրապետություններում, այդ թվում և Անդրկովկասում մեծ աշխատանք է տարվում ժողովրդին, հատկապես երիտասարդությանը ռազմա-հայրենասիրական ոգով դաստիարակելու համար: Այդ աշխատանքն ավելի մեծ թափ ստացավ Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության տարած հաղթանակի 30-ամյակի նախապատրաստության ընթացքում: Մեր երիտասարդությունը, սովետական բոլոր մարդիկ դաստիարակվում են ՍՍՀՄ զինված ուժերի հերոսական ավանդույթների, սոցիալիստական հայրենասիրության ոգով, սովետական բանակի նկատմամբ սիրո և հարգանքի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ոգով:

Մեծ ուշադրություն է դարձվում ռուսաց լեզվի ուսումնասիրմանը. այն դարձել է Սովետական Միության բոլոր ազգերի ու ազգությունների փոխադարձ հաղորդակցման միջոց և ընդհանուր ճանաչում գտած համաշխարհային լեզուներից մեկը: Զինված ուժերում դա կարևոր է նաև մարտական ու քաղաքական պատրաստության տեսակետից:

Կոմունիստական կուսակցությունը բոլոր աշխատավորներին անխոնջ դաստիարակում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային սահմանափակության ու սնապարծության դրսևորումների նկատմամբ անհաշտելիության, բոլոր ազգերի ու ազգությունների նկատմամբ խոր հարգանքի ոգով: Նա հարձակողական ակտիվ պայքար է մղում իմպերիալիզմի ու նրա գաղափարախոսական դիվերսանտների դեմ, որոնք փորձում են սովետական մարդկանց շրջանում տարածել բուրժուական նացիոնալիզմի թունոտ գաղափարները:

Կոմունիստական կուսակցության շուրջը սերտ համախմբված, հայրենիքին, կոմունիզմի վեհ իդեալներին անսահման նվիրված ՍՍՀՄ զինված ուժերի մարտիկները միշտ կազմ ու պատրաստ, աչալրջորեն պաշտպանում են կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի խաղաղ ստեղծագործ աշխատանքը:

# ԱՆՍԱՍԱՆ ԹԻԿՈՒՆՔ

**Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

Ինչպես հարկն է պատերազմ մղելու համար անհրաժեշտ է կազմակերպված ամուր թիկունք:

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի տարած պատմական հաղթանակը ողջ աշխարհին համոզիչ ապացուցեց սովետական պետության, սոցիալիստական հասարակարգի, ՍՍՀՄ զինված ուժերի կենսունակությունն ու անպարտելիությունը, մեր հայրենիքի ժողովուրդների բարեկամության ու համագործակցության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության, սովետական մարդկանց բարոյա-քաղաքական միասնության հզոր ուժը։ Գերմանական ֆաշիզմի կողմից Սովետական Միությանը ուխտադրժորեն պարտադրված պատերազմը համաշխարհային իմպերիալիզմի հարվածային ուժերի ամենախոշոր զինված արշավանքն էր սոցիալիզմի, մեծ Հոկտեմբերի նվաճումների դեմ, այն ամենածանր փորձություններից մեկը, որ երբևիցե տեսել էր լենինիզմի հայրենիքը։*

ՀԱՆՈՒՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ *նշանաբանով կենաց ու մահու կռվի ելավ մեր բազմազգ ժողովուրդը։ Սովետական հայրենասիրությունը, որ նոր, բարձր որակ է, իր վիթխարի ուժը մինչ այդ փայլուն կերպով դրսևորել էր Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության բարիկադների վրա, քաղաքացիական կռիվների ճակատներում, Խալխին-Գոլի ու Խասան լճի մոտ, սպիտակ ֆինների դեմ մղված կռիվներում... սոցիալիստական մեծ վերափոխություններում։ Վ. Ի. Լենինը բարձր գնահատելով պատմության իսկական կերտողի՝ ժողովրդի նվիրվածությունը սոցիալիստական հայրենիքին, աշխատավոր մասսաների գիտակցականության և հայրենասիրության մեջ էր տեսնում նոր հասարակարգի ուժի և անպարտելիության գրավականը։ «Երբեք չեն հաղթի այն ժողովրդին,— 1919 թ. ապրիլի 16-ին Մոսկվայի հանգույցի երկաթուղայինների կոնֆերանսում ասել է մեծ առաջնորդը,— որի մեջ բանվորներն ու գյուղացիներն իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակն իրենց և իրենց զավակների համար կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր ստեղծագործություններից օգտվելու հնարավորությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 29, էջ 386)։*

*Հայրենական մեծ պատերազմի տարիներին անկրկնելի սխրանքներ գործեցին հերոսական բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, սովետական մտավորականությունը։ Անձնվեր աշխատանքով նրանք սովետական ռազմիկների հետ զոր ու գիշեր կոփում էին պատմական հաղթանակը։ Սովետական ժողովրդի մի ձեռքում սուրն էր, մյուսում՝ մուրճը. երկիրը և՛ մարտնչում էր, և՛ կառուցում։ Կոմունիստական կուսակցությունը, ղեկավարվելով Վ. Ի. Լենինի պատգամներով, սոցիալիստական շինարարության խաղաղ տարիներին վերականգնել էր ժողովրդական տնտեսությունը, հաջողությամբ իրականացրել արդյունաբերության սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը, լիովին լուծել ազգային հարցը։ Հնգամյակների հերոիկայում ամրապնդվել էր երկրի ռազմա-քաղաքական հզորությունը։ Երբ 1941 թ. հունիսի 22-ին հիտլերյան Գերմանիան ուխտադրժորեն հարձակվեց ՍՍՀՄ-ի վրա, սովետական բազմազգ ժողովուրդը մեկ մարդու նման ոտքի ելավ ընդդեմ ֆաշիզմի։ Կոմունիստական կուսակցության կոչով սովետների երկիրը փոխադրվեց ռազմական ռելսերի վրա, ողջ աշխատանքն անհապաղ վերակառուցվեց ռազմական ձևով, ամեն ինչ ծառայեցվեց ռազմաճակատի շահերին, ֆաշիզմի ջախջախմանը։ Հայրենիքը աշխատանքային ճակատ ուղարկեց թիկունքի աշխատունակ բոլոր ուժերը։*

*Արձագանքելով կուսակցության՝* «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» *մարտակոչին, սովետական մարդիկ քաղաքներում և գյուղերում, արդյունաբերական ձեռնարկություններում և տրանսպորտում, ամենուրեք, որտեղ դարբնվում էր թշնամու դեմ հաղթանակի զենքը, նորանոր սխրանքներ էին գործում։*

*Պատերազմի առաջին իսկ օրերից լենինյան կուսակցությունը վիթխարի աշխատանք ծավալեց թշնամուն հակահարված տալու համար։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմը և ՍՍՀՄ Ժողկոմսովետը 1941 թ. հունիսի 23-ի որոշման մեջ սահմանեցին կուսակցական և սովետական մարմինների խնդիրները՝ պատերազմական պայմաններում, իսկ հունիսի 29-ի որոշումը լիովին տոգորված էր 1918 թ. փետրվարի 21-ին Վ. Ի. Լենինի գրած «Սոցիալիստական հայրենիքը վտանգի մեջ է» նշանավոր դեկրետի ոգով։ Ռազմաճակատի և թիկունքի գործողությունները կոորդինացնելու, բոլոր ուժերը մոբիլիզացնելու, թշնամու ջախջախումը կազմակերպելու նպատակով հունիսի 30-ին ստեղծվեց Պաշտպանության պետական կոմիտե, որը, իշխանությունն ամբողջովին կենտրոնացնելով իր ձեռքում, միավորեց պետական ու ռազմական բոլոր հիմնարկությունների, կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների գործունեությունը։*

*Սովետական ժողովուրդը պատվով կատարեց իր մարտական երդումը՝ արիաբար մարտնչել մինչև ֆաշիզմի լիակատար ջախջախումը։ Թիկունքի աշխատանքը ենթարկվում էր ռազմաճակատի շահերին, թիկունքի մարդիկ փոխարինում էին բանակ մեկնածներին, համալրում աշխարհազորի շարքերը։ Միայն 1941 թ. հուլիսին, չորս օրում, Մոսկվայում ստեղծվեց ժողովրդական աշխարհազորի 12 դիվիզիա, որտեղ ընդգրկված էր 120 հազար մարտիկ։ Նույն թվականի աշնանը երկրում արդեն ձևավորվել էին ավելի քան 1.750 կործանիչ գումարտակ, ժողովրդական աշխարհազորի 60 դիվիզիա, 200 առանձին գունդ։ Սովետների երկրի անվեհեր հերոսամարտիկներին ոգեշնչում էին անմահ Լենինի գաղափարները, որը մեծ Հոկտեմբերի հերոսների մասին ասել է. «...երդվենք՝ գնալ նրանց հետքերով, հետևել նրանց անվեհերությանը, նրանց հերոսությանը։ Թող նրանց լոզունգը դառնա մեր լոզունգը... Այդ լոզունգն է՝ «Հաղ*թանակ կամ մահ» *(Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 28, էջ 203)։*

ՖԱՇԻԶՄԻ ԴԵՄ ՏԱՐԱԾ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ-ՊԱՏՄԱԿԱՆ *հաղթանակում անգնահատելի են սովետական թիկունքի ծառայությունները։ Պայքարի ելքը վճռվում էր և՛ ռազմաճակատում, և՛ թիկունքում։ Սովետական թիկունքի հաջողությունները, ամենից առաջ ռազմական տնտեսության նվաճումները, հնարավորություն տվեցին ճակատն անխափան ապահովելու ռազմական տեխնիկայով, հանդերձանքով և պարենով։ Պատերազմի բոցերում քայլ առ քայլ նվաճվում էր բաղձալի հաղթանակը, իսկ թիկունքում՝ ամրապնդվում բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքը, սոցիալիստական հասարակարգի քաղաքական, տնտեսական ու ռազմական հզորությունը։ Պատերազմը խիզախության, արիության և մասսայական հերոսության դպրոց էր։ Այն ոչ միայն բանակների ճակատամարտ էր, այլև երկու տարբեր հասարակական սիստեմների, ներհակ գաղափարախոսությունների բախում։ Պատերազմում, ասված է ՍՄԿԿ ծրագրում, սովետական ժողովրդի տարած հաղ-*

թանակը հաստատեց, որ աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային կասեցնել սոցիալիստական հասարակարգի առաջընթացը:

Հիրավի, անմահ է սովետական ռազմիկների և թիկունքայինների փառքը, որոնք ամենածանր փորձության պահին պաշտպանեցին մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը, սոցիալիզմի նվաճումները, քաղաքակրթությունը փրկեցին ֆաշիստական աղետից: Սերունդներն ակնածանքով են հիշում և երախտագիտությամբ փառաբանում ոչ միայն մեր զինվորների, այլև սովետական թիկունքի մարդկանց աշխատանքային սխրանքները. նրանց, ովքեր հաղթահարելով անասելի դժվարություններ, աշխատանքը կազմակերպեցին ռազմական պահանջներին համապատասխան, էվակուացրին հարյուրավոր գործարաններ, կառուցեցին տանկեր և ինքնաթիռներ, պողպատ ձուլեցին արկերի համար, նրանց, ովքեր իրենց աշխատանքային բացագործություններով արժանի եղան ճակատայինների մարտական արիության:

Սովետական թիկունքայինների պատմական մեծ ծառայություններից մեկը Հայրենական մեծ պատերազմի պայմաններում արտադրաուժերի արագ վերակառուցումն էր, արդյունաբերության կարևորագույն ճյուղերը ռազմական ռելսերի վրա փոխադրելը: Պատերազմի բովում լիովին հաստատվեց կոմունիստական կուսակցության քաղաքականության ճշտությունը, ողջ ուժով դրսևորվեց սոցիալիստական տնտեսական սիստեմի առավելությունը, սոցիալիստական սեփականության՝ համաժողովրդական և կոլտնտեսային-կոոպերատիվ ձևերի կենսունակությունը, գործնականում հաստատվեց մարքսիստական-լենինյան ուսմունքի այն դրույթը, որ սոցիալիստական հասարակարգը հնարավորություն է տալիս ավելի արագ և հաջող մոբիլիզացնել միջոցները, քան կապիտալիզմը: Հենց կապիտալիստականի հանդեպ սոցիալիստական տնտեսության ունեցած առավելություններն էլ ամուր հիմք էին սովետական թիկունքի ամրապնդման, ռազմաճակատի կարիքներն առավել արդյունավետ հոգալու համար:

Պատերազմի սկզբին ժամանակավոր հաջողության հասնելով, հիտլերականները հրով ու սրով մխրճվում էին սովետական երկրի խորքը, գրավելով ընդարձակ տերիտորիաներ: Բայց հօդս ցնդեցին կայծակնային պատերազմի պլանները: Սովետական մարդիկ և՛ մարտնչում էին ռազմաճակատում, և՛ միաժամանակ երկրի արևմտյան շրջաններից միասնական պլանով արևելք էվակուացնում ու տեղակայում արդյունաբերական ձեռնարկությունները: Զօր ու գիշեր անվերջ հոսանքով երկրի խորքն էին փոխադրվում բազում գործարաններ ու ֆաբրիկաներ, տրակտորների, կոմբայնների շարասյուներ, գյուղատնտեսական կենդանիներ: Ռազմական գործողությունների շրջանում մինչև պատերազմի սկիզբը կային 98 հազար կոլտնտեսություն, 1.876 սովխոզ, 2.890 մեքենատրակտորային կայան, 65 հազար կիլոմետր երկաթուղագիծ: Այդ տերիտորիայում ապրում էր 88 մլն մարդ: Ֆաշիստների զավթած սովետական շրջանները նախապատերազմյան տարիներին տալիս էին Սովետական Միությունում ձուլված չուգունի 71, քարածխի՝ 63, պողպատի՝ 58 և սև մետաղի գլանվածքի՝ 57 տոկոսը:

Էվակուացիայի իրականացումը թիկունքայինների՝ իր նախորդը չունեցող սխրանքներից մեկն էր: Արդեն 1942 թ. գարնանը երկրի արևելյան շրջաններն էր էվակուացվել 7 մլն 417 հազար մարդ, որոնք ներգրավված էին ռազմաճակատի համար թիկունքային աշխատանքներում: Կարճ ժամանակամիջոցում իրենց կոլեկտիվներով էվակուացվեցին «Դնեպրոսպեցստալը», «Զապորոժստալը», Նովոկրամատորսկի, Լենինգրադի Վ. Ի. Լենինի, Կիրովի անվան գործարանները: Դրանք հսկա համալիրներ էին, որոնք ունեին բազմաթիվ արտադրամասեր, հազարավոր հաստոցներ ու մեքենաներ: Պատմությանը հայտնի չեն նման վիթխարի մասշտաբի տեղափոխություններ: 1944 թ. ֆաշիստական Գերմանիան ևս փորձեց իր արևելյան շրջաններից էվակուացնել արդյունաբերական ձեռնարկությունները, բայց անհաջողության մատնվեց. այն առաջացրեց տնտեսական փլուզում և արտադրության անկում:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, մոբիլիզացնելով աշխատավորության բոլոր ուժերը, ձեռնարկությունների վերակառուց-



ման ու էվակուացման զուգընթաց, լայնորեն ծավալում էր կապիտալ շինարարությունը: Այն դեպքում, երբ 1943—1944 թթ. Գերմանիայի տնտեսության մեջ կապիտալ ներդրումները կրճատվեցին 22 տոկոսով, ՍՍՀՄ-ում դրանք (չհաշված կոլտնտեսություններինը) աճեցին և 1943 թ. կազմեցին 25,1, իսկ 1944 թ.՝ 34,1 մլրդ ռուբլի:

Դեպի թիկունք՝ Սովետական Միության արևելյան շրջաններ տեղափոխվեց և տեղակայվեց շուրջ 2.600 արդյունաբերական խոշոր ձեռնարկություն: Այդ տեղափոխությունների համար պահանջվեց մեկ միլիոն 500 հազար վագոն: Երկաթուղային տրանսպորտն աշխատում էր հստակ, սահմանված գրաֆիկով: Պատերազմի տարիներին երկրի հաստոցային պարկն աճեց 100 հազար միավորով: Մեծ չափով ավելացան երկաթաքարի արդյունահանումը, պողպատի և չուգունի ձուլումը, էլեկտրաէներգիայի թողարկումը:

Կուսակցությունն անշեղորեն ղեկավարվում էր լենինյան իմաստուն պատգամով՝ «Քանի որ պատերազմն անխուսափելի դարձավ՝ ամեն ինչ պատերազմի համար»:

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ, ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ, թիկունքի բոլոր աշխատավորների հերոսական ջանքերով 1942 թ. սկզբից արդյունաբերությունը նոր թափ վերցրեց: Ռազմական ձեռնարկությունները ռազմաճակատին անխափան մատակարարում էին հրանոթներ, ականանետներ, ինքնաթիռներ, տանկեր, գնդացիրներ, ռազմամթերք: Ուրալը դարձավ խոշոր զինանոց, ռազմական արդյունաբերության ողնաշարը, պաշտպանական հզոր վահան: Արդեն 1941 թ. չորրորդ եռամսյակում նրա ձեռնարկությունները թողարկում էին ՍՍՀՄ-ում արտադրվող չուգունի 62, պողպատի և գլանվածքի 50, ալյումինի և նիկելի 100 տոկոսը: Ուրալի արդյունաբերությունը տալիս էր սովետական ամբողջ ռազմական արտադրանքի ավելի քան 40 տոկոսը, այդ թվում՝ միջին տանկերի 60, իսկ ծանրի՝ 100 տոկոսը: Անվերջ հոսանքով, ասված է Գերագույն գլխավոր հրամանատարի 1943 թ. նոյեմբերի 7-ի հրամանում, ճակատ են ուղարկվում սպառազինություն, ռազմամթերք, պարենամթերք, հանդերձանք: Ուրալը և Կուզբասը, Մոսկվան և Պովոլժիեն, Լենինգրադը և Բաքուն, Ղազախստանը և Ուզբեկստանը, Վրաստանը և Հայաստանը, մեր բոլոր հանրապետություններն ու մարզերը դարձել են կարմիր բանակի հզոր զինանոց:

Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության տնտեսական հաղթանակն այնքան է ակնառու, որ այժմ այն ընդունում են նույնիսկ պատմության բուրժուական կեղծարարները՝ հակասովետիզմի գաղափարախոսները:

Սովետական Միության ռազմական տնտեսության ակնառու հաջողությունները ամենից առաջ սեփական ջանքերի արդյունք էին: Բնորոշ են հետևյալ փաստերը. 1944 թ. սկզբում սովետական զորքերն ունեին 5.357 տանկ և ինքնագնաց հրետանային սարք, 92.650 հրանոթ ու ականանետ, իսկ թշնամին՝ համապատասխանաբար՝ 5.400 և 54.570, սովետական ավիացիան ուներ 8.500, իսկ ֆաշիստականը՝ 3.073 մարտական ինքնաթիռ: Պատերազմի ավարտական տարում՝ 1945 թ. սկզբին, այդ հարաբերակցությունն ավելի փոխվեց հօգուտ մեր բանակի: Սովետական զինված ուժերն ունեին 12.900 տանկ և ինքնագնաց հրետանային սարք՝ հակառակորդի 3.950-ի դիմաց, 108.000 հրանոթ ու ականանետ՝ 28.500-ի դիմաց, 15.540 ինքնաթիռ՝ 1.960-ի դիմաց: Այս ամենն արդյունք էր թիկունքի աշխատավորների, կամ, ինչպես այն ժամանակ նրանց կոչում էին՝ թիկունքի գվարդիականների հերոսական ջանքերի:

«Ուզում ես պատերազմում հաղթել թշնամուն՝ պլանը կատարիր կրկնակի և եռակի»—այս էր թիկունքի գվարդիականների նշանաբանը:

Պատերազմի առաջին իսկ օրերին ստեղծվեց «Մայր հայրենիքն է կանչում» հիասքանչ պլակատը, որն ամենուրեք պայքարի ու աշխատանքի էր կոչում սովետական բոլոր քաղաքացիներին: Զուր չէր, որ հայրենիքը նրանում ներկայացված էր մոր կերպարանքով: Մեր երկրի համար այդ ծանր փորձության օրերին տղամարդկանց հետ նույն շարքում կանգնեցին հերոսական սովետական կանայք: Նրանք փոխարինեցին ճակատ մեկնած ամուսիններին ու եղբայրներին, արագորեն տիրապետելով բարդ մասնագիտություններին: Նրանք

դարձան լեռնագործ, շոգեքարշային մեքենավար, դարբին, խառատ, վարորդ և այլն։ Արդեն 1942 թ. ողջ ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների 53,4 տոկոսը կանայք էին։ Ռազմական տնտեսության զարգացման գործում, հիրավի, հսկայական է սովետական կանանց ներդրած ավանդը։ Այն ոչ մի բանով հնարավոր չէ չափել։ «Եթե հաջողվեր գտնել մի այնպիսի կշեռք,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— որի մի նժարին կարելի լիներ դնել մեր զինվորների մարտական սխրագործությունը, իսկ մյուս նժարին՝ սովետական կանանց աշխատանքային սխրագործությունը, ապա այդ կշեռքի նժարները, երևի հավասար կանգնեին...» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հատ. I, Երևան, 1970, էջ 183)։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին բանվոր դասակարգի հետ աշխատում և խիզախում էր կոլտնտեսային գյուղացիությունը։ Ինչպիսի՜ դժվարություններ ու զրկանքներ ասես, որ չեն կրել գյուղի աշխատավորները, բայց նրանք երբեք չեն կորցրել հավատը հաղթանակի նկատմամբ, աշխատել են բազմապատկված եռանդով։ Պատերազմի ծանր փորձությանը 1943 թ. ավելացավ դաժան երաշտը։ Սովետական գյուղացիությունն ամեն ինչ արեց հացահատիկի և այլ կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու, ռազմաճակատն ու թիկունքը պարենով ապահովելու համար։ Ամբողջությամբ վերցրած, երկրում ցանքատարածությունները 1942 թ. ավելացան 2,8 մլն, 1943 թ.՝ 6,4 մլն, 1944 թ.՝ 15,8 մլն հեկտարով։ 1941—1944 թթ. սովետական պետությունը մթերեց 4.312 մլն փութ հացահատիկ, այլ խոսքով՝ երեք անգամ ավելի, քան տվել էր նախահեղափոխական Ռուսաստանը 1914—1917 թվականներին։

Հրաշքներ էին գործում սովետական գիտնականները, կոնստրուկտորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները՝ ստեղծելով ռազմական տեխնիկայի նոր, հզոր տեսակներ։ Ծնունդ առավ և սովետական զենքի փառքը բազմապատկեց հռչակավոր «Կատյուշան»։ Չնայած պատերազմական դժվարություններին, կուսակցությունն ու կառավարությունը մեծ միջոցներ էին տրամադրում գիտությանը, նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը։ Պատերազմի տարիներին ստեղծվեցին Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի, Ղազախստանի, Ուզբեկստանի գիտությունների ակադեմիաները, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նոր մասնաճյուղեր։

Պատերազմի 1.418 օրերից յուրաքանչյուրը լի է հայրենասիրության բազում հուզիչ օրինակներով։ Մոսկվայի ու Լենինգրադի, Ստալինգրադի ու Կերչի, Օդեսայի ու Սևաստոպոլի, Բրեստի ու Կիևի դյուցազնամարտերում, Բեռլինի համար մղված կռիվներում սովետական մարդիկ անօրինակ սխրանքներ գործեցին։ Այդ հաղթանակները միաժամանակ պայմանավորված էին սովետական ամուր թիկունքով։

Լիովին ձախողվեցին սովետական թիկունքը պրովոկացիաներով խարխլելու և կազմալուծելու հիտլերականների փորձերը։ ՍՍՀՄ ժողովուրդների միասնությունը, սովետական թիկունքի անսասանությունը պայմանավորված էին կոմունիստական կուսակցության անդուլ գործունեությամբ, հաղթանակի նկատմամբ մեր ժողովրդի անկոտրում հավատով։

Պատմական մեծ հաղթանակում իրենց ավանդը ներդրին ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները, առաջին հերթին՝ ռուս մեծ ժողովուրդը։ Ինչպես սոցիալիստական խաղաղ շինարարության տարիներին, այնպես էլ պատերազմի ծանր օրերին, Սովետական Հայաստանի աշխատավորները նույնպես պատվով կատարեցին իրենց հեղափոխական պարտքը մայր հայրենիքի հանդեպ։ Պատերազմի հենց առաջին օրը հանրապետությունում տեղի ունեցան աշխատավորների բազմամարդ միտինգներ։ Հայ ժողովուրդը միահամուռ երդվեց բոլոր ուժերն ու միջոցները նվիրաբերել թշնամու ջախջախմանը։ Խաղաղ կյանքն ընդհատվեց։ Հայաստանը միանգամից դարձավ մարտական ճամբար, ամբողջ աշխատանքը վերակառուցվեց պատերազմի պահանջներին համապատասխան։ Կարճ ժամանակամիջոցում ձևավորվեցին հայկական մի շարք դիվիզիաներ ու զորամասեր։ 1941 թվականի դեկտեմբերին գնդապետ Ս. Զաքյանի հրամանատարությամբ կազմավորվեց 89-րդ հայկական դիվիզիան։ Մի քանի օրվա ընթացքում 1.500 կոմունիստ ու տասնյակ հարյուրավոր կոմերիտականներ մո-



բիլիզացվեցին՝ դառնալով նորաստեղծ դիվիզիայի առաջատար ուժը։ Վերակազմվեցին և հայ մարտիկներով համալրվեցին նաև 408-րդ և 409-րդ դիվիզիաները։ Միաժամանակ ստեղծվեցին աշխարհազորային և կործանիչ գումարտակներ։ Զենքին տիրապետելն օրվա հրամայական պահանջն էր։ Միայն ռազմական ուսուցման մեկ հերթում ավելի քան 50 հազար մարդ ձեռք բերեց ռազմական անհրաժեշտ գիտելիքներ։ 1941 թ. երկրորդ կեսին հանրապետությունում պատրաստվեցին 17.000 օդաչու, պարաշյուտիստ, տանկիստ, ռադիստ, 1.000 մոտոցիկլիստ և ավտովարորդ։ Երևանի հրետանային դպրոցի յուրաքանչյուր հերթ տալիս էր 600 շրջանավարտ։

Հայաստանը մարտնչում էր։ Նրա զավակներն անօրինակ սխրանքներ էին գործում թե՛ ռազմաճակատում և թե՛ թիկունքում։ Հայրենիքի պաշտպանության առաջամարտիկների շարքերում էին կոմունիստները։ 1941—1943 թվականներին Հայաստանի կոմկուսը զինվորական պարտադիր ծառայության ենթականերից բացի, մի քանի անգամ կուսակցական մոբիլիզացիա կատարեց։ 1941 թ. հունիսին Հայաստանի կոմկուսի շարքերում հաշվառման մեջ գտնվող 36.849 կոմունիստներից 20 հազարը բանակ մեկնեց։ Նրանց հետևեցին կոմերիտականները։ Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը, հավատարիմ հեղափոխական ավանդույթներին, կարմիր բանակ ուղարկեց ավելի քան 70 հազար անդամ, այդ թվում՝ 20 հազար կամավոր։ Ամենուրեք տիրում էր երկաթյա կարգապահությունը։ Թիկունքայինների անխոնջ աշխատանքով ստեղծվեց ռազմական ամուր էկոնոմիկա, արդյունաբերությունը լիովին փոխադրվեց ռազմական ռելսերի վրա։ Նոր ուժով դրսևորվեցին Հայաստանի բանվոր դասակարգի հեղափոխական գիտակցականությունն ու հայրենասիրությունը։ Ալավերդու և Ղափանի հանքագործները, Երևանի Կիրովի անվան և Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատների քիմիագործները, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի, «Արարատ» տրեստի և այլ ձեռնարկությունների աշխատողները, երկաթուղայինները փառքով պսակեցին իրենց։ Յուրաքանչյուր թիկունքային օրական կատարում էր երկու-երեք արտադրական նորմա։ Հավասարվել ռազմաճակատի գվարդիականներին՝ այս էր լոզունգը։ Հայաստանը ռազմաճակատին տալիս էր ականանետներ, ավիառումբերի կորպուսներ, ականներ, ձեռքի և հակատանկային նռնակներ, պայթուցիկ նյութեր, ռազմական հանդերձանք... Կարի ձեռնարկությունները կարմիր բանակի կարիքների համար թողարկեցին 5 մլն 270 հազար զույգ սպիտակեղեն, 350 հազար զինվորական համազգեստ, 346 հազար շինել, 41 հազար կիսամուշտակ։ Կոշիկի ֆաբրիկաները տարեկան արտադրում էին մինչև 800 հազար զույգ կոշիկ։

Պատերազմի ժամանակ աշխատանքային արիության հիասքանչ օրինակ ավեցին հանրապետության կոլտնտեսային գյուղի աշխատավորները և սովխոզների բանվորները։ Ռազմաճակատ մեկնածներին փոխարինեցին կանայք, պատանիներն ու ծերերը։

Կոլտնտեսային գյուղացիությունը պատերազմի այդ ահեղ օրերին անգամ ընդարձակեց ցանքատարածությունը, բարձրացրեց տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը։ Մրցում էին բոլորը՝ Շիրակի, Զանգեզուրի, Լոռու, Արարատյան դաշտավայրի, Սևանի ավազանի հողագործներն ու անասնապահները, նվաճում հայկական խոպանը։ Դյուրին չէր նման պայմաններում հանրապետությունը սեփական հացով և անդամթերքով ապահովելը։ Սակայն կոլտնտեսային գյուղացիությունն իր համառ աշխատանքով հասավ դրան։ Պատերազմը մարտական ոգի հաղորդեց բոլորին, հերոսությունը դարձավ մասսայական։

Մեծ Հայրենականի տարիներին Սովետական Հայաստանի աշխատավորներն ակտիվ մասնակցեցին երկրի պաշտպանության ֆոնդի ստեղծմանը։ Միայն 1941 թ. նրանք այդ ֆոնդը մուծեցին 29 մլն ռուբլի, իսկ կոլտնտեսականները՝ 470 հազար աշխօրի արժեքը։ Հայաստանի թիկունքայինների նյութական միջոցներով կառուցված տանկային շարասյունները, «Հայաստանի կոմերիտական» էսկադրիլիան ու «Սովետական Հայաստան» գրահագնացքը ռազմաճակատ մեկնեցին՝ խորհրդանշելով թիկունքի գվարդիականների հայրենանվեր

գործերը։ Ծակատայիններն անհուն երախտագիտությամբ էին լցված Հայկական ՍՍՀ-ից ստացած նվեր-ծանրոցների, տաք հագուստի, ջերմ ու սրտաբուխ նամակների համար։

Պատերազմը ոտքի հանեց նաև սփյուռքահայ առաջադեմ ուժերին. ծավալվեցին սփյուռքահայ աշխատավորության հայրենասիրական շարժումը, «Սասունցի Դավիթ» և գեներալ Բաղրամյանի անվան տանկային շարասյուների ստեղծման համար միջոցների հավաքումը։

Սովետական Հայաստանի թիկունքի աշխատավորներն իրենց հայրենանվեր գործերով թևավորում էին ռազմաճակատի մարտիկներին։ Կովկասի համար մղված հարձակողական մարտերի նախօրյակին հայ ժողովուրդը նամակով դիմեց ռազմաճակատում մարտնչող իր զավակներին և պատվիրեց՝ անողոք ոչնչացնել ֆաշիստական զավթիչներին, շարունակ հիշել, որ ռազմաճակատի բոլոր հատվածներում նրանք միաժամանակ կռվում են Հայաստանի փրկության և ազատության համար։ Նամակը, որ ստորագրել էին ավելի քան 335 հազար մարդ, մեծ ոգևորություն առաջացրեց և նորանոր քաջագործությունների մղեց հայ ռազմիկներին։

Սովետական Հայաստանի թիկունքայինները հոգածությամբ էին շրջապատում ռազմաճակատում զոհվածների ընտանիքներին, էվակուացիայի ենթարկված անապաստան երեխաներին, վիրավոր ռազմիկներին, ծերերին, անօգնականներին։ Իսկ երբ կարմիր բանակի հուժկու հարվածների տակ թշնամին ետ էր շպրտվում իր որջը, Հայաստանի աշխատավորները եղբայրաբար օգնում էին ազատագրված շրջաններին՝ շուտափույթ բուժելու պատերազմի հասցրած վերքերը։

Հանրապետության աշխատավորները Լենինգրադի, Ստալինգրադի, Օդեսայի և ավերված այլ քաղաքների ու շրջանների վերականգնման ֆոնդին նվիրաբերեցին ավելի քան 8 մլն ռուբլի, Դոնբասի ձեռնարկություններին ուղարկեցին շուրջ 9.500 մեքենաներ ու գործիքներ։

Հայաստանը պատերազմի տարիներին և՛ կառուցում էր, և՛ մարտնչում։ Ժողովրդի աշխատանքային խանդավառությունը կազմակերպում, նրան ուժ և ուղղություն էր տալիս Հայաստանի կոմունիստական կուսակցությունը։

Պատերազմի ընթացքում մոտ 70 հազար հայ ռազմիկներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով և մեդալներով, 102-ը արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչման, իսկ 70-ը ստացան գեներալի կոչում։

1945 Թ. ՄԱՅԻՍԻ 9-Ը ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՄՏԱՎ որպես մեծ հաղթանակի օր։ Այդ հաղթանակը հեշտությամբ չի նվաճվել։ Պատերազմը խլեց ավելի քան 20 մլն սովետական մարդկանց կյանք։ Ֆաշիստներն ավերեցին 70 հազար քաղաք, ավան, գյուղ։ Սովետական պետությունը կորցրեց ազգային եկամտի 30 տոկոսը։ Բայց, ինչպես առասպելական Փյունիկ, մոխիրներից արագորեն վերածնվեց սոցիալիստական կյանքը, երկիրն ապաքինեց վերքերը։

Սովետական մարդիկ, աշխարհի առաջադեմ ու խաղաղասեր ուժերը երախտագիտությամբ ու հպարտությամբ են հիշում քառամյա դաժան պատերազմի հրի և բոցերի միջով անցած այն բոլոր հերոսներին, որոնք իրենց անօրինակ քաջագործություններով պաշտպանեցին սովետական ժողովրդի ազատությունն ու անկախությունը։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ռազմաճակատում և թիկունքում սովետական ժողովրդի կատարած տիտանական սխրագործությունը դարեր կապրի։

# ՀԵՐՈՍՆԵՐԻ ՈՒՂԻՆ

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ մատենաշարով Մոսկվայի «Քաղիրատը» հրատարակում է փոքրածավալ գրքույկներ մեծ Հայրենականի ականավոր զորավարների, ֆաշիզմի դեմ մղված քառամյա պատերազմի հաղթանակը դարբնողների մասին։ Գրում են զինվորական թերթերի խմբագիրներ, թղթակիցներ, անվանի ժուռնալիստներ ու գրողներ։ Հետաքրքրությամբ կարդացվող այդ գրքերն ընթերցողին ներկայացնում են կռովի, հմուտ ստրատեգների, բոլորանվեր հայրենասերների կյանքի ամենափոթորկոտ շրջանը, այն տարիները, երբ մեր անծայրածիր երկրում ամեն ինչ արվում էր ռազմաճակատի համար, ամեն ինչ՝ հանուն հայրենիքի հաղթության։

Այդ գրքերն ընթերցողին համակում են ջերմ հայրենասիրությամբ, նպաստում ռազմա-հայրենասիրական ավանդույթների պահպանմանը, ներկա ու գալիք սերունդներին հաղորդակից դարձնում հրի ու սրի միջով անցած, հերոսացած զինվորների կյանքին ու սխրանքներին, համակում հայրենիքը նրանց նման սիրելու, նրանց նման պաշտպանելու բուռն տենչով։

## ԹՇՆԱՄՈՒՆ ՋԵՆՔ ՏԱ ՀԱՅՐԵՆԻՆ




1918 ԹՎԱԿԱՆԻՆ, հագնելով զինվորական համազգեստը, քանամյա Կիրիլ Աֆանասևիչ Մերեցկովի մտքով իսկ չէր անցնում, որ այն այլևս չի հանելու մինչև իր կյանքի վերջը։ Քաղաքացիական պատերազմի տարիներին 1-ին հեծելազորային գնդից է սկսվել նրա ռազմական ուղին, և նա սուրը պատյան է դրել միլիտարիստական Ճապոնիայի կապիտուլյացիան ազդարարող վերջին համազարկից հետո միայն։ Մեծ զորավարի անցած դժվարին ուղին է ներկայացրել «Կրասնայա զվեզդա» թերթի նախկին թղթակից Միխայիլ Ցունցը իր Չորս պատերազմների բովում գրքույկում*։

Ուսուցիչ էր երազում դառնալ աղքատ գյուղացու որդին՝ Կիրիլը։ Երբ լրացավ տասնհինգ տարին, հայրը նրան ուղարկեց Մոսկվա՝ սովորելու, մարդ դառնալու։ Այստեղ էլ նա անցավ «պրոլետարական գիտության տարրական դասընթացը». հյուսն պատանին ընկերների օգնությամբ մտերմանում է ընդհատակայիններին. հեղափոխական փոթորկոտ իրադարձություններն իրենց հորձանուտն են առնում նրան։ Ընդհատակյա կուսակցական բջիջը նրան ուղարկում է Սուդոգդա, ուր ծավալում է հեղափոխական գործունեություն, կազմակերպում պայքարն աջ էսեռների դեմ։ Այստեղ էլ նա դիմավորում է 1917 թվականը, և երբ հիմնվում է ՌՍԴԲԿ բջիջ, դրա

* Мих. Цунц — В огне четырех войн. М., «Политиздат», 1972.

մեր ողջ երկիրը տոնում էր հաղթանակը, Մոսկալենկոյի բանակը ծանր, դժվարին մարտեր էր մղում «Կենտրոն» բանակախմբի դեմ, որը հրաժարվում էր կապիտուլյացվելուց և ձգտում էր դեպի արևմուտք՝ ամերիկացիներին հանձնվելու համար։ Մոսկալենկոյի բանակը, ինչպես և ողջ ռազմաճակատը, խափանեցին նրա այդ փորձերը։

Հեղինակը ցույց է տալիս, թե Մոսկալենկոն որքան բարձր է գնահատում քաղաքական-պրոպագանդիստական աշխատանքը բանակում։ Կուսակցության զինվորը ոչ միայն հետաքրքրվում էր քաղաքական մարմինների գործունեությամբ, այլև իր պարտականությունն էր համարում քաղաքական աշխատանքը, զրուցում զինվորների հետ, հանդես գալիս նրանց առջև. մարտիկները սիրով էին լսում իրենց հրամանատարի կրակոտ խոսքը։ Պատերազմը միայն հարձակում և հակահարձակում չէ։ Այն, ամենից առաջ, մարդիկ են։ Մոսկալենկոն հաճախ էր հիշում, հրամանատարներին ևս հիշեցնում Կուտուզովի այս խոսքերը. «...պետք է արժանանալ զինվորների սիրուն, զինվորական մարդու համար ամենապատվավորը զինվորի բարեկամ կոչվելուն արժանանալն է»։ Ոչ միայն կարողանալ հմտորեն կազմակերպել մարտերը, այլև հայրաբար հոգալ զինվորների մասին։

Կիրիլ Սեմյոնովիչն աներկյուղ հայտնվում էր ամենաթեժ մարտադաշտերում, առաջավոր գծերում. բայց, ինչպես ժողովուրդն է ասում՝ գնդակը քաջից վախենում է։ Այնպես հանգիստ, անհողդողդ ու սառնարյուն էր անցնում մարտադաշտերով, որ տեսնողները երբեմն մտածում էին, թե նախախնամությունն է պաշտպանում նրան։

Պատերազմից հետո, մոտ 30 տարի, պատասխանատու պոստեր է գրավել Կիրիլ Սեմյոնովիչը մեր երկրի զինված ուժերում։ Ղեկավարել է Մոսկովյան հակաօդային պաշտպանության օկրուգը, եղել է Մոսկվայի զինվորական օկրուգի հրամանատար, Սովետական Միության հրթիռային զորքերի հրամանատար։ ՍՍՀՄ զինված ուժերի գլխավոր տեսուչն է այժմ։ Հայրենիքը բարձր է գնահատել իր քաջարի զավակի սխրանքները։ ՍՄԿԿ Կենտկոմի անդամ է նա, ՍՍՀՄ Գերագույն սովետի հետպատերազմյան բոլոր սեսիաների դեպուտատ։ Նրա համազգեստը զարդարում են Սովետական Միության Հերոսի, Չեխոսլովակյան Սոցիալիստական Հանրապետության Հերոսի աստղերը։ Նրա կրծքին շողում են նաև սովետական և օտարերկրյա շքանշաններն ու մեդալները։

## ԶԻՆՎՈՐԸ, ԳԵՆԵՐԱԼԸ, ՄԱՐՇԱԼԸ




ԽԱՆՋԱՐՈՒՐԻՑ ԴՈՒՐՍ ԴԱԼՈՒՆ ՊԵՍ ձի են հեծնում այստեղ,— ասում են Շամախու շրջանի Զարդախլու գյուղի երիտասարդների մասին։ Ավելի քան 1.000 ռազմիկ է տվել գյուղը Հայրենական պատերազմին, որոնցից են և Սովետական Միության մարշալ Հ. Ք. Բաղրամյանը և զրահատանկային զորքերի մարշալ Հ. Խ. Բաբաջանյանը։

Հովհաննես Բաղրամյանին է նվիրել իր գիրքը ճանաչված ժուռնալիստ Մարտին Մերժանովը*։

Ծնվել է Բաղրամյանը 1897 թ., չքավոր գյուղացու ընտանիքում։ Բարձր գնահատականներով ավարտելով երկաթուղային երկդասյա ուսումնարանը՝ ընդունվում է Թիֆլիսի տեխնիկական ուսումնարանը։ Ելիզավետպոլի երկաթուղային ծառայության տեխնիկ-պրակտիկանտ էր տասնութամյա Հովհաննեսը, երբ բռնկվեց առաջին համաշխարհային պատերազմը։ Նա կամավոր մեկնում է կովկասյան ռազմաճակատ, կռվում սուլթանական Թուրքիայի դեմ։ Քերմանշահում և Կասրեշիրինում մղվող մարտերում նա ստանում է իր մարտական մկրտությունը։ Ապա, ավարտելով Թիֆլիսի յունկերական դպրոցը, ծառայում է Ելիզավետպոլի պահեստային հետևակային գնդում։

1920 թ. նոյեմբերին կարմիր բանակը Հայաստանն ազատագրում է դաշնակների տիրապետությունից։ Այդ օրվանից երիտասարդ զինվորն իր բախտը կապում է սովետական երկրի բանակի հետ։

Պատերազմի սկզբին գլխում հեղինակը նկարագրում է 1941 թ. հուլիսի 22-ը։ Հովհաննես Քրիստափորովիչ Բաղրամյանը նշանակվում է Հարավ-Արևմտյան ռազմաճակատի շտաբի օպերատիվ բաժնի պետ և ռազմաճակատի շտաբի պետի տեղակալ։

Ավարտել էր նա Լենինգրադի հեծելազորային բարձրագույն դպրոցը, Մ. Վ. Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիան և ժամանակակից պատերազմի օրենքներին խորագիտակ հրամանատար էր։

Հովհաննես Քրիստափորովիչը պաշտպանական գծերում է։ Ֆաշիստական զորքերին հրամայված է ամեն գնով գրավել Կիևը, օգոստոսի 8-ին այնտեղ կազմակերպել զորահանդես, որին պետք է ներկա լինի ինքը՝ Հիտլերը։ Թշնամու Դնեպրն անցնելու բոլոր փորձերը ձախողվում են։ Այդ վճռական ճակատամարտերում մեծ էր Հ. Ք. Բաղրամյանի կազմակերպած օպերատիվ գործողությունների դերը։ Եվ նրան շնորհվում է գեներալ-մայորի կոչում։

Բաղրամյանին հանձնարարվեց օգնել 38-րդ բանակի հրամանատարությանը՝ վերացնելու հակառակորդի Կրեմենչուգյան հենակետը։ Առաջադրանքը կատարելուց հետո Բաղրամյանը խնդրեց Հարավ-Արևմտյան ուղղության գլխավոր հրամանատար, մարշալ Ս. Կ. Տիմոշենկոյին ինքնաթիռով ուղարկել իրեն յուրայինների մոտ։ Պետք էր պատրաստվել կազմակերպված նահանջի։ Համառ, դժվարին մարտեր։ Թշնամին ուժեղ էր, կատաղի. սեպտեմբերին Գերագույն գլխավոր հրամանատարությունը թույլատրեց թողնել Կիևյան ամրացված շրջանը։ 1941 թ. սեպտեմբեր. պատերազմի ամենածանր օրերն էին Ուկրաինայի համար. Մ. Մերժանովն այդ ներկայացրել է Նահանջ գլխում։

Հարավ-Արևմտյան ուղղության ռազմաճակատի շտաբի օպերատիվ բաժնի պետ գեներալ Բաղրամյանը, անցնելով 150 քաջերի գլուխ, անմիջապես, առանց նախապատրաստության ու հրետանային զորացման, մտավ մարտի մեջ։ Շուտով ջոկատին միացան թշնամու կողմից ցաքուցիր արված շատ զինվորներ։ Բարձունքը գրավվեց, բայց Սենչուն՝ ոչ։ Հակառակորդը շատ էր ուժեղ։

Հարկ էր նահանջել 80—200 կիլոմետր։ «Ով կարծում է նահանջի մանյովրը հասարակ բան է, խորապես սխալվում է,— ասում էր գեներալը,— եթե մտածված չկազմակերպվի այն, զորքն ավելի մեծ աղետի կմատնվի, քան վատ կազմակերպված հարձակման ժամանակ։ Նահանջի պահին ավելի հեշտությամբ են մարտիկները խուճապի մատնվում»։

Մեր զորքերը 1941 թ. դեկտեմբերի սկզբին սկսել էին հակահարձակումը Մոսկվայի տակ։ Գրեթե միաժամանակ, Բաղրամյանը և Հարավ-Արևմտյան ռազմաճակատի շտաբի պետ, գեներալ Բոդինը առաջարկեցին հակահարված տալ գեներալ Կլեյստի տանկային զորամասերին։ Հարավ-Արևմտյան ուղղության գլխավոր հրամանատար Տիմոշենկոն հավանություն տվեց նրանց առաջարկին։ Բաղրամյանի հնարամիտ պլանի շնորհիվ նոյեմբերի 29-ին ազատագրվեց Ռոստովը։ Նման պարտություն Կլեյստը չէր կրել։

Շուտով Բաղրամյանը նշանակվում է Հարավ-Արևմտյան ռազմաճակատի նորաստեղծ օպերատիվ խմբի պետ. նրա ռազմաստրատեգիական խորագիտակության արժանի գնահատումն էր այդ։

1942 թ. սկիզբն է։ Մարշալ Տիմոշենկոյի մոտ Հարավ-Արևմտյան ուղղության, ինչպես և Հարավային ու Հարավ-Արևմտյան ռազմաճակատների ղեկավարների խորհրդակցություն էր։ Զեկուցում էր գեներալ Բաղրամյանը։ Պատրաստվում էին հարձակողական ծավալուն օպերացիայի. Սլավյանսկի և Իզյումի շրջանից դուրս գալով, բանակը պետք է հասներ Պավլոգրադի և Դնեպրոպետրովսկի մոտ—հակառակորդի թիկունքը՝ ջախջախելու 17-րդ գերմանական բանակը և գեներալ Շվեդլերի զորքերը։

1942 թ. հունիսին Բաղրամյանը կանչվեց Մոսկվա։ Գերագույն գլխավոր հրամանատարությունը նրան նշանակեց Արևմտյան ռազմաճակատի 16-րդ բանակի հրամանատար։ 1943 թ. այն վերակազմավորվեց իբրև 11-րդ գվարդիական բանակ, որի հրամանատարն էր Հովհաննես Քրիստափորովիչը։ Բանակն ուղղվեց Օրյոլից հյուսիս-արևմուտք ընկած շրջանը։ Հիտլերը պատրաստվում էր իրականացնելու «Միջնաբերդ» օպերացիան։

Դանդաղաշարժությունը, հապաղումը պաշտպանության մահն են, արագությունը՝ հաջողության գրավականը,—այս էր Բաղրամյանի նշանաբանը Կուրսկի մարտերին պատրաստվելիս։ Գերագույն գլխավոր հրամանատարությունում ընդունվեց Բաղրամյանի առաջարկած պլանը։ Հուլիսի 5-ին հակառակորդի «Կենտրոն» և «Հարավ» բանակների խմբերն սկսեցին հարձակումը։ Հիմնական հարվածն իր վրա վերցրեց Կ. Կ. Ռոկոսովսկու հրամանատարությամբ գործող կենտրոնական ռազմաճակատը։ Օգոստոսի 5-ին երեք ռազմաճակատների համաձայնեցված գործողությունների շնորհիվ ազատագրվեցին Օրյոլը, Կրոմին, Դմիտրովսկ—Օռլովսկին, Կարաչևը։ Հասել էր ժամը ֆաշիստական հորդաներին հայրենի հողից դուրս շպրտելու։ Օռլովյան պլացդարմի մարտերի գերազանց նախապատրաստության ու անցկացման համար Բաղրամյանը պարգևատրվեց Սուվորովի 1-ին աստիճանի շքանշանով և ստացավ գեներալ-գնդապետի կոչում։

---

* Мартын Мержанов. Солдат, генерал, маршал. М., Политиздат, 1974.

Կալինինյան ռազմաճակատը 1943 թ. նոյեմբերի 20-ին անվանվեց 1-ին Մերձբալթյան, որի հրամանատար նշանակվեց Բաղրամյանը։

1944 թ. հունիսի 22-ին գեներալ Բաղրամյանի գերազանց զինված բանակներն արդեն պատրաստ էին արևմուտք շարժվելու։ Սկսվեց հարձակումը։ Վեց օրում 1-ին Մերձբալթյան ռազմաճակատը և 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի՝ Ի. Ի. Լյուդնիկովի ղեկավարած 39-րդ բանակը, հաջողությամբ շրջապատեցին և ջախջախեցին հակառակորդի դիվիզիաները։ Զորքերի հիմնական մասն անցավ Արևմտյան Դվինայի ձախ ափը։ «Բագրատիոն» օպերացիան պսակվեց հաջողությամբ։ Վերջնականապես ջախջախվեց գերմանական 3-րդ տանկային բանակը, գրավվեցին Պոլոցկը, Մինսկը։ Բելոռուսիայի ազատագրման համար մղված մարտերում ցուցաբերած անձնական խիզախության, հերոսության, հրամանատարական փայլուն տաղանդի արժանի գնահատականը եղավ Հ. Ք. Բաղրամյանին Սովետական Միության հերոսի կոչում շնորհելը։

«Բագրատիոն» օպերացիայից հետո դադար չեղավ։ Ամեն գնով հարկ էր թույլ չտալ, որ «Հյուսիս» բանակախումբը դամոկլյան սրի պես կախվի մեր զորքերի գլխին։ Սկսվում է հարձակումը։ Երկրորդ օրը ազատագրվում են Պանևեժիս, Դաուգավպիլս, Իոնիշկիս քաղաքները։

1-ին Մերձբալթյան ռազմաճակատին հանձնարարվեց Ռիգայի ուղղությունից ուժերը տեղափոխել Շյաուլյայի շրջանը՝ իրականացնելու Կլայպեդայի օպերացիան, կտրելու հիտլերյան «Հյուսիս» բանակախմբի նահանջի ճանապարհը դեպի Արևելյան Պրուսիա։ Պետք էր ապակողմնորոշել գերմանական գեներալ Շյորներին. այնպես անել, որ նա կարծի, թե հիմնական ուժերը մնում են Ռիգան գրավելու։ Այդ նպատակով այնտեղ թողնվեց գեներալ Վոլսկու 5-րդ գվարդիական տանկային բանակը։ Բաղրամյանը հրամայեց այդ բանակի գեներալ Մալախովի տանկային կորպուսին շարժվել դեպի Կլայպեդա։ Երկրորդ օրը նրանց հետևեցին Չիստյակովի և Բելոբորոդովի բանակները։ Այդ օրերին գերմանացի գերիներից հաճախ կարելի էր լսել՝ «մենք չգիտեինք, որ դուք այդքան շատ տանկեր ունեք»։

Գեներալ Շյորներին չփրկեց և Ռիգայում գտնվող գերմանական զորքերի օգնությունը։ Ջախջախելով «Մեծ Գերմանիա» տանկային դիվիզիան՝ Չիստյակովի բանակը գրավեց Տոլշայը։ 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորամիավորումների հարձակողական մարտերը կանխորոշեցին 2-րդ և 3-րդ Մերձբալթյան ռազմաճակատների գործողությունների հաջող ավարտը. հոկտեմբերի 13-ին գրավվեց Ռիգան։

1945 թ. փետրվարի մեկին Մերձբալթյան ռազմաճակատի դաշտային վարչությունը, բանակի գեներալ Հ. Ք. Բաղրամյանի գլխավորությամբ, մտավ Արևելյան Պրուսիա։ Փետրվարի վերջին 1-ին Մերձբալթյան ռազմաճակատը վերակազմավորվեց զորքերի Զեմլանդսկյան խմբի, մտնելով 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի մեջ, որի հրամանատարն էր մարշալ Ա. Մ. Վասիլևսկին. նրա տեղակալը և, միաժամանակ, Զեմլանդսկյան խմբի հրամանատարն էր Բաղրամյանը, շտաբի պետը՝ Վ. Կուրասովը։ Առաջադրանքն էր՝ Զեմլանդսկյան թերակղզին մաքրել հիտլերականներից, նախապատրաստել Քյոնիգսբերգի գրավումը։

Ցուխսբերգ լեռան վրա կանգնած, գեներալ Բաղրամյանը դիտում էր ծխացող Քյոնիգսբերգը։ Այրվող այդ քաղաքն ասես ավետում էր պատերազմի մոտալուտ ավարտը։ Ապրիլի 8-ին մարշալ Վասիլևսկին առաջարկեց գերմանական գեներալ Օտտո Լյաշին՝ անձնատուր լինել։ Մահվան սպառնալիքով արգելված էր նրան հանձնվել, բայց Լյաշը զենքը ցած դրեց։ Վասիլևսկու և Բաղրամյանի այն հարցին, թե նրա կարծիքով որո՞նք են Քյոնիգսբերգի անկման պատճառները, գերված գեներալը պատասխանեց. «Ռուսական հրամանատարությունը լավ էր մշակել և սքանչելի իրականացրեց այս օպերացիան»։

Քյոնիգսբերգի և Պիլաուի գրավումից հետո մարշալ Վասիլևսկին կանչվեց Մոսկվա, բանակի գեներալ Բաղրամյանը նշանակվեց 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի հրամանատար։ Նրա ղեկավարությամբ ոչնչացվեցին, գերի վերցվեցին հիտլերյան զորքերի մնացորդները Զեմլանդսկյան թերակղզում։

Գիրքը վերջանում է Պատերազմից հետո գլխով, ուր արտացոլված է Հ. Ք. Բաղրամյանի կյանքը խաղաղ ժամանակներում։ Ինը տարի Մերձբալթյան զինվորական օկրուգը ղեկավարելուց հետո, 1954 թ. նա նշանակվում է ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության գլխավոր տեսուչ, մեկ տարի անց արժանանում է Սովետական Միության մարշալի կոչման և նշանակվում ՍՍՀՄ պաշտպանության մինիստրի տեղակալ։ Հետագայում երկու տարի ղեկավարում է ռազմական բարձրագույն ակադեմիան։ Հովհաննես Քրիստափորովիչը ՍՄԿԿ Կենտկոմի անդամ է, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ։

Ներկա և գալիք սերունդներին հանձնել պատերազմի բոցերում ստուգված ու փորձված դասերը, ռազմա-ստրատեգիական մեթոդներն ու ավանդույթները—այս նպատակն է առաջնորդել նրան Քաղաք-զինվորը Դնեպրի վրա, Այդպես սկսվեց պատերազմը, Ռազմաճակատային ճամփաներով գրքերը գրելիս. այժմ մարշալն ամփոփում է իր հուշերը։

Հայրենիքի հերոսներին նվիրված նման գրքերը ռազմա-հայրենասիրական դաստիարակության կարևոր միջոց են. ուստի, և հույժ ցանկալի է դրանց հայերեն թարգմանությունը։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ՓԱՌԱՊԱՆԾ ՏԱՐԵԼԻՑԸ

**Գ. Ե. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ԵՐԵՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ՝ 1945 Թ. ԱՊՐԻԼԻ 4-ԻՆ, սովետական բանակը Հունգարիան լիովին ազատագրեց գերմանա-ֆաշիստական զավթիչներից։ Այդ հիշարժան օրը դարձավ հունգար ժողովրդի ազգային տոնը, նա իր ապագան մեկընդմիշտ կապեց սոցիալիզմի հետ։ Հունգարիան դարձավ սոցիալիստական համագործակցության երկրների հավասարիմ դաշնակիցն ու իրավահավասար անդամը։ Անցած երեք տասնամյակում արմատապես փոխվեց երկրի սոցիալ-քաղաքական, տնտեսական ու կուլտուրական դեմքը, նա հսկայական թռիչք գործեց իր առաջընթացի ճանապարհին։ Ամեն տարի հունգար աշխատավորներն իրենց երկրի վերածննդի տոնը նշում են սոցիալիզմի կառուցման ասպարեզում ձեռք բերած փայլուն նվաճումներով, ստեղծագործական ուժերի բուռն վերելքի և քաղաքական ակտիվության պայմաններում։

ՆԱԽԱՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ՀՈՒՆԳԱՐԻԱՆ ԱԳՐԱՐԱՅԻՆ-ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ երկիր էր՝ կապիտալիզմի զարգացման միջին մակարդակով, գյուղատնտեսության մեջ ֆեոդալական հարաբերությունների նշանակալի պահպանմամբ և երկրում արտասահմանյան կապիտալի ուժեղ ազդեցությամբ։ Երկրի տնտեսության ու քաղաքականության մեջ հրամանատարական դիրքերը պատկանում էին խոշոր կապիտալիստներին ու կալվածատերերին։ Այսպես, 1940 թ. սկզբներին բուրժուական Հունգարիայի տնտեսության մեջ իշխում էին 6 հազար կապիտալիստներ և 12 հազար խոշոր կալվածատերեր։

Սովետական բանակի կողմից Հունգարիայի ազատագրումից հետո, երկրում իրագործված քաղաքական և սոցիալ-տնտեսական վերափոխումների շնորհիվ, իշխանության մարմիններում ու տնտեսության մեջ հրամանատարական բարձունքներն անցան բանվոր դասակարգին և աշխատավոր գյուղացիությանը։ Շարունակելով իր հերոսական պայքարի լավագույն ավանդույթները, բանվոր դասակարգը ծանրակշիռ ներդրումներ ունեցավ նոր հասարակարգի կառուցման գործում, հասարակարգ, հանուն որի նա անձնազոհ պայքարեց տակավին առաջին համաշխարհային պատերազմից հետո։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Հունգարիայում խիստ սրվել էին սոցիալական և ազգային հակասությունները։ Ծայր առած հեղափոխական և ազգային-ազատագրական շարժումները նոր թափով ծավալվեցին Ռուսաստանում Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակի ազդեցությամբ և 1918 թ. ավարտվեցին միապետության տապալմամբ։ Թեև բուրժուա-դեմոկրատական հեղափոխության շարժիչ ուժերը պրոլետարիատն

ու գյուղացիությունն էին, աջ սոցիալ-դեմոկրատների դավաճանության հետևանքով և մի շարք այլ պատճառներով, իշխանության գլուխ անցան ազգային լիբերալ-բուրժուազիան ու կալվածատիրությունը։

1918 թ. նոյեմբերին ստեղծվեց Հունգարիայի կոմկուսակցությունը, որն իր առաջնահերթ խնդիրը համարեց պայքարել պրոլետարական հեղափոխության հաղթանակի և երկրում կապիտալիստական կարգերի տապալման համար։ Նրա գլխավորությամբ պրոլետարիատի մղած հերոսական պայքարն ավարտվեց սոցիալիստական հեղափոխության հաղթանակով։ Իր գոյության 133 օրվա ընթացքում Հունգարական Սովետական Հանրապետությունը քաղաքական, սոցիալ-տնտեսական, մշակութային և ազգային մարզերում կատարեց մի շարք վերափոխումներ։

Չնայած պրոլետարիատի հերոսական դիմադրությանը, արևմտյան իմպերիալիստներին և ներքին հակահեղափոխական ուժերին այն ժամանակ հաջողվեց տապալել սովետական իշխանությունը Հունգարիայում։ «Ազգային» բանակի հրամանատար Խորտին երկրում հաստատեց իր դիկտատուրան, որը հալածում և հետապնդում էր այն ամենը, ինչ առաջադիմական էր։ Հիտլերի իշխանության գլուխն անցնելուց հետո Հունգարիայում ուժեղացավ գերմանական կողմնորոշումը։ Խորտիստական Հունգարիան ակտիվորեն մասնակցում էր Եվրոպայում ֆաշիստական տերությունների ագրեսիային։ Վերջիններս առատորեն վարձատրում էին իրենց կրտսեր պարտնյորին։ Հունգարիան ստացավ Սլովակիայի հարավային շրջանները, Անդրկարպատյան Ուկրաինան, Տրանսիլվանիայի հյուսիսային և հյուսիս-արևելյան շրջանները, Բաչկան։

Լծվելով հիտլերյան ռազմակառքին՝ 1941 թ. հունիսին Խորտիի կլիկը մասնակցեց ՍՍՀՄ-ի վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակմանը. հոկտեմբերին արդեն արևելյան ռազմաճակատում կար 84 հազար հունգարական զինվոր։

1942 թ. հունվարի 20-ին Խորտիի և Հիտլերի հանձնակատար Կեյտելի միջև տեղի ունեցած բանակցությունների ժամանակ դիկտատորը խոստացավ ՍՍՀՄ-ի դեմ պատերազմի դուրս բերել 10 դիվիզիա։ Հունգարիան Գերմանիային օժանդակում էր նաև պարենամթերքով։

1945 թ. ապրիլի 4-ին սովետական բանակն ավարտեց Հունգարիայի լիակատար ազատագրումը և վերջ դրեց ֆաշիստների կողմից երկրի սարկացմանն ու թալանին. հունգար ժողովրդի համար բացվեց պատմական նոր դարագլուխ։ Այդ կապակցությամբ հունգարական սոցիալիստական բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Յանոշ Կադարն ասել է. «Երբ 1945 թ. հաղթական սովետական բանակը մեր երկրից դուրս վռնդեց հիտլերյան հորդաների վերջին մնացորդներին, նոր դարագլուխ բացեց մեր ազգային պատմության մեջ։ Այդ իրադարձության տարեդարձի առթիվ մենք հանդիսավոր նշում ենք, որ ծնվեց ազատ ու անկախ Հունգարիան, որը մեր առջև բացեց հասարակական առաջընթացի լայն ճանապարհ» (Избранные статьи и речи, М., 1960, стр. 380):

Գերմանա-ֆաշիստական նվաճողներից հունգար ժողովրդի ազգային ազատագրումը համընկնում էր Խորտիի ֆաշիստական կլիկից, խոշոր կապիտալիստների և կալվածատերերի տիրապետությունից նրա սոցիալական ազատագրությանը։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԽՈՐՏԱԿԻՉ ՀԱՐՎԱԾՆԵՐԻՑ փախչելով դեպի Արևմուտք՝ հիտլերյան դահիճները և Հունգարիայի նրանց գործակիցներն իրենցից հետո թողեցին թալանված մի երկիր։ Պատերազմը, որի մեջ Հունգարիային ներքաշել էր ֆաշիստական ռեժիմը, թանկ նստեց երկրին։ Նախապատերազմյան շրջանի համեմատությամբ նրա արդյունաբերական արտադրանքը 1945 թ. նվազել էր 30—35, իսկ գյուղատնտեսությանը՝ 45 տոկոսով։ Հունգարիային պատերազմի հասցրած ընդհանուր վնասը կազմում էր 300 միլիարդ ֆորինտ։

Տնտեսության վերականգնումը և կայունացումն այդ պայմաններում քաղաքական ու տնտեսական առաջնահերթ պրոբլեմներ էին, որոնց լուծմանը ձեռնամուխ եղավ կոմկուսակցությունը։ Հունգարական բանվոր դասակարգի



առջև ծառացավ քայքայված երկրի վերականգնման և նոր Հունգարիայի ազգային վերածննդի պրոբլեմը։

Ժողովրդա-դեմոկրատական հեղափոխության առաջին փուլում Հունգարիայում լուծվեցին համադեմոկրատական բնույթի խնդիրներ՝ պայքար ֆաշիզմի դեմ, պետական ապարատի և բանակի մաքրումը ֆաշիստական տարրերից, ագրարային ռեֆորմի անցկացումը, հայրենիքի դավաճանների ունեցվածքի բռնագրավումը, կապիտալիստական մոնոպոլիաների վերացումը և այլն։

Նոր Հունգարիայի առաջին կարևոր քայլը 1945 թ. ագրարային ռեֆորմն էր, որն արտացոլում էր հունգարական կոմկուսակցության լոզունգը՝ «Հողը նրան, ով մշակում է»։ Խոշոր հողատերերից, կալվածատերերից և ֆաշիստ լիդերներից բռնագրավվեց 5.589.645 խոլդ[1] հողատարածություն, որից 3.258.738-ը, իբրև մասնավոր սեփականություն, հանձնվեց հողազուրկ և սակավահող գյուղացիությանը։ Ռեֆորմի շնորհիվ արմատապես փոխվեց հունգարական գյուղի սոցիալական դեմքը. հիմնական ուժը դարձավ չքավոր և միջակ գյուղացիությունը։ Ռեֆորմն ամրապնդեց բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը և հսկայական նշանակություն ունեցավ հեղափոխության խնդիրների լուծման համար։ Անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին անցնելու հեղափոխության երկրորդ՝ սոցիալիստական փուլին։ Այս շրջանում կոմկուսակցության հեղինակության ամրապնդմանը նպաստեց այն, որ նա տրնտեսության վերականգնման ու զարգացման կարևոր միջոցառումների ոգեշնչողն ու նախաձեռնողն է։

1947 թ. օգոստոսին, պետական ժողովի ընտրություններից հետո, Հունգարիայում քաղաքական իշխանությունն անցավ բանվոր դասակարգի և նրա ավանգարդ՝ հունգարական կոմկուսակցության ձեռքը, որի գլխավորությամբ էլ աշխատավորությունը հասավ հսկայական հաջողությունների։

Քաղաքական իշխանության համար մղած պայքարին համընթաց, բանվոր դասակարգը հարձակում սկսեց կապիտալի տնտեսական դիրքերի վրա։ Դեռևս 1945—1946 թթ. ազգայնացվեցին հանքերը, էլեկտրակայանները և ծանր արդյունաբերության առավել խոշոր ձեռնարկությունները։ Կարևոր քայլ էր 1947 թ. նոյեմբերին բանկերի և դրանց պատկանող արդյունաբերության ազգայնացումը։ Իսկ 1948 թ. մարտին 100-ից ավելի բանվոր ունեցող ձեռնարկությունների ազգայնացումից հետո արդյունաբերության մեջ սոցիալիստական սեկտորի տեսակարար կշիռը կազմեց 82 տոկոս։ Ազգայնացումից հետո ամուր տնտեսական բազա ստեղծվեց ժողովրդա-դեմոկրատական կարգերի համար։ Կոմկուսակցության ղեկավարությամբ քաղաքական իշխանության անցումը բանվոր դասակարգին և տնտեսական բարձունքների կենտրոնացումը պետության ձեռքը՝ նշանակում էր սոցիալիստական հեղափոխության հաղթանակ Հունգարիայում։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար կարևոր նշանակություն ունեցավ 1948 թ. հունիսին կոմունիստական և սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների միավորումը։ 1949 թ. օգոստոսի 18-ին պետական ժողովն ընդունեց Հունգարական Ժողովրդական Հանրապետության սահմանադրությունը, որն ազդարարում էր՝ Հունգարական Ժողովրդական Հանրապետությունում ողջ իշխանությունը պատկանում է ժողովրդին։

ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԿՈՂՄԻՑ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄԻՑ հետո Հունգարիայում լայնորեն ծավալվեց սոցիալիստական շինարարությունը։

1949 թ. ժողովրդական տնտեսության վերականգնումն ավարտվեց։ Ինչպես արտադրանքի արտադրության, այնպես էլ բնակչության նյութական բարեկեցության ասպարեզներում երկիրը հասավ 1938 թ. մակարդակին։ Այդ գործում Հունգարիային մեծ օգնություն ցույց տվեց Սովետական Միությունը։

Սոցիալիզմի կառուցումը միշտ չէ, որ հարթ էր ընթանում։ Մատիաս Ռակոշիի և նրա խմբի սխալները լրջորեն վնասեցին երկրին։ Այդ սխալներից օգտվեց Իմրե Նագի ռևիզիոնիստական խումբը, որը դեմ էր պրոլետարիատի

1. Խոլդը հավասար է 0,57 հեկտարի։

ձեռել Հունգարիային՝ ավելացնելու էլեկտրաէներգիայի ներմուծումը սոցիալիստական երկրներից, առաջին հերթին՝ ՍՍՀՄ-ից։

Հունգարիայի արդյունաբերության զարգացման գործում մեծ դեր են խաղում գիտատեխնիկական համագործակցությունը և սոցիալիստական երկրների տեխնիկական օգնությունը։ Սոցիալիստական երկրներից, առաջին հերթին ՍՍՀՄ-ից ստացված տեխնիկական փաստաթղթերի հիման վրա ձեռնարկվեց սարքերի, առանցքակալների, հեռուստացույցների, լեռնային ու շինարարական զանազան սարքավորումների և պլաստմասսայի արտադրությունը։ 1959 թ. ՍՍՀՄ-ի օգնությամբ կառուցվեց առաջին ատոմային ռեակտորը։ ՍՍՀՄ-ի և Հունգարիայի տեխնիկական համագործակցությամբ կառուցվել են արդյունաբերական 50 ձեռնարկություններ և այլ օբյեկտներ։ Երկրի խոշորագույն դանուբյան ցեմենտի և կրի կոմբինատը ԳԴՀ-ի, Լեհաստանի և ՉՍՍՀ-ի տեխնիկական համագործակցության արգասիք է։ Սովետական Միության օժանդակությամբ Պակշում կառուցվում է ատոմային էլեկտրակայան։ ՍՍՀՄ-ը օգնում է Հունգարիային ալյումինի հանքաքարի մշակման և ալյումինի ստացման գործում՝ նրան ազատելով մոտ 14 մլրդ ֆորինտ կապիտալ ներդրումից։ Դեբրեցենի մոտ սովետական մասնագետների օգնությամբ կառուցված առանցքակալների կոմբինատը Մոսկվայի, Կիևի և Ուրալի գործարաններից ստացել է դազգահներ, ագրեգատներ և ավտոմատ հոսքային գծեր։ Տոլյատի քաղաքի մարդատար ավտոգործարանի համար Հունգարիան խոշոր սերիաներով արտադրում է զանազան դետալներ։ Բուդապեշտի նավաշինական գործարանը Սովետական Միություն է առաքել ծովային, լճային և գետային 2.500 նավեր։

Սոցիալիզմի երկրների տնտեսական համագործակցության զարգացումը Հունգարիայի, ինչպես և սոցիալիստական մյուս երկրների համար անհրաժեշտ պայման է ժողովրդական տնտեսության զարգացումն արագացնելու, դրա արդյունավետությունը բարձրացնելու, սոցիալիստական շինարարության ճանապարհին նոր քայլեր անելու համար։ «Անցած երեք տասնամյակում,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ՀՍԲԿ XI համագումարում արտասանած ճառում,— ինչպես հարկն է ծավալվեցին հունգար ազգի ստեղծագործական ուժերը։ Դինամիկ կերպով զարգացող էկոնոմիկա, աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացում, սոցիալական և ազգային ճնշման բոլոր ձևերի վերացման, բոլոր քաղաքացիների իսկական իրավահավասարության, աշխատավոր մարդկանց լիիշխանության վրա հիմնված հասարակարգ, այդպիսի ամուր հիմքի շնորհիվ ձեռք բերված ժողովրդի միասնություն՝ ահա թե ինչն է բնորոշում այսօրվա Հունգարիայի դեմքը»։

Երեսուն տարի առաջ ծնունդ առած Հունգարական Ժողովրդական Հանրապետությունը շարունակում է իր հաղթարշավը սոցիալիզմի, սոցիալական առաջընթացի, խաղաղության և ինտերնացիոնալ բարեկամության ճանապարհով։ Նրա ժողովրդի երջանիկ ապագայի համար բացվում են նոր հեռանկարներ ու լուսավոր հորիզոններ։


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ)։

Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.
Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանքի և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64։

ՎՖ 06025 Պատվեր 529 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$։ Տիրաժ՝ 14.300 Գինը 20 կ.։

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 14/IV 1975

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյան փող. № 28։




# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ—Աշխատանքի, կոմունիստական դաստիարակության մասին։ *Ճառեր և հոդվածներ. «Հայաստան» հրատ., 1974։*

Ի. Ի. ԳՐՈՇԵՎ—Կուսակցության պայքարն ընդդեմ նացիոնալիզմի. *Մ.,* Политиздат, *1974։*

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական հասարակության պաշտպանության կազմակերպիչ. *Մ.,* Воениздат, *1974։*

ՍՍՀՄ արտաքին քաղաքականության փաստաթղթերը *(ՍՍՀՄ ԱԳՄ-ին կից փաստաթղթեր հրատարակող հանձնաժողով), հ. 19. (1936 թ. հունվարի 1-ից դեկտեմբերի 31-ը). Մ.,* Политиздат, *1974։*

Զրույցներ սոցիալիզմի քաղաքատնտեսության շուրջ. *Երրորդ հրատ., Մ.,* Политиздат, *1974։*

ԵՐ. Ս. ՏՈՆԵՐՅԱՆ—Բոլշևիկյան «Կայծ» թերթը. *«Հայաստան» հրատ., 1974։*

Գյուղատնտեսական արտադրության էկոնոմիկայի և կառավարման հիմունքները։ *Ուսումնական ձեռնարկ կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների բրիգադավարների, ֆերմաների վարիչների, բաժանմունքների կառավարիչների և ստորաբաժանումների մասնագետների համար։ «Հայաստան» հրատ., 1974։*

Կոլտնտեսության էկոնոմիկայի այբուբենը—*Երրորդ, վերամշակված և լրացված հրատ., Մ.,* Политиздат, *1974։*

*Գիրքը կօգնի գյուղի աշխատավորներին՝ տիրապետելու տնտեսագիտության հիմունքներին, ծանոթանալու տնտեսավարության պրակտիկային։*

Սովետական Միության կոմունիստական կուսակցության կանոնադրություն. *«Հայաստան» հրատ., 1974։*

Օ. Գ. ԴՐՈԲՆԻՑԿԻ—Բարոյականության բովանդակությունը։ *Պատմա-քննական ակնարկ. Մ.,* «Наука» *հրատ., 1974։*

ՎԼ. Ի. ԿԱՐԴԱՇՈՎ—Ռոկոսովսկի. *«Հայաստան» հրատ., 1974։*

Վ. ԴՈՒՇԵՆԿԻՆ—Պրոլետարական մարշալը *(Օ. Վ. Բլյուխեր) «Սովետական հայրենիքի հերոսները» շարքից. Մ.,* Политиздат, *1974։*

Մ. ԿՈԼԵՍՆԻԿՈՎԱ և Մ. ԿՈԼԵՍՆԻԿՈՎ—Ռիխարդ Զորգե. *«Հայաստան» հրատ., 1974։*

ԱԼ. Ա. ՆԱՍԻՐՈՎ—Էլբայի զաղտնարանը։ *Վեպ սովետական հետախույզների կյանքից. «Հայաստան» հրատ., 1974։*

Հասարակական-քաղաքական շարժումը ԱՄՆ-ում. *ՍՍՀՄ ԳԱ համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստիտուտ. Մ.,* Политиздат, *1974։*

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԽԱՂՈՂԱՀԱՎԱՔ ԿՈՄԲԱՅՆ

Բուլղարական «Ագրոմաշ» միավորումը մշակել է սերիական ինքնագնաց կոմբայնի նմուշ՝ խաղողի գինետեսակների հավաքման համար, որը մեծ չափով թեթևացնում է գյուղատնտեսական այդ ծանր աշխատանքը։ Կոմբայնը բերքը հավաքում է մինչև 1,8 մետր բարձրությամբ թփերից, եթե խաղողի ողկույզը հողի մակերևույթից կես մետր բարձր է։ Մեկ աշխատանքային հերթափոխում, այսինքն՝ 7 ժամում, հավաքվում է 4 հեկտարի բերք։ Ջորս աստիճան թեքությամբ տեղանքում կորուստները 5 տոկոսի չեն հասնում։ Կոմբայնը սպասարկում է երեք մարդ։ Մեկ կոմբայնը կատարում է 90 հավաքող-բանվորի աշխատանք։

## ՊՐՈՖԵՍՈՐ ՏՐՈՅԱՆՈՎՍԿՈՒ ՍՈՒՆԿԸ

Պրոֆեսոր Ե. Տրոյանովսկու ղեկավարությամբ Լյուբլինի գիտնականներն ստացել են սունկի նոր տեսակ, որը սնվում է թղթարդյունաբերության հոսքաջրերում պարունակվող ֆենոլային միացություններով։ Նոր սունկը քայքայում և յուրացնում է այդ միացությունները։ Դրա շնորհիվ ջրերը մաքրվում են, և ստացվում է հիանալի անասնակեր։ Մասնագետների կարծիքով այդպիսի սունկի արդյունաբերական բազմացմամբ 5—10 անգամ կէժանանա ջրերի մաքրումը ցելյուլոզային գործարաններում։ Այժմ ուսումնասիրվում են նաև այլ հոսքաջրերի թունազերծման հնարավորությունները։

## ՎԱՌԵԼԻՔ՝ ԱՂԲԻՑ

Ճապոնիայում պատրաստվել է աղբի վերամշակման սարք։ Աղբը թաց վիճակում լցվում է սարքի մեջ, «շոգեխաշվում», մանրացվում և վերածվում է գազերի խառնուրդի։ Գազերը խտացվում, բաժանվում են բարձր և ցածր կալորիականությամբ վառելիքի, միաժամանակ, գազախառնուրդից ստացվում է շոգի, որը պիտանի է էլեկտրաէներգիայի արտադրման համար։ Սարքը նախատեսված է օրական 1.000 տոննա աղբ վերամշակելու համար։ Յուրաքանչյուր տոննա աղբից ստացվում է կերոսինին համարժեք 400 կգ հեղուկ վառելիք։

## ՁԵՌՔԻ ԳՐԱՄԵՔԵՆԱ

Ճապոնական «Կէնոն» ֆիրման խուլ ու համրերի համար թողարկել է փոքրիկ գրամեքենա, որը ժամացույցի պես կարելի է կապել ձեռքին։ Հաճախ հաղորդակցման համար այն ավելի հարմար է, քան ձեռք-լեզուն։ Մեքենան տեքստը տպագրում է նեղ ժապավենի վրա (րոպեում մինչև 150 նիշ)։ Այդ սարքը կարելի է օգտագործել ամենուրեք, երբ անհրաժեշտ է, բայց հնարավոր չէ կամ անցանկալի է երկու մարդկանց ուղղակի զրույցը. օրինակ դիվանագիտական կոնֆերանսներում, գիտական սիմպոզիումներում...

## ԻՆԴԻՈՒՄԸ ՍՐՏՈՒՄ

ԳՖՀ-ի ատոմային հետազոտական կենտրոնի գիտնականները մշակել են սրտամկանի ինֆարկտի նախանշանների ճանաչման մեթոդ՝ ամենավաղ ստադիայում։ Արյան մեջ մտցնելով ռադիոակտիվ ինդիում—113-ը, նրանք 2—3 րոպե հետևվում են իզոտոպի անցմանը սրտի միջով։ «Շարժիչի» միջով պրեպարատի անցման դինամիկան բնութագրում է սրտամկանի գործունեությունը։ Նման քննման ընթացքում հիվանդի ճառագայթահարման դոզան բարձր չէ ռենտգենադիտման ժամանակ ստացածից։

## ԱՄՐԱՑՎԱԾ ՇԻՇ

Որպեսզի փոխադրման ժամանակ շշերը քիչ ջարդվեն, առաջարկվում է դրանց մակերեսը ծածկել բարակ պլաստմասսայե թաղանթով։ Ճապոնիայում ստեղծվել է ավտոմատ սարք, որը լվանում է շշերը, տաքացնում, ապա, մակերեսին քսում պոլիէթերային ձյութի բարակ շերտ։ Այստեղ էլ թաղանթն ամրացվում է, իսկ շիշը սառեցվում։ Սարքն օրական «աղնվացնում է» 150.000 շիշ։